# ԲԱՐՈՒՆԱԿ ՊԷՅԻ

## ՖԷՐՈՒՀԽԱՆ

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

## Ի ԲԱԲԵԼՈՆ

## ԸՆԴ ՀԱՅԱՍՏԱՆ



ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1847





ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
Ի ՎԱՆՍ Զ. Մ. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՅԱՐՄԱՃ
1876



ԱՐՁԱՆ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ

Ի ՅԻՇԱՏԱԿ

ԱՆՄԱՀ ՀՈԳՒՈՅ ՍԻՐԵՑԵԼՒՈՅ ԻՒՐԵԱՆՑ

# Վ Ս Ե Մ Ա Շ Ո Ւ Ք

# ԲԱՐՈՒՆԱԿ ՊԷՅԻ

Փ Է Ք Ո Ւ Հ Խ Ա Ն

Կ Ա Ն Գ Ն Ե Ա Լ

*ՑԱՄՈԼԻՑՆ Ն. ԵՒ Մ. ԱՍԼԱՆԵԱՆ*

Բարեյիշատակ Ապտիւլ Մէճիտ կայսրը՝ 1847 թուականին կամք ըրաւ այցելութեան հանել իւր երրորդ սենեկապետ Բաղուպ Պէյն , Ասիոյ զանազան կուսակալութիւնները մինչեւ Պարսկաց ծոցը եւ միանգամայն Խըլըճ Խօֆրօն մը ղրկել Բաբելոնի ընդհանուր կառավարիչ Ալի Նէճիպ փաշային յատուկ հրովարտակով մը 'ի քաջալերութիւն եւ 'ի շնորհակալութիւն իր աջալուրջ կառավարութեանը համար ։

Այս առթիւ Բաղուպ Պէյին բժիշկ կարգեցայ , եւ միանգամայն Ասիոյ բոլոր մեր անցնելիք քաղաքներուն ու գիւղերուն հիւանդները դարմանելու եւ պատուաստելու պաշտօնն ալ ինծի յանձնուեցաւ ։

Այն ատենէն միտքս դրած էի օր մը այն ճամբորդութեան յիշատակագիրներէս քաղելով՝ շուրջ եկած քաղաքներուս վրայ ժողոված տեղեկութիւններս 'ի լոյս ընծայել . բայց զանազան պատճառներով ետ մնաց : Ահա այսօր իմ դիտաւորութիւնս կը կատարեմ ուղեւորութեանս նկարագրին միացնելով այն ամէն տեղեկութիւնները՝ որոնք ստոյգ աղբիւրներէ հետզհետէ ինծի հասած են եւ որով կը յուսամ թէ հետաքննին եւ բանասէր մարդկան փոքրիկ ծառայութիւն մը ըրած կ'ըլլամ :

1868 Մայիս 1 — ԲԱՐՈՆԱԿ ՖԷՐՈՒՀԽԱՆ

'ի Կոստանդնուպօլիս

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ



1847 Յունուարի 4րդ օրն էր՝ որ Կ-Պոլսէն մեկնեցանք դէպ 'ի Սինոպ՝ Նէմչէի Լոյտ ընկերութեան Սթամպօլ անուն շոգենաւով, եւ հասանք 'ի կէտ եղեալ նաւահանգիստը յունուարի 6րդ օրը ժամը 5 1/2ին ։

## ՍԻՆՈՊ

Փոքր-Ասիոյ ճանիկ գաւառին գլխաւոր քաղաքն է, որ շինուած է Սեւ ծովուն եզրը՝ Պօզ-Թէփէ անուն ցամաքի բազուկի մը վրայ ձորի մէջ դէպ 'ի լեռն 'ի վեր ։

Ունի 8000 բնակիչ, 750 տուն. 200 տաճկի, մնացածը յունաց. կան նաեւ քանի մը Հայեր եւ օտարներ ։ Երկու մզկիթ, երկու եկեղեցի յունաց, քանի մը փայտաշէն պանդոկներ, բաղնիքներ ու սրճարաններ. մէկ ողջապահիկ բնակարան, մեծ նաւահանգիստ մը ծանծաղուտ, մէկ փոքրիկ նաւարան ու ծովեզրին վրայ գեղեցիկ տուն մը՝ որ Ռուսաց հիւպատոսարանն էր ։ Հին ատենէն մնացած միջնաբերդ մը՝ որ վերջերը նորո-

դրուած է, ուր 150ի չափ Թնդանօթներ կային և 500 զինուոր. տաճկաց տուներն ալ աստ մէջն են։ Լեռան վրայ մահարձան մը՝ Սէյիտ-Պէլալ անուն, ուրկէ յստակ ջուր մը կը բղխի. Տուները փայտաշէն, փոքրիկ ու ցերուցան. բնակիչները հիւրասէր՝ բայց անկիրթ։ Որիզոյ, փայտի, մրգաց, մորթոյ և այլն վաճառականութիւն կ'ըլլայ։ Ջուրը գէշ, օդը ծանր և եղանակը բարեխառն. ընդհանրապէս արևմտեան հարաւային (պօռը նօթօս) հովեր կը փչեն։ Ջերմային հիւանդութիւններ կը տիրեն, և բնակիչները վատառողջ են։

Սինոպ՝ ԺԳ. և ԺԴ. դարերուն մէջ Թիւրք իշխանութեան (Պէյութեան) մը մայրաքաղաքն եղաւ, վերջը մասնաւոր Լէվայութեան մը գլխաւոր քաղաքը, և հիմայ Ճանիկի փաշայութեան մէկ քաղաքն է։

Գիտնալ պէտք է որ այս Նոր Սինոպէն քիչ մը հեռի էր հին Սինոպը՝ որ Պափղագոնիայի մէջ փոքր-Ասիոյ քաղաքն ու ամրոցն էր, Սև Ծովուն եզրը փոքրիկ գետակի մը բերնին վրայ շինուած, որ և Պոնտոսի Թագաւորներէն նուաճեալ՝ անոնց մայրաքաղաքն եղաւ։ Լուկուլլոսի դէմ մէկ երկելի պաշարման մը դիմացաւ, և Քրիստոսի Թուականէն 70 տարի յառաջ նուաճեցաւ։

Դիոգինէս Ճնակաւոր հոս ծնած էր, և մեծն Միհրդատ ալ հոս Թաղուեցաւ հրամանաւ Պոմպէոսի։

Հոս 100 անձինք պատուաստեցի և 20 հիւանդ դարմանեցի։

6 1/2 ժամ միայն դադարեցանք 'ի Սինոպ ու գիշերուան 9ին դարձեալ ճամբայ ինկանք ու յունուար 7 երեքշաբթի ժամ 5ին, այսինքն 8 ժամու մէջ հասանք Սամսուն քաղաքը։

# ՍԱՄՍՕՒՆ

Սամսուն (Ամիսոս) Եէշիլ-Ըրմագ գետին բերնէն 20 մղոնի չափ հեռու, 1200 տունով ծովեզերեայ քաղաք մ'է, որոնց 500ը տաճկաց, 240 յունաց, 60 հայոց և մէկ քանին ալ եւրոպացւոց են. բնակչաց թիւը 6000ի կը հասնի։

Իւրաքանչիւր ազգ զատ զատ թաղերու մէջ բաժնուած են։ Տաճկաց թաղը ծովեզրն է՝ որ ունի վաճառանոց, [illegible], պանդոկներ, բաղնիքներ և 7 մզկիթ, 4 [illegible], [illegible], [illegible], [illegible] և [illegible] անուն։ Յունաց և հայոց թաղերը քաղաքէն քիչ մը հեռու դէպ 'ի լեռան վրայ շինուած են, և մէյմէկ եկեղեցի ու վարժարաններ ունին։ Տուներն ընդհանրապէս [illegible] են, ոչ ներկեալ և ոչ բռածեփ. բնակիչները կոշտ։

Քաղաքն ունի Քառանթինա մը, ընդարձակ նաւահանգիստ մը ծանծաղուտ, այնպէս որ նաւերը չը կրնալով եզերքին մերձենալ՝ բացը կը կենային, ուր ճանապարհորդները մեծ դժուարութիւններ կը կրէին նաւէն քաղաքը և քաղաքէն նաւը մտնելու համար. նաւն երթալու համար նաւաստիներու կռնակ ելնելով ծովեզրէն կ'երթային կը մտնէին նաւակներու մէջ և անկէ ալ նաւը. նաւէն ալ քաղաք մտնելու համար նոյնը կընէին։ Ժամանակէ մը [illegible] նաւահանգիստ մը շինուեցաւ։

160 թնդանօթաձիգ զինուոր կայ։ Գլխաւորաբար բերքերն են՝ Պաֆրայի ծխախոտ և փայտ, վասն զի շատ անտառներ ունի։

Օդը բարեխառն է, ձմեռը հարաւային և ամառն արևելեան հով կը փչէ. Ջուրն առատ՝ բայց քիչ մը լեղի է. ամառը ջերմային հիւանդութիւններ պակաս

չեն , ուստի բնակիչները վատառողջ են ։

Սամսուն հին ատեններր Պոնտացւոց թագաւորու-
թեան քաղաքն էր , զոր Միհրդատ ամրացուց և ըն-
դարձակեց , և 71 տարի Քրիստոսէ յառաջ Լուկուլլոս
նուաճեց ․ բայց այն հին Սամսունը հիմայ աւրուած է
և աւերակներն անդամ ծովուն մէջ անհետ եղած են ։

Հոս 48 ժամ կեցանք ․ 500 ի չափ պատուաստ ըրի
և շատ մ'աւ հիւանդներ դարմանեցի ․

Յունուար 9 հինգշաբթի օր ճամբայ ելանք ձիերով՝
Գօճա+ անուն գիւղն երթալու համար , 8 ժամ հեռի ,
և նոյն օրը ժամ 12 ին մտանք ու գիշեր կեցանք ։

Գաւաք՝ լեռան մը վրայ 30 տունով տաճկի գիւղ մ'
է ․ տուները փայտաշէն հիւղակներ են ․ ունի 200 բը-
նակիչ՝ որոց արհեստն էր հողագործութիւն ։

Յունուար 10 ուրբաթ ժամ 5 ին ճամբայ ելանք Լ-օ-
տէ+ երթալու համար , 6 ժամ հեռի , և նոյն օրը մտանք
ու գիշեր կեցանք ։

Լատիք՝ Լեռան ստորոտը դաշտավայրի մը վրայ շի-
նուած քաղաք մ'է 260 տունով , 250 ը Տաճկի , 10 ըն
ալ Հայու ․ բնակչաց թիւը 1500 ի կը հասնի ։ Ունի 4
մեծ մզկիթ , 10 մէսճիտ , 1 Հայու փոքր եկեղեցի , 2
բաղնիք , 1 հին պարիսպ մը , երկաթագործի շուկայ
մը ։ Օդը լաւ , ջուրն անուշ ու պաղ ։

Յունուար 11 շաբաթ առտու ժամ $2^1/_2$ ին ճամբայ
ելանք Ամասիա երթալու համար , 8 ժամ հեռի , և
նոյն օրը ժամ 10 ին մտանք ։

Լատիքէն 1 ժամ հեռի դէպ 'ի Ամասիա երթալու
ճամբուն աջ կողմը Ա+-փօ-ղ ըսուած լեռան ներքև կ'ե-
րևայ Ա+-Նօր գիւղը ․

Դարձեալ Լատիքէն 2 ժամ հեռի քարէ կամուրջի մը մօտ փոքրիկ խան մը կայ . այս տեղին Տէրէնէօզ տէրէ-սինտէ կ'ըսեն ։

4 ժամ հեռի աջ կողմը կերեւայ Աքըլէն ըսուած գիւղը ։

5 ժամ հեռի աջ կողմը Աթալը ըսուած գիւղը ։

7 ժամ հեռի ճամբուն վրայ Թէքէօղլու տէքքէսի ։

Քիչ մ'ալ յառաջ դարձեալ ճամբուն վրայ դէպ 'ի աջ կողմը Թթենւոյ անտառաց մէջ Ըլըճաք խանը ։

Այս վերջինէն 1 ժամ անդին է Ամասիա քաղաքը ։

## ԱՄԱՍԻԱ

Այս անուն գաւառին գլխաւոր քաղաքն է երկու լեռներու ստորոտը՝ ձորի մէջ շինուած , որուն մէջէն կանցնի Եէշիլ-ըրմաք (1) ըսուած գետը ։

Աշխարհագրական լայնութիւնն է 40° 59′ և երկայնութիւնը 33° 4′ ։

(1) Եէշիլ ըրմաք կըսուի նաեւ Թօքաթ սույը , Ամասիա սույը , Չարշէնպիհ սույը . 'ի հնումն Իրիս ։ Փոքր Ասիոյ մէկ գետն է՝ որ կը գոյանայ երկու մեծ վտակներէ . որոնց մեծագոյնը Սըվազի հիւսիսակողմի լեռներէն բղխելով կուգայ կ'անցնի Թօքաթէն , Թըրխալէն , Ամասիայէն , եւ այնուհետեւ կերթայ կը միանայ միւս վտակին հետ՝ որ Երլտըզ-տաղիէն կը բղխի . Եէշիլ ըրմաք այսպէս իր երկու վտակներուն միաւորութենէն ետքը կերթայ կը թափի 'ի Սեւ ծով ։ Մեծ վտակը 'ի հնումն յունարէն Լիգոս կըսուէր՝ որ Գայլ ըսել է , եւ փոքրը՝ որ Երլտըզ-տաղիէն կը բղխի , կ'անուանէր Իրիս՝ որ ծիածան ըսել է . այս վերջինը բուն գետը կը համարուէր . եւ Լիգոս՝ անոր մէկ վտակը ։

Քաղաքին հիւսիսային կողմէն բարձրացած լեռը Քալէ-տաղը կ'անուանի, և հարաւային կողմէն բարձրացածը Ջօփալլար-տաղը ։

Ամասիա 48 թաղ ունի, ամենը 5,000 տուն. 25,000ի չափ բնակիչ կայ, 18,000 մահմետական, 6,000 հայ և 1,000 ալ յոյն ։

Ունի 12 մզկիթ մեծ և 25 ալ փոքր, որոնց գլխաւորներն են Պայազէտ ըսուած մզկիթը մարմարինէ սիւներով, և Կէօք մէտրէսէ ըսուած խնը գմբէթով մզկիթը. ասոնց երկուքն ալ Սուլթան Պայազիտ շինած է ։ Այս վերջիններին դէմը կը գտնուին Գլիճասլանայ մարմարինէ տապանաւ մահարձանն ու ուրիշ շիրիմներ ։

Ցիմարանոց մը թէպէտ հոյակապ շինուած է սիւներով, բայց հիմա լքեալ. 3 եկեղեցի հայոց, մէյմէկ ալ դպրոց. 1 եկեղեցի յունաց. 12 բաղնիք. 12 պանդոկ, իջեւաններ, հոյակապ շուկաններ, 1 պէզէսթէն մը, և շատ մը հին շինուածոց մնացորդները. Քալէ-տաղը լեռան վրայ Միհրդատի շինած զարմանալի քարափոր շինուածներուն մնացորդները կը տեսնուին. Նոյնպէս և դագաթին վրայ շինուած բերդը կիսաւեր ու լքեալ. լեռանը երեսն 'ի վեր կռանակոփ անձաւներ քառակուսի դռներով, փողոցներ և սանդուխներ ։

Բերդին մէկ սենեակին մէջ հին զրահներ, երկաթեայ գլխարկներ պահուած կը կենան, և բերդէն մինչև գետին եղբը դետնափոր սանդխաձեւ ճամբայ մը փորուած է հորի նման՝ որ հիմա Ճըլտըրըմ կըսուի ։ Այսպիսի կռանակոփ անձաւներ կը գտնուին նաև քաղաքէն դուրս շրջակայ վայրերուն ապառաժներուն վըրայ, որ պոնտացւոց թագաւորաց գերեզմաններն ըլլալ կը կարծուին ։ Նոյնպէս հասարակաց ճանապարհին վրայ կը գտնուի քարայր մը Այնալը-մաղարա ըսուած. վասն զի ապակիով բռեալ է. ասոր ձեղունին վրայ նկարեալ են

քրիստոնէութեան ժամանակ սրբոց պատկերներ և դուանը ճակատն ալ յունարէն գրեր . կը կարծուի թէ Միհրդատայ մէկ գանձատունն եղած ըլլայ ։ Ուրիշ ան- թիւ հնութիւններ ալ կան՝ ու դեռ չեն քննուած ։

Քաղաքին մէջ տեղէն անցող Եէշիլ-Իրմաք գետին վը- րայ տեղ տեղ կամուրջներ շինուած են , որոնք կը միա- ցնեն քաղաքը . Նոյնպէս գետին շատ տեղերուն վրայ ալ ալիւրի ջաղացներ շինած են . գետին ջուրը ագու- ւաներու մէջէ կուգայ քաղաքին պարտէզները կ՚ոռո- գէ ։

Քաղաքին դէպ ՚ի Լատիքի կողմը՝ 6 ժամ չարու- նակ , և դէպ ՚ի Թրխալի կողմը՝ 2 ½ ժամ չարունակ թթենւոյ անտառներ կան ։ Ընտիր մետաքս կ'ըլլայ քար- շը 120 ղուրուշ . ցորեն առատ ու պատուական . ամեն տեսակ միրգեր , մանաւանդ խաղող , խնձոր և գինի պատուական ։ Քաղաքիս մետաքսի առևտուրը խիստ համբաւեալ է ։ Բնակիչներն ընդհանրապէս հողագոր- ծութեամբ կ՚ապրին . Նմանայք հռչակեալ են իրենց գե- ղեցկութեամբ ։

Օդը ծանր է , շատ մառախուղ կ'ըլլայ . ջերմը շատ , ամառը շատ տաք և ձմեռն ալ շատ ցուրտ կ'ըլնէ ։ Ջու- րերը պաղ , անուշ և յստակ են , և կը կոչուին [illegible] , Թէքքէլիւ , Սօղուք պունար , որ Զամլըճա ըսուած լեռնէն կու- գան և Քէօլէ պունար [illegible] ըսուածը՝ որ Քէօլէ-տաղը լեռնէն կուգայ ։

Ամասիա Սուլթան Սէլիմ առաջնոյն հայրենիքն է և մինչև ցարդ Թագուհւոյ (Սուլթան) մը կալուածն է .

Հոս 2 օր և 3 գիշեր կեցանք . 500 ի չափ հիւանդ- դարմանեցի և պատուաստ ըրի ։

Յունվար 14 երեքշաբթի ժամ 1 ին ճամբայ ելանք Թրխալա երթալու համար , 12 ժամ հեռի , և նոյն օրը

ժամ 11 ½ին մտանք։

Քաղաքէն ժամ մը հեռու վիմաբուղխ աղբիւր մը կայ. անկէ ալ ժամ մը հեռու վէմը փորելով պատուելով շինուած ագուգաներ կան Միհրդատայ ժամանակէն մնացած, որ տաճկըները Ֆէրհատ Եօքուշու կը կոչեն։

Ամասիոյ հարաւային կողմը կիյնայ Զէլէ անուն հին քաղաքն՝ որ 'ի հնումն Զէլա կը կոչուէր. հռչակեալ է Անահտական դից մեհենովն և մանաւանդ այն պատերազմովը զոր հոս ըրաւ Միհրդատ Թրիարիոսի (Լուկուլլոսի սպարապետ) դէմ Քրիստոսէ 67 տարի յառաջ։ Հոս տեսակ տեսակ հիւսուածներ և չուխաներ կը շինեն, 4000 տաճկի և 250 հայու տուն կայ։ Քաղաքին ետեւը բլուր մը կայ՝ վրան ալ հին բերդ մը։

Ամասիայէն մինչև Թրխալա աջ և ահեակ և ճամբուն վրայ գտնուած գիւղերը հետեւեալներն են.

1 ժամ հեռու ձախ կողմը Սազա գիւղ.
3 „ „ „ „ Քալէ „
4 ½ „ „ աջ „ Ույկուր „
5 „ „ ձախ „ Թամթար „
6 „ „ „ „ ճամբէն ալ 1 ժամ հեռու Էվլթէ գիւղ.
6 „ „ աջ „ ճամբէն ալ ½ ժամ հեռու Ինճէ պազար կամ Ուզուն պօղազ գիւղը.

6 ժամ հեռու ճամբուն վրայ Սուլթան Մուրատի շինած քարաշէն մեծ կարաւանատունը՝ Ինճէ պազար խան անուն, որ զոյգ զոյգ 8 մարմարիոնէ սիւներու վրայ հաստատուած է։

6 ½ ժամ հեռու աջ կողմը Նէնիզճէ գիւղ.

9 ժամ հեռու ճամբուն վրայ Ջէնկէլլի տէվրէնտ, և լեռան ստորոտը սրճարան մը կայ՝ որ կըսուի Ջէնկէլլի խանճի։

---

# ԹՐԱԽԱԼԱ (ՍԵԲԱՍՏՈՒՊՈԼԻՍ)

Փոքր գիւղաքաղաք մ՚է, որ կըսուի նաև Գեյլան հիսարը կամ Գեյլան քալէսի։ Ունի 150 տուն և 500 բնակիչ մահմէտական. 3 մզկիթ, 2 բաղնիք, 4 իջեվան, բերդ մը լեռան գագաթը։

Օդը ծանր է. ամառը սաստիկ տաք կընէ, մինչև անգամ ջուրը կեռայ. ջերմային հիւանդութիւններ կը տիրեն։ Բնակչաց գործածած և խմած ջուրը Թօզանլը-ըրմագը ըսուած վտակին ծանր ջուրն է, որ գիւղին վարի եզերքէն պարտէզներու բոլորտիքէ կ՚անցնի։

Ունի շատ այգիներ, մրգեղէններ, ցորեն և քէնէվիր առատ են։ 144 հոխա ցորենը 30 ղուրուշ։ Հոս գիշեր մը կեցանք։

Յունուար 15 երեքշաբթի առտու ժամ 3½ին ճամբայ ելանք Թօքաթ քաղաքն երթալու համար, 8 ժամ հեռի, և նոյն օրը ժամը 9½ին մտանք։

Թրխալէն մինչև Թօքաթ՝ որ ընդհանրապէս հարթ դաշտավայր մ՚է, ճամբուն վրայ և կողմնակի գըտնուած գիւղերն իրենց հեռաւորութեան կարգովը հետեւեալներն են.

| | | | |
|---|---|---|---|
| 1 | ժամ հեռի | Արա պէօրէ | ընդ աջ |
| 1 | " " | Քըլճը քէօյ | " ձախ |
| 1½ | " " | Քալէ քէօյ | |
| 4 | " " | Նէճիպ քէօյ | ընդ ձախ և 1 ժամ ճամբէն հեռի |
| 4½ | " " | Քատը քէօյ | ընդ ձախ և ½ ժամ ճամբէն հեռի |
| 4 | " " | Բաղար քէօյ | ընդ աջ |
| 4 | " " | Էրքէլէթ | |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 4 | ժամ | հեռու | Թավուքճա քէօյ | ընդ. | աջ |
| 5 | " | " | Քիւչիւկ Էնտիզ | | |
| 5 | " | " | Պէօյիւք " | " | աջ |
| 5 | " | " | Կիւրճիւ քէօյ | " | ձախ |
| 5 ½ | " | " | Պէրէպ քէօյ | " | " |
| 5 ½ | " | " | " " քիւչիւք | | |
| 6 | " | " | Էմիր սէյիտ | ընդ. | ձախ |
| 6 | " | " | Սէօնկութ քէօյ | " | աջ |
| 6 ½ | " | " | Ջէրչի | " | " |
| 6 ⅔ | " | " | Թաշլը չիֆտլիկ | " | " |
| 4 ½ | " | " | Տօղան օպասը | " | " |
| 3 | " | " | Պէյ " | " | " |
| 4 | " | " | Քալաթան քէօփրիւսի Թօքաթ ըրմաղին վրայ. | | |
| 7 ½ | " | " | Հըտըրլը քէօփրիւսի Թօքաթ ըրմաղին վրայ՝ Թօքաթի մօտ։ | | |

## ԹՕՔԱԹ (ԵՒԴՈԿԻԱ · ԵՒԴՈՔՍԻԱ)

Այս քաղաքն եօթը ապառաժուտ կարմրահող լեռներով պատած ձորի մը մէջ շինուած է։ Ունի 75 թաղ. 4000ի չափ տուն՝ լեռանը զառ. 'ի վայրին վրայ շինուած և ընդհանրապէս կաւակերտ, արտաքին երեւոյթնին տգեղ, բայց ներսի կողմերնին յարդարեալ. կան նաև շատ մը փայտաշէն գեղեցիկ տուներ. 20000ի չափ բնակիչ կայ՝ որ ըստ մեծի մասին տաճիկներէ ու հայերէ կը բաղկանան. կան նաև յոյն, հրեայ և եւրոպացի։

Ունի 10 մզկիթ, որոնց մէջ Ալի փաշա և Սուլթանիէ կամ Ճէյրան ճամիլերը գեղեցիկ շէնքեր են։ 8 հայոց եկեղեցի կայ և իւրաքանչիւր ազգ մէյմէկ եկեղեցի ունին. կան նախակրթական դպրոցներ։

Ունի պէզէսթէն մը, 14 բաղնիք մեծ և փոքր, մեծ

չուկայ մը և 5 քարաշէն իջևանններ, ուր կը բնակին վաճառականք. մեծ հրապարակ մը Վօյվօտա խանին առջև։

Քաղաքին նշանաւոր շէնքերն են Իւչշէրէֆէլիանէ ըսուած երեք շէնքերն, որոնց երկուքն ընդարձակ են և զարդարուն. մէկն իջևան է. միւսին մէջ ալ գերեզմաններ կան, բայց երրորդը պարտէզի մէջ է և Լէնկթիմուրի որդւոյն գերեզմանը մէջն է կ'ըսեն։

Նոյնպէս նշանաւոր է պղինձ հալեցընող (ղալխանէ) մեծ և եւրոպական ձևով շինուած գործարանն, որ քաղաքէն քիչ մը դուրս է. հոս կը ղրկեն Թօքաթի սահմանաց մէջ գտնուած բոլոր հանքերէն ելած պղինձն հալեցընելու համար։

Արևմտեան կողմէն ապառաժուտ լեռան ծայրը կը բարձրանայ հին և կիսաւեր բերդ մը, որուն մէջ կայ մեծագործ գետնուղի ջրամբար. բայց իջնելու ճամբան աւեր է, և բերդին դռան վրայ քանի մը յունարէն գիրեր կան։

Այս քաղաքն իր այգիներով ու պարտէզներովն և Պէյլէր աղբիւրէն եկած իր պայծառ ու անուշ ջուրերովը շատ զուարճալի է բնակելու համար։ Շրջականերն ալ շատ այգեստաններ կան։

Երկրին վաճառականութիւնն ու բերքերն են պտուղներ, գինի, նկարատիպ կտաւներ, սեկ, պղնձէ ամաններ, ապակեբուռ և մանաւանդ ծէհրէ հոխան 30 ղուրուշ ևայլն։ Ցորենին հոխան 12 կամ 16 փարա է. 75 տրամ հացն 3 փարա։ Թօքաթի ցորենն իրեն չըբաւեր, վասն որոյ դուրսէն կը բերեն. բայց փայտն առատ է, և ընդարձակ դաշտ մ'ունի մինչև Թուրխալ։ Պարտէզներուն մէջ ամառնային տուներ կան։

Օդը բաւական առողջ է. ամառը ջերմ կը տիրէ, նոյնպէս աչքի ցաւ։ Ժողովուրդը բաւական կրթեալ է. Ջուրն առատ է որ կուգայ բարձրաբերձ լեռներէն, և

աղբիւրներու ու հարուստներու տուններուն կը բաշխուի։ Պէկզատէ աղբիւրին ջուրը շատ գեղեցիկ է, որուն անունը կը կրէ իր գտնուած թաղն ալ։

Թօփալ-սույը կամ Նէանճլը-սույը կամ Խէփէրլէր ըսուած վտակն՝ որուն վրայ քարաշէն կամուրջ շինուած է, կ'անցնի քաղաքին քովէն և կ'երթայ կը խառնուի Նէ-շէ-էրմանէ։ Թօփալ-սույէն խոշոր ձուկեր կը հանեն։

Քաղաքին հիւսիսային կողմը ժամ մը հեռու Սօյլուճը լեռան տակը Ս. Աննայի անուան նուիրեալ փայտաշէն մենաստան մը կայ Հայոց։ Այսոր արեւելեան կողմն և քաղաքէն 1 ժամ հեռու Կէօ անուն գիւղին մէջ վերափոխման եկեղեցի մը կայ յունաց, սիւնազարդ քարաշէն, որ կըսուի Ճէրմէր ճէշմէ. ասիկա Յուստինիանոս կայսեր շինածն է կըսեն։ Հոս 600ի չափ հիւանդ նայեցայ և պատուասատ ըրի. Օր մ'և երկու գիշեր կեցանք։

Յունուար 17 ուրբաթ ժամ 5 ճամբայ ելանք Նէնի խան երթալու համար, 12 ժամ հեռի, և նոյն օրը մըտանք ու գիշեր կեցանք.

Թօքաթէն Նէնի խան՝ ճամբուն վրայ կը գտնուին.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1 | ժամ | հեռի | Կէյրագ | ճամբուն վրայ |
| 5½ | „ | „ | Եարմըշ | „ „ |
| 6 | „ | „ | Չիֆլիկ քէօյ | „ „ |
| 6 | „ | „ | Կէտազագ | 'ի ձախ |
| 6 | „ | „ | Քէրվան սէրայ | „ |
| 6 | „ | „ | Պօլուս | „ |

Նէնի խան՝ 75 տունով տաճկի գիւղ մ'է դաշտի մէջ շինուած. ունի մէկ մզկիթ, մէկ բաղնիք, մէկ քարաշէն իջեւան՝ զոր Սուլթան Մուրատ շինած է։ Օդն առողջ. ջուրը բաւական աղէկ. ձմեռը սաստիկ։ Բնակիչները հողագործ են և ցորեն կը ցանեն։

Անկէ մէկ քառորդ հետ Հայոց թաղ մը կայ 48 տունով (Էշմէնէ մահալլէսի), որ ունի մէկ եկեղեցի և մէկ ալ իջեւան։

Յունուար 18 շաբաթ օր ժամ 5 ճամբայ ելանք Սըվազ երթալու համար, 7 ժամ հետ և նոյն օրը ժամը 10 ին մտանք։

Էշէնի խանէն մինչև Սըվազ ճամբուն վրայ կը գըտնուին․

4 ժամ հետ Եըլտըզ տէրէսի ճամբուն վրայ․
5 „ „ Չիֆլիկ քէօյ „ „

Այս Չիֆլիկ քէօյին վերի կողմը լեռ է․ այն լեռան վրայ մէկ ժամ երկայնութեամբ ընդարձակ դաշտ մ'է․ այս դաշտէն մէկ ժամ անդին է Սըվազ՝ որ դաշտին ծայրէն կըսկսի երեւնալ։ Ճանապարհորդները շատ նեղութիւն կը կրեն ձմեռն այս դաշտն անցնելու համար․ վասն զի շարունակ ձիւն գալով բոլոր դաշտին վրայ քանի մը կանգուն կը դիզուի և ճանապարհորդն անոր մէջ կը թաղուի կը մնայ՝ առանց գիտնալու թէ ո՛ւր է և ո՛ւր պիտի երթայ։

## ՆԱՀԱՆԳ ՍԸՎԱԶԻ․

Սըվազի նահանգն՝ Ասիական Թուրքաստանի մէկ փաշալըգներէն է, Քայսէրիի, Տիվրիկի, Ջանըգըրըյի ու Շապին — Գարահիսարի մէջ տեղը․ մայրաքաղաքն է Սըվազ։

Այս նահանգին արեւմտեան կողմի մէկ մասն ապառաժուտ է և անբոյս․ միւս մասն անտառուտ մայրի ծառերով․ հիւսիսային կողմն՝ անտառախիտ լերանց գօտիներ մինչև Սև ծով․ հարաւային կողմը՝ դաշտավայր։

Անտառներն են. Աք-տաղ-օվասը 12 ժամ ընդարձակութեամբ, Սըվազ քաղաքէն 12 ժամ հեռի, արեւմըտեան կողմը Կէրմուշլար գաւառին մէջ. Զամլը-պէլ-օվասը 3 ժամ լայնութեամբ և 12 ժամ երկայնութեամբ, Սըվազէն 6 ժամ հեռի, հիւսիւսային կողմը. Տօման-եըլտըզ-տաղը բռնած կողնիր անտառները, Զամլը-պէլի արեւելեան կողմին կից. Սախտալը բռնած կողնիր անտառները, 6 ժամ երկայնութեամբ ու 6 ժամ խորութեամբ, Սըվազէն 4 ժամ հեռի, արեւելեան հիւսիսային կողմը. Հաղեշ կամ Աղեշ բռնած մայրախիտ անտառները 6 ժամ շրջապատով, Սըվազէն 12 ժամ հեռի, արեւելեան կողմը. Քէօսէ-տաղ-օվասը, Հաղեշի անտառներուն կից. Կէօսալէմէլ, Եըլտըզ և Թէճէր բռնած ընդարձակ անտառները, Սըվազէն 12 ժամ հեռի, արեւելեան հիւսիւսային կողմը, այս անտառներուն լայնութիւնը 4 ժամ կը տևէ և երկայնութիւնը 12. Պօղան կամ Աքչայ-տաղը-օվասը 12 ժամ լայնութեամբ և նոյնչափ ալ երկայնութեամբ, Սըվազէն 18 ժամ հեռի, հիւսիսային կողմը. այս անտառն Աշէշէ անուն Նորաշէն քաղաքին սահմանակից է։

Հողը շատ բարեբեր է դաշտերուն ու ձորերուն մէջ, օդն առողջ, ձմեռը շատ ցուրտ, բերքերն են՝ ցորեն, արտ, բամպակ, մետաքս, կտաւատ, ծէհրէ, քէօք պօյա, ճակնդեղ, կորեակ, հաճար։

Ունի հանքեր, քարահատք, աղի լիճեր՝ ուրկէ կըհանեն աղ. աղի ծովակներ՝ ուրկէ կը հանեն տարեխ ձուկը։ Հանքային ջուրերու ջերմուկներ, որոնց մէջ երեւելի են Բրդնիկու մօտ գտնուած պաղ ջերմուկն ու Եըլտըզ ջերմուկը։ Մէկ քանի վտակ. Ալիս ու Իրիս գետերը. 300 ի չափ գիւղ։

Այս նահանգը բաժնուած է 7 գաւառներու, որ են. Սըվազ, Ամասիա, Զօրում, Ճանիկ, Տիվրիկ, Ա-

րապկեր, Եօզկաթ ։

Այս նահանգը կը պատասխանէ կալասի և Պոնտոսի մեծ մասերուն, նաև Հայաստանի մէկ փոքրիկ մասին (Փոքր Հայք)։

## ՍԸՎԱԶ ՔԱՂԱՔ։

Սըվազ Մարագոմ լեռան տակ՝ դաշտավայրի վրայ շինուած բերդաքաղաք մ'է Քըզըլ-ըրմաքէն (1) կէս ժամ հեռու հիւսիսային կողմը։

Քաղաքին հիւսիսային կողմն է Մայրագոմ կամ Մէ-րէքիւմ լեռը, արևելեան հիւսիսային կողմը Աստղիկ կամ Եըլտըզ լեռը, և արևելեան կողմն ալ Նիւալէվիկ լեռը։

Սըվազ պարսպապատ չէ, բայց տեղ տեղ կը տես-նուին հին պարսպի մ' ինկած կտորները, վասն զի 'ի հնումն պարսպապատ էր· Լէնկթիմուր 1400ին առաւ քաղաքն ու կործանեց պարիսպը։ Քաղաքին արևմտեան ծայրն՝ ուրկէ կեսարիա կերթան, Ղայսերու դուռ կը-կոչուի, պահելով մինչև ցարդ հին դռան անունը, զի երբ պարսպապատ էր, հոն ունէր նոյն անունով դուռ մը·

Քաղաքին հարաւային կողմէն և կէս ժամու չափ հեռուէն կ'անցնի Քըզըլ-ըրմաք, որ կ'ընթանայ դէպ 'ի արևմուտ և որուն վրայ ձգուած են երեք կամուրջներ, 1°. Էյրէ-քէօփրի կամ Ծուռ կամուրջ, քարաշէն հոյակապ 18 կամարներով, որ Սենեքերիմ Թագաւորին աղջկան

(1) Քըզըլ-ըրմաք, 'ի հնումն Ալիւս, Փոքր Ասիոյ ամենէն մեծ գետն է որ երկու մեծամեծ վտակներով սկիզբ կ'առնէ ու երթայ կը թափի Սև ծովի մէջ։

շինել տուածն է կըսեն ։ 2°. Քէօփրի-պաշը, Ճարշը-պաշը-ն արևմտեան կողմը և անկէ 1 ժամ հեռի . այս կամուրջը կիսաւեր է, բայց 18 կամարներով իր հոյակապ շէնքը ցոյց կուտայ՝ որ նշանաւոր անձ մը շինել տուած է զանի . աստր հիւսիսային կողմը կ՚իյնայ Շահնայ գմբեթ ըսուած ամուր շէնքն, որ ամենակուլ ժամանակին հարուածներուն դէմ դնելով մինչև հիմա կանգուն կեցած է . այս շէնքը ձմեռ ատեն ճանապարհորդաց ապաստանարանն է . իր ականակիտ աղբիւրներուն ջուրերն անցորդաց ծարաւը կը յագեցընեն ։ 3°. Ղըշլը-պաշը, Քէօփրի-պաշը-ն արևելեան կողմը . կոփածոյ մեծահատոր քարերով կառուցեալ է վեց կամարներու վրայ ։

Այս քաղաքն ունի 32,761 բնակիչ Տաճիկ, Հայ և Յոյն . Դաւրա, Հողթար արուարձաններուն բնակիչներն ալ հետ հաշուելով .

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Տաճկաց թիւն | 9,279 | արու . | 9,837 | էգ . | 19,116 |
| Տաճիկ մաղագործաց | 111 | » | 100 | » | 211 |
| Հայոց | 6,539 | » | 6,479 | » | 13,017 |
| Հռ . և Բող . Հայոց | 35 | » | 37 | » | 72 |
| Հայ մաղագործաց | 9 | » | 6 | » | 15 |
| Յունաց | 163 | » | 167 | » | 330 |
| | | | | | 32,761 |

4976 ի չափ տուն . 2176 ը Տաճկաց, 1750 ը Հայոց և 50 ալ Յունաց . Տուներն աղքատ շէնքեր են իրարմէ հեռի շինուած . կան մէկ քանի փայտաշէն մեծ տուներ ալ . փողոցները նեղ ու անկանոն ։ Ունի 45 աղօթատեղի տաճկաց, ճամի և մէսճիտ, որոնց երևելիներն են .

Ա . Ուլու-ճամի . աստր ընդարձակատարած շինութիւնը 50 մեծամեծ քառանկիւնի սիւներու վրայ հաստատուած է և 15,000 էն աւելի մարդ կ՚առնէ մէջը . Նուիրական աշտարակին ( մինարէ ) բարձրութիւնը կը գե-

բաղանցէ միւս ամէն ճամիներուն աշտարակները · վայրագաւիթը կամ արտաքին սրահին մէջ շատրուան մը կայ բոլորտիքը ծառաստաններով զարդարեալ , արտաքին դրան կից ալ աղբիւր մը 30 խողովակներու բաժնուած ։

Բ· Փոյա — ճամի · սոր աղօթատեղին փայտաշէն է և առաջինէն փոքր , բայց գեղեցկագոյն · Նուիրական աշտարակը 150 ոտք բարձրութիւն ունի , սրահը (հովլու) ծառազարդ է և մէջն ալ շատրուան մը կայ ·

Գ· Մէյտան – ճամի · քաղաքին հրապարակին մէջ շինուած ։

Դ· Օսման–շահ–ճամի , կամ Քիւլչէ–ճամի · շէնքը հին , քարաշէն , գմբէթը գեղեցիկ , աշտարակին բարձրութիւնը 60 ոտք ։ Այս ճամին 1584 տարիյառաջ Հայոց եկեղեցի էր՝ կառուցեալ յանուն Ս· Լուսաւորչի ։

Միւսներուն անուններն են ·

1 Ապտ-իւլ-վահապ ճամիսի
2 Գլավուզ „
3 Շէհիտլէր „
4 Ալի պապա „
5 Արիֆ էֆէնտի „
6 Հիւսէյին էֆէնտի „
7 Ֆէրթէլլի զատէ „
8 Աղաճսուք զատէ „
9 Շահ-Հիւսէյին Թաղի „
10 Թէքքէլի „
11 Քիւչիւկ մինարէ „
12 Տիքիլի Թաշ „
13 Քիւրքճիլէր „
14 Գարա հաֆիզ „
15 Ջաթալ-փունար Թաղի „
16 Մէքթէպի ըիւշտիէ „
17 Գազէզլէր „

18 Իմարէթ ճամիսի
19 Թարխանայ "
20 Շաքիր պէյ "
21 Մավուշ օղլու "
22 Րէճէպ փաշայ "
23 Օսման փաշայ "
24 Ալի աղայ "
25 Գայէ "
26 Գազի զատէ "
27 Սէրչէլի "
28 Ջուքուր բունար "
29 Ջավուշ պաշը Թաղի "
30 Աճէմ մահլէսի "
31 Պատթալ ղազի "
32 Ուզուն օղլու "
33 Իւրեանը-զիմմի Թաղի "
34 " Միսլիմ "
35 Քէօսէ-տէրէլի-զիմմի "
36 Կիւլլիւտ աղասը "
37 Օղլան չավուշ "
38 Պաթթալ ղազի մէսճիթի
39 Շահ Հիւսէյին Թաղի մէսճիթի

Հինգ գլխաւոր Թէքքէներն, այսինքն. մենաստաններն են.

1 Իպրահիմ Թէքքէսի. լայնանիստ աշտարակ մ'ունի կիսակործան, որուն շրջապատը 100 ոտքէն աւելի է։

2 Շէյխ-չօպան Թէքքէսի.
3 Ալի-պապայ "
4 Սօրխուլու "
5 Էվլիայ էֆէնտի "

Ասոնց Շէյխերը հիւրամեծար մարդիկներ են. ամեն մէկ Շէյխ իր կրօնական կարգին համաձայն արարողու-

Թիւն կ'ընէ ուրբաթ օրերը միայն ։

8 եկեղեցի մեծ ու փոքր ․ Դը Հայոց (վեցը ուղղափառաց և մէկը հռովմէականաց) ․ 1 յունաց ․ 1 ժողովարան բողոքականաց ․

Ուղղափառ Հայոց եկեղեցիններն են ․

Ա․ Մայր եկեղեցի ․ 8 հաստահեղյս երկաթապատ սիւներու վրայ հաստատեալ, լայնանիստ, քարաշէն, գմբեթաւոր եկեղեցի մ'է հինգ դուռով, կառուցեալ 1808ին յանուն Ս․ Աստուածածնի և նորոգեալ 1840ին․ գմբեթին բարձրութիւնը կը գերազանցէ քաղաքին ամեն շէնքերը, շքեղութեամբն ու ընդարձակութեամբը հրաշալիք մը համարուած է Սեբաստիոյ և շրջակայ քաղաքաց մէջ․ ունի երեք մարմարիոնեայ ընդարձակ խորաններ, ամպիոններ և սալայատակ ընդարձակ գաւթին մէջ կրկնափեղկ վանդակագործ երկաթի հազուագիւտ դուռ մը ․ ընդարձակ սրահ մը, որուն մէջ է կրկնայարկ առաջնորդարանը, սրահին երկու ծայրերն ալ երկու աղբիւրներ կան յորդահոս և կրկնախողովակ ։

Բ․ Ս․ Սարգիս ․ քարաշէն և չորս սիւներու վրայ կառուցեալ ։

Գ․ Ս․ Փրկիչ ․ կոփածոյ քարերով շինուած ։

Դ․ Ս․ Մինաս ․

Ե․ Ս․ Յակոբ ․ փայտաշէն, մայր եկեղեցիին կից ։

Զ․ Ս․ Վլասայ մատուռն փոքր և քարաշէն, Ձորբեօէ Ժանյեօէ ըսուած թաղը տաճկի պարտէզի մը մէջ․ ասոր մէջն է Ս․ Վլասիոսի գերեզմանն ․ այս մատուռը թէև տաճիկ ընտանեաց մը ձեռքին տակն է, բայց՝ամեն քրիստոնեայներ ինչպէս նաև տաճիկներն ուխտի համար կրնան յաճախել համարձակ ։

Հռովմէականն հայոց եկեղեցին է Ս․ Վլասիոս, քարաշէն, յունաց եկեղեցւոյն արևելեան կողմը ։

Ցունաց եկեղեցին է Ս․ Գէորգ, Հայոց գերեզմա-

նասյան մէջ. Ցոյները ճանիկու կողմերէն հոս գաղթած ժամանակ՝ Հայերէն վարձու առած են. այս եկեղեցին և վերջը ժամանակ անցնելով իւրացուցած են։

Կայ չորս մէտրէսէ (ուսումնարան). Ա. Կէօք-Մէտրէսէ, ճարտար ու հոյակապ շէնք. պատերը դրսաքին կողմէն զարմանալի արուեստով, մարմարիոն քարերով և քերուբ քանդակներով զարդարուած են, որոնց վրայի սքանչելարուեստ փորագրութիւնները խմորի վրայ դեղաձոյլ կաղապարներով տպուածի պէս կ'երևան. դուռը փոքրիկ և երկու կողմէն կճեայ ու քանդակագործ. բարաւորին վրայ ուղղանկիւն եռանկիւնի ձևով դէպ 'ի ներս փապարած եւ ամենաշքեղ քանդակներով զարդարուած շէնք մը կայ, որ լեռ բրգաձեւ և դէպ 'ի դուրս առ 'ի շեղ բարձրացած սպառուածովն որմերուն եզերքը կը շօշափէ. դռան երկու կողմերն երկու նուիրական աշտարակներ կան, որոնք թէպէտ բաւական դեղեցիկ և երկնագոյն սպակիներով վայելչացած են, բայց բուն Մէտրէսէին շինութեանը հետ բաղդատելով՝ կերևայ որ վերջը շինուած են, վասն զի անոր ճարտարութեանն ամենևին չեն հաւասարիր. ունի բաւական մեծ սրահ մը՝ որուն երկու կողմերը սիւնազարդ կամարներու տակ ութական սենեակներ կան և մէջ տեղը ընդարձակ պարտէզ մը։ Մէտրէսէին ներսի որմերուն փորագրութեանց վրայ ալ պակաս ճարտարութիւն չըկայ. բայց այսու ամենայնիւ թէ՛ ժամանակին սպառիչ ճիրաններն, և թէ՛ մէջը յաճախող տաճկաց անհոգութիւնը գրեթէ ոչընչացուցած են անոր գեղեցկութիւնը։ Կը կարծուի որ այս շէնքը Սեններքերիմ թագաւորին ապարանն էր։

Բ. Գօլէ-Մէտրէսէսէ. ասոր ալ ճարտարութիւնն առաջինին հետ կը մրցի. քանդակները ցոյց կուտան որ երկուքն ալ մի և նոյն վարպետի ձեռագործ են. ասոր

դիմացը՝ նոյն օրինակ փորագրութիւններով զարդարած պարիսպ մ՚և դուռ մը կայ, որուն ներքին կողմը բոլորովին աւերակ եղած է և միայն երկու կիսակործան աշտարակները մնացեր են դրանը ձախ կողմը. կերևայ որ այս շէնքն երբեմն մզկիթ էր.

Գ. Շէֆայէ-Տորչէնոյ։

Դ. Սայիտ-Ղազի-Տորչէնոյ։

Այս չորս մէտրէսէններուն մէջ տարին 3 ամիս միայն ձմեռը դասախօսութիւն կըլլայ չափահաս երիտասարդաց (1)։

Տաճկաց դպրոցներուն թիւը շատ է, ճամիներուն թուոյն հաւասար, բայց և ո՛չ իսկ մէկ կանոնաւոր դըպրոց մը կը գտնուի. վասն զի ամենուն մէջն ալ հասարակ ընթերցանութենէ ու գրելէ և քիչ մ՚ալ կրօնական դաստիարակութենէ զատ բան մը չըլլալուն՝ տըղայք կարևոր ուսմունքներէ ու արհեստներէ զրկուած են։

4 նախակրթական դպրոց ունին հայք, աղջկանց և տղայոց։ Քիչ ժամանակ առաջ աղջիկներուն կարդալ սորվիլը մեծ ամօթ ու անպատկառութիւն կը համարուէր և մինչև հիմայ ալ այս տարօրինակ գաղափարին հետքը մնացած է քանի մը անկիրթ ծնողաց քով. Հայք ունին ուսումնարան մ՚ալ կրկնայարկ, կառուցեալ 1851 Քրիստոսի թուականին՝ յանուն Ս. Թարգմանչաց արդեամբ Օտապաշեանց գերդաստանին. ասոր մէջ կը կրթուին 300ի չափ տղայք, և կը սորվին զանազան ուսմունքներ, ազատական արհեստներ ու օտար լեզու-

(1) Իսկ 1862ին հաստատեցաւ մէքթէպի րիւշտիէ, այսինքն արքունի դպրոց մը, որուն մէջ հիմա 120ի չափ աշակերտներ կը գտնուին միայն հասարակ ընթերցանութեան համար։

ներ ։ Դպրոցին ծախքին մատակարարութեան համար ընկերութիւն մը կազմուած է Սենեքերիմեան անուն, որուն անդուլ աշխատութեան շնորհիւն է որ մինչև հիմայ այս դպրոցը կը յարատևէ ։ Մէյ մէկ ծաղկոցներ ալ հռովմէական և բողոքական հայք և յոյնք ունին ։

10 բաղնիք․ որոնց գլխաւորներն են երկու վաղեան բաղնիքները կամ տողան-համամի լուած բաղնիքները, մանաւանդ արանց յատկացածը, որուն մեծութիւնը 80 քառակուսի կանգուն է կամարակապ քարաշէն ։ Գուրշունլու-համամը․ Սաէտ փաշայի բաղնիքը նորաշէն և հոյակապ․ միւսներուն անուններն են չինիլի, ճամի, էօնի-փաշայ, Պէյտօն, թէմաչէմ, ղայ համամը ։

Իջևաններն են․

1 Թաշ-խան, զօրաց մթերանոց եղած էր ։

2 Փուշլի-խան, փայտաշէն և ամենէն ընդարձակ ։

3 Մէյտան-խանը կամ Ակրահան, փայտաշէն եւ ընդարձակ․ ունի 38 գեղեցկաշէն սենեակներ, արտաքին կողմն ալ 11 խանութ․ որահին մէջ ականակիտ ջուրի աւազան մը։ Այս խանը քաղաքին համօրէն Հայոց արդեամբն ու Սենեքերիմեան անձնուէր ընկերութեան ջանիւքը շինուած է 'ի նպաստ ծախուց մայր դպրոցին ։

4 Շէյխ-խան, փայտաշէն ընդարձակ 60 սենեակներով։

5 Քէօշէկ-խան, Շէյխ-խանին կից ։

6 Պէքիր-չավուշ-խան, քարաշէն 30 սենեակներով ։

7 Փաշայ — խանը, վերինին կից և կիսաւեր ։

8 Ահմէտ — պէյի երեք դռնեայ խանը վերինին աջ կողմը 30 սենեակ և 30 ալ խանութներով․ վաճառականաց իջեվան է ։

9 Գարայ-ահմէտ-օղլու-խանը․ խիստ փոքրիկ ։

10 Նաուրֆ-օղլու-խանը, խիստ փոքրիկ ։

Սարաճհանէ-խանը, Խաքան-խանը և Սու-պաշը-խանը անուն երեք իջևաններն ալ կային որ հիմա բոլորովին աւերակ

եղած են ։

Կան զինուորանոցներ , ճեպխանէ մը , մեծ հրապարակ մը՝ ուր առեւտուր կըլլայ և բնակչաց տարեկան պարէնը կը ծախուի ։ Վաճառանոցներ կամ շուկայներ , որ են .

1 Բեւեռագործաց փողոց , Ենթաէրճի-չարշըսը .
2 Համեմագործաց ״
3 Սառաճ-խանէ ״
4 Նալպանտլար
5 Ջէօրէ կճիլէր
6 Պիթ պազար . անօթ-րդ-ով ծախուելիք բաներուն .
7 Դերձակնոց , Թէրզիլէր .
8 Պէզազլար .
9 Ջէզմէճիլեր .
10 Բապուճճըլար .
11 Մէսճիլէր .
12 Փէմպէճիլեր .
13 Պադալլար .
14 Ազտէրլէր , որուն առջեւն է մեծ հրապարակը .
15 Գլըճճըլար , պըչաքճըլար , Թիւթիւնճիլէր , չըպըքճըլար և քալայճըլար . չարշըսը ։
16 Չըխըրըխճըլար , և դարբնաց շուկայներ մեծ հրապարակին մէջ ։

Այս շուկայներուն անուններէն կ՚իմացուի որ քաղաքացւոց սովորական արհեստները վերոյիշեալներն են ։ Առաջները կոտաւի վաճառականութիւնը շատ բանուկ էր , տարին մէկ միլիոն ըուրուշէն աւելի կոտաւեղէն կը ծախուէր ուրիշ քաղաքներու վրայ , բայց հիմա քաղաքէն ելած վաճառներուն են դուլպայ և ծխախոտ միայն . աղի լիճերն ու հանքերն ալ արդիւնաւոր են . այս մօտերս քաղաքին վաճառականութիւնն առաջ երթալ սկսաւ Հայոց Նորահաստատ երկու ընկերութեանց շնորհիւը ։

Հացին հոխան 20 փարայ է , միսը 60 փարայ , իւղը 7 ղուրուշ · գարիին գրիւը ( Պօլսոյ 7 գրիւը ) 40 ղուրուշ ։

Քաղաքին շինուածոյ տախտակներն ու ատաղձը Աք-տաղ անտառէն կը բերեն · վառելու փայտերն ու մախըր՝ ( չըրա ) Զամլը-պէլ անտառէն · կաղնիի փայտերը Սախալէ ըսուած անտառէն · շինուածոց գերաններն Աղէշէ Ֆէյզէ-տաղ անտառներէն Ալիս գետին հոսանաց միջոցաւ · իսկ սիւնացու գերանները՝ Քօշա-պէլ ըսուած անտառէն ։

Սըվազ ունի 2 բերդ · որ են վերին և ստորին ։

Վերին բերդը քաղաքին հարաւային կողմը բլրոյ մը վրայ է , որ երեսի վրայ մնացած ըլլալով քայքայուեր և հիմա կիսաւեր եղած է , որուն մէջ 150 ի չափ տաճկի տուներ կան ։ Անոր մէջ դրուած է մեծ ժամացոյց մը՝ որուն հարուածոց ձայնը քաղաքէն երկու ժամու չափ հեռի կը տարածուի ։ Այս բերդէն կ'արձակուին թնդանօթք ։

Ստորին բերդը քարաշէն է և նոյն բլրոյն ստորոտը · Իր կիսակործան պարիսպները կը ցուցնեն որ 'ի հնումն այս բերդը հոյակապ շինուած մ'էր ։ Անոր մէջ 100 էն աւելի տաճկի տուներ կան ։ Հոս է վերոյիշեալ Գէօք Մէտրէսէ ըսուած ճարտարագործ շէնքը · մէջը շիրիմներ կան և կը կարծուի թէ Սեննեքերիմեանց գերեզմաններն ըլլան անոնք ·

Հոս կը գտնուի նախնեաց շատ մը զէնքեր · նետ , աղեղն , թուր , նիզակ , վահան և թնդանօթի երկաթեայ մեծամեծ ռումբեր ։

Քաղաքացիք 1808 ին այս բերդին մէջ պաշարեցին Զարխաճի Ալէ փաշան , իր բոլոր ուտելիքները կտրեցին , և 40 օր շարունակ արիւնահեղութիւններ եղան · փաշան ներսէն իր մարդոցմով քաղաքին վրայ ռումբեր կը տե-

ղացընէր և քաղաքացիք դրսէն փոխադարձաբար փաշային վրայ, մինչև որ Մութուլլահ փաշան գալով՝ Ալի փաշան Կ—Պօլիս կանչուեցաւ, և զոր թունաւորեցին։

Բերդէն դուրս և անոր մօտն է վերոյիշեալ հօյակապ շէնքը, Աքսէ-Տօրէօ ըսուած ուսումնարանը։ Նոյնպէս բերդին դէմը կեդրոնը քաղաքին կառավարութ․ դուռը։

Բերդին դրան առջև տաճկաց գերեզմանատունը կայ, որուն մէջ կը գտնուին Ս. Եւստրատիոսեանց հինգ-վկայից գերեզմանը։

Քաղաքին հարաւային կողմը Հայոց ընդարձակ գերեզմանատունը կայ, որուն անունն կուտան Այն հօլէր, զի հոն ժողվել տալով Լէնկթիմուր Հայոց մանկտին, ոտնակոխ՝ ջարդուբուրդ ըրած է զանոնք։ Կ'անուանեն նաև Քօրօղլան-ճանկան, քառասուն մանկունք ըսուած տեղին կամ Ս. քառասնից լճին 10 վայրկենի չափ մօտ ըլլալուն։

Քառասուն մանկունք ըսուած տեղը կամ սրբոց քառասնից լիճը, ուր քառասուն մանկունք նահատակուեցան, բոլորովին ցամքած է, և նահատակաց գերեզմանները ցիր ու ցան գերեզմանատան մը մէջ են։

Ասկէ հինգ վայրկեան հեռի եկեղեցի մը կար յանուն Ս. քառասնից, զոր Ղուշ-Պուրճան հիմնայատակ ըրած է։

Կուսակալին ապարանն ալ քաղաքին հիւսիսային կողմն է։

3 վտակներ կոռոգեն քաղաքը։

1 Մուրտառ սու (պղծեալ ջուր)․ քաղաքին ականներն ու աղտեղութիւններն այս ջուրին մէջ կը թափին․ մշտահոս է, ամառ ձմեռ կը վազէ․ այս վտակին Ասողիկ գետ ալ կըսեն, վասն զի Սեբաստիոյ Եըլտըզ-Էլի

այսինքն Ասադ գաւառին լեռներէն կը բղխէ · Ճամբան շատ մը ջրաղացներ դարձընելով կուգայ Սըվազ և Մե-ցօղէրան գերեզմանատանը քովէն անցնելով կերթայ Քը-զըլ-ըրմաքին կը խառնուի ։

2 Մէրճիմէկ-սու · Բուդնիկու ջուր ալ կըսուի · կը հոսի քաղաքին եզերքէն , ասոր ջուրը մաքուր է , հոսքա-սան մեծ է , և ամառը կը ցամքի ։

3 Բնկորատ կամ Նապուտիկ վտակ · փոքր առու մ’է , որ՝կ’անցնի քաղաքին քովէն և շատ անգամ ջուրին առատանալովը եզերքներուն վրայ բնակիչներուն վնաս կը հասցընէ ։

Այս վտակներէն ձուկ կելնէ ։ Քաղաքին խոշոր փայտերը այս վտակներով կ’իջեցունեն ։ Քաղաքին ջուրը անուշ է , մանաւանդ Քէչէնէկ և Պայրամ-ճօշայ ըսուած ջուրերը · շատ մը ինքնաբուղխ աղբիւրներ կան · Պայրամ-ճօշայի զովացուցիչ ջուրը 62 գլխաւոր մասերու բաժնուած է քաղաքին զանազան կողմերուն ու թաղերուն մէջ ։

Քէչէնէկ ջուրն ալ զանազան թաղերու բաշխուելով 32 աղբիւրներէ կը վազէ , որոնց մէջ երևելի են կառավարութեան պաշտօնատան դուռն ձախ կողմը դրնուած գեղեցկաշէն աղբիւրն ու կուսակալին ամարանոցին շքեղ աղբիւրը · այս աղբիւրներուն երկուքն ալ մարմարիոնեայ շէնքերով ու ոսկեզօծ նկարներով զարդարուած են ։

Օդն առողջ է , եղանակը բարեխառն , ձմեռը սաստիկ ցուրտ կընէ , ընդհանրապէս հիւսիսային հովեր կը փչեն · Ծառերը չեն դիմանար , բայց առատ ցորեն , գարի , հաճար , կորեակ , կտաւատ , ճէօք պօյա , ճէհրի , ճակնդեղ կըլլան ։

Բնակիչները պարկեշտ , խաղաղասէր , մարդասէր , աշխատասէր և քաղաքակրթութեան ընդունակ են , բնա-

չուայլութիւն չունին ։

Տէրութեան զօրքերը շատ ժամանակ այս քաղաքին մէջ կը ձմերեն ։

Սըվազ նախ Պոնտոսի վիճակն էր․ ետքը Կապադովկիայի վիճակն եղաւ և վերջն ալ Հայոց մայրաքաղաք ։

’Ի սկզբան Սըվազ Կաբիրա կը կոչուէր, ուր Միհրդատ եօթներորդ (Պոնտոսի թագաւոր) բերդ կառոյց, և սոյն շրջակայ վայրերուն վրայ 74 տարի յառաջ քան զՔրիստոս՝ Հռովմայեցւոց դէմ Լուկուլլոսէ (Հռովմայեցի զօրապետ) հետ պատերազմ ընելով յաղթուեցաւ․ քաղաքը Հռովմայեցւոց անցաւ․ անկէ ’ի վեր երկու անգամ իրարու ձեռքէ առնելէ ետքը՝ վերջապէս մնաց Հռովմայեցւոց ձեռքը, երբ Պոմպէոս վերջին յաղթութիւն մը կանգնելով Միհրդատայ վրայ՝ նուաճեց թէ՛ այս քաղաքն և թէ՛ բոլոր շրջակայ վայրերը ։ Պոմպէոսի շնորհիւը բարգաւաճեցաւ քաղաքն ու անուն առաւ Թէոսուպոլիս ։ Վերջը Պոնտոսի Բոլեմոն և թագաւորին մահուանէն ետքն՝ իւր այրի կինը Բիթհոտորիս՝ Քրիստոսի ժամանակներն այս քաղաքին անունը դարձեալ փոխելով դրաւ Սեբաստիա, այսինքն, Օգոստոս, ’ի պատիւ Հռովմայ կայսերաց՝ որ կը կոչուէին Օգոստոս ։

ԺԱ. դարուն՝ Հայոց Սենեքերիմ թագաւորը փոխանակաւ առաւ յունաց կայսրէն զՍեբաստիա իւր ութ քաղաքներովն ու 4000 ի չափ գիւղերովը ։

699 տաճկաց թուականին՝ Սուլթան Օսմանի օրովը՝ տաճիկները գրաւեցին Սըվազ և 103 տարի ետքը Սուլթան Պայազիտ Ըլտըրըմին օրովն՝ որ Պրուսա կը նստէր, և որուն որդին Էմիր Սիւլէյմանն իբրև իշխան և կուսակալ կը գտնուէր ’ի Սեբաստիա, Լէնկթիմուր 18 օր քաղաքը պաշարելէն ետքը սուտ երդմամբ տիրեց բերդին․ իր աշխարհաւեր ձեռքը ազատ չը թողուց այս

քաղաքն ալ և մերկացուց զանի ժե դարուն սկիզբները իր գեղեցկութիւններէն ու այն հոյակապ շէնքերէն՝ որոնք Սենեքերիմայ ժառանգորդներն էին։ Էմիր Սիւլէյման դահը բարձրանալէն 14 տարի ետքը գերի լինկաւ Լէնկթիմուրի ձեռքն ու մեռաւ. իսկ իր յաջորդը Չէլէպի սուլթան Մէհէմմէտ կրկին ձեռք բերաւ Լէնկթիմուրէն գրաւեալ ամեն քաղաքներն՝ ինչպէս նաև Սըվազ 816 թուականին տաճկաց, յորմէ հետէ մինչև ցայսօր Օսմանեան տէրութեան ձեռքն է։

Քաղաքէն կէս ժամու չափ հեռի հիւսիսային կողմը դաշտին բարձր տեղը Հայոց Ս. Նշանի վանքը կայ 40 սենեակով. այս վանքն աղիւսակերտ պատերով շրջապատեալ ծառազարդ ընդարձակ պարտէզի մը մէջ է. ունի 4 աղբիւր առատ ու պատուական ջուրերու. 3 քարաշէն փոքրիկ տաճար. Ա. Ս. Նշան, քառակուսի սրբատաշ քարերով կամարակապ և գմբեթաւոր. տաճարին որմերուն մինչև կէսը գեղեցիկ յախճապակիներով զարդարած։ Բ. Ս. Կարապետ, բարձրաբերձ գմբեթաւոր, շինուած Լուսաւորչի Կեսարիայէն դարձած ատենը։ Գ. Ս. Աստուածածին, Ս. Կարապետի տաճարին աջ կողմը. որմերն ու յատակը յախճապակիներով զարդարած. սոր խորանին աջ կողմը կը գըտնուի Պետրոս գետադարձին գերեզմանն, և ձախ կողմըն ալ՝ Գոհարինեայ Թէոդորոս Ռբեգայ մկայինը։

Այս մենաստանը, զոր նախ Սենեքերիմ թագաւորը շինած էր և որ երբեմն ալ կաթուղիկոսարան եղած է է Պետրոս գետադարձի ժամանակ, ինչպէս կը վկայեն Մագիստրոսի թուղթերն ու այլք, հոյակապ շէնք մ' ունէր և շատ հարուստ էր. բայց Լէնկթիմուր հիմնայատակ կործանած ըլլալով, ժամանակէ մ'ետքը այս արդի վանքը շինուեցաւ, և երբեմն երբեմն ալ նորոգութիւններ կրեց. իսկ 'ի վերջոյ վիճակին առաջնորդ-

Ցովհաննէս արքեպիսկոպոսի աշխատութեամբ ՚ի հիմա-նէ նորոգեցաւ ։

Այս վանքէն ելած է Մխիթար վարդապետը, որ հիմնադիրն եղաւ Մխիթարեան միաբանութեան ։

Հիմա շատ ճանապարհորդներ հոս կու գան կը կե-րակրին ։

Վանքին արեւմտեան կողմը կը գտնուի Անապատ ըսուած 20 սենեակներով մենաստանն՝ որ ունի քա-րաշէն հին եկեղեցի մը յանուն Ս. Աստուածածնի, ջրարբի պարտէզ եւ ականակիտ անուշ ջուրի աղբիւր մը գեղեցկաշէն աւազանով ։

Անապատ վանքին հիւսիսային կողմն է Գալըա ա-նուն Հայոց գիւղն, որուն բնակիչներուն ամենն աղօ-րապան են ։ Այս գիւղին դիմաց բարձրաւանդակի մը վրայ կը գտնուին Ս. Յակոբ եւ Ս. Վարդան ուխտատե-ղիներն իրարմէ քիչ հեռի ։ Ս. Վարդանի առջեւ ակա-նակիտ աղբիւր մը կայ Ճէյ անուն ։

Արվաղէն 22 ժամ հեռի հարաւային կողմը Խնտըր-կէ-տար ըսուած ուխտատեղի մը կայ, նուիրեալ յանուն Խնտըրկէտար Ս. Աստուածածնի. ասոր համար կըսեն որ առաջուց բաւական ընդարձակ մենաստան մ'է եղեր, որուն հիմա տաճարին բեմը միայն մնացեր է ։ Տաճիկ-ները հոս շատ կը յաճախեն երբ հիւանդի մը բժիշկ-ներէն բժշկուելու յոյսերնին կը կտրեն, եւ կանուանեն Խօճա-թէփէն ։

Արվաղէն 2 ժամ հեռի արեւելեան կողմը Ս. Սեւ-երիանոս սեբաստացիին ուխտատեղին կայ, որուն եկե-ղեցիին հետքն անգամ հիմա չընշմարուիր, միայն ծա-ռերով շրջապատուած բոլորակաձեւ տեղ մ'է, ուր ջուրի ակ մ'ալ կայ. հո՛ս ամառը շատ ուխտաւոր կերթայ ։ 6 ժամ հեռի արեւելեան կողմը լայնանիստ բարձրաւան-դակի մը վրայ կառուցեալ է Ս. Հրեշտակապետաց մե-

նաստանը 40 սենեակով ընդարձակ բակի մը մէջ, որուն միջավայրին վրայ մեծ աւազան մը կայ. Ասոր ջուրը մերձակայ կրահանքի մը մէջ բղխելուն համար ախոր-ժահամ չէ։ Ունի քարաշէն եկեղեցի մ՚ և երկու մա-տուռ։

Քաղաքին շուրջը 300 էն աւելի գիւղեր կան, որոնց գլխաւորները հայաբնակներն են։ Բադնիկ կամ Բագ-րատունիք գիւղ, քաղաքէն 1 ժամ հեռի արևելեան կողմը. ունի 200 տուն հռովմէական հայոց, մէկ եկե-ղեցի քարաշէն յանուն Ս. Սարգսի, մէկ դպրոց. Մէծէ վտակն ասոր առջևէն անցնելով կուգայ 'ի Սեբաստիա։

Հողթար (հողթար) տաճկ. Հէօլլէ-կէլէն անուն հայոց գիւղը կամ արուարձանը. Սըվազէն 1/4 ժամ հեռի հիւսիսային կողմն, ունի 20 տուն բնակիչ, փայտաշէն եկեղեցի մը Ս. Գէորգ անուն։

Գալտը գիւղ 1 ժամ հեռի արևելեան հարաւային կողմն Ալիս գետին եզերքին վրայ. ունի 12 տուն հա-յոց, մէկ փայտաշէն եկեղեցի, երկու ջրհոր, ուրկէ գիւղացիք կը խմեն։

Իշխանիկ գիւղ 1 ժամ հեռի արևելեան հարաւա-յին կողմն. ունի 25 տուն հայոց, քարաշէն նոր եկե-ղեցի մը յանուն Ս. Երրորդութեան, 1 դպրոց հասա-րակ ընթերցանութեան, 6 աղբիւր, 1 ջրհոր աղի, ուրկէ 150.000 հոխայի չափ աղ կը հանեն։

Թինկէօլ գիւղ 2 ժամ հեռի արևելեան հարաւային կողմը. ունի 35 տուն հայոց. մէկ քարաշէն եկեղեցի չորս կամարով Ս. Յակոբ անուն, մէկ ջրհոր մը աղի, ո-րուն տեսակը ստորին է։ Թինկէօլէն 1 ժամ հեռի Թուզլում ըսուած աղի ջրհորը կայ, որուն աղը շատ ա-ռատ է և անուշահոտ, զոր կը զտեն 800 փոսերու մէջ.

Ղավրաղ գիւղ 3 ժամ հեռի արևելեան կողմն. ու-

նի 16 տուն հայոց, հին եկեղեցի մը յանուն Ս. Սարգսի։

Խանձառ գիւղ 3 ժամ հեռի հիւսիսային կողմն. ունի 18 տուն Հայոց, Ս. Սարգիս անուն փայտաշէն եկեղեցի մը, դպրոց մը. այս գիւղին մօտն է Սուրբ Աթանագինէ հայրապետին գերեզմանը։

Կոփ-տուն գիւղ 3 ժամ հեռի արեւելեան կողմն. ունի 110 տուն Հայոց, փայտաշէն եկեղեցի մը Ս. Աստուածածին, մէկ դպրոց։ Ասոր հիւսիսային կողմը Ս. Նշան անուն ուխտատեղի մը կայ, ուր կը գտնուի աղի ջուրի լճակ մը։

Եէնիճէ գիւղ 4 ժամ հեռի արեւելեան կողմն. ունի 10 տուն հայ բնակիչ, աղի ջրհոր՝ ուրկէ տարին 100 քոռ աղ կը հանեն։

Խորսանայ գիւղ 4 ժամ հեռի արեւելեան կողմն. ունի 28 տուն Հայոց, 2 փայտաշէն եկեղեցի, Ս. Աստուածածին որ գիւղէն դուրս է, և Ս. Թորոս։ Այս գիւղէն ընտիր ցորեն կ'ելնէ։

Կավլուայ գիւղ 5 ժամ հեռի արեւելեան կողմն. ունի 18 տուն Հայոց, մէկ քարաշէն եկեղեցի գմբեթաւոր Ս. Սարգիս անուն. դպրոց մը։

Դդմաճ գիւղ 6 ժամ հեռի արեւելեան կողմն. ունի 24 տուն Հայոց, կէս քարաշէն եկեղեցի մը Ս. Սարգիս անուն. ասկէ կէս ժամ հեռի բլրակի մը վրայ կը գտնուի Հաֆէզ-գալէսի ըսուած ամրոցն, որուն վրայ կան քարայրներ և քարաշէն տուներ։

Խորոխան գիւղ 6 ժամ հեռի արեւելեան հիւսիսային կողմն. ունի 22 տուն տաճկաց. 8 Հայոց. 1 քարաշէն եկեղեցի յանուն Ս. Հրեշտակապետաց, զոր Սենեքերիմ թագաւորը կառուցած է ըստ աւանդութեան։

Պետրոսի կամ գոչ-հիսար գիւղ 6 ժամ հեռի արեւելեան հիւսիսակողմն. ունի 32 տուն տաճկաց, 28

Հայոց · 1 փայտաշէն եկեղեցի Ս. Յակոբ · 1 դպրոց ։

Կամիս գիւղ 6 ժամ հեռի արեւելեան կողմն · ունի 39 տուն Հայոց, 20 տաճկաց · մէկ քարաշէն եկեղեցի Ս. Թորոս, մէկ դպրոց · գիւղին մօտ է [illegible] ըսուած արօտը ։

Աղտք կամ Թուզ-Հիսար գիւղ 6 ժամ հեռի · ունի 120 տուն Հայոց, մէկ քարաշէն եկեղեցի Ս. Կարապետ, մէկ դպրոց ։

Թավշանլու գիւղ 7 ժամ հեռի · ունի 20 տուն տաճկայ, 7 տուն Հայոց ·

Ճժղընի կամ Նար-հիսար գիւղ 8 ժամ հեռի, ժայռի մը վրայ շինուած և պարսպապատ · ունի 40 տուն Հայոց, 30 տաճկաց, մէկ փայտաշէն եկեղեցի, մէկ դպրոց ։ Ասոր մօտ է Դրունք կամ Թիւրնիք ըսուած բարերեր դաշտավայրը՝ հարուստ առատ ու պտտուական ցորենով ։

Սոանոզ գիւղ 8 ժամ հեռի · ունի 50 տուն տաճկի, 30 տուն Հայ, մէկ փայտաշէն եկեղեցի, մէկ դըպրոց ։

Ասկէ շատ հեռի չէ փամփընոյ անուն աւերակ գիւղըն, որուն մէջ կը գտնուի Սեւ խաչ անուն ուխտատեղի մը ։

Թէոդորայ կամ Թոտորկայ գիւղ 10 ժամ հեռի · ունի 20 տուն տաճկաց, 8 տուն Հայոց, մէկ քարաշէն եկեղեցի, մէկ դպրոց ։ Այս գիւղին մօտ է Թէօտէրկէ-կէօլիւ անուն հռչակաւոր լիճն, որուն շրջապատը 3 ժամէն աւելի է, այս լճէն կելնէ առատ տարեխ ձուկ ։

Զառայ գիւղաքաղաք 12 ժամ հեռի · ունի 200 տուն տաճիկ, 120 տուն Հայ բնակիչ, մէկ քարաշէն մզկիթ չորս սիւներու վրայ կառուցած · 1 քարաշէն գմբեթաւոր եկեղեցի 6 սիւներու վրայ հաստատած, մէյմէկ դպրոց Հայոց ու տաճկաց · չուկայ մը 60 ի չափ

խանութներով։

Ջառայի արեւելեան կողմն երկու ձոր կայ, որոնց մէջէն երկու մեծ գետեր հոսելով կուգան գիւղին առջեւ իրարու կը խառնուին։

Այս գիւղէն կէս ժամ հեռի արեւելեան կողմը լեռան մը մէջ կը գտնուի Քարհատ կամ Թաշլըք գիւղը 30 տուն Հայ բնակիչներով. ունի մէկ քարաշէն եկեղեցի յանուն Ս. Յակոբայ։

Քարհատէն 1 ժամ հեռի դէպ ՚ի արեւելք ձորի մէջ Ալիս գետին եզերքին վրայ կը գտնուի Թէքէրլի անուն 6 տունով Հայոց գիւղը։

Թէքէրլիէն 1 ժամ առաջ երթալով բլրի մը վրայ կը գտնուի Ալէ—քիլիսա գիւղն, որ ունի 58 Հայոց տուն. 6 տաճկի. մէկ քարաշէն եկեղեցի Ս. Սարգիս։

Ասկէ անդին անգործ մնացած արծաթի հանք մը կայ, ուրկէ 2 ժամ հեռի դէպ ՚ի արեւելք կը գտնուի Գարա—պօղազ անուն գիւղը 20 տուն Հայ և տաճիկ բնակիչներով. այս գիւղին ձորին մէջէն սկիզբ կ՚առնէ Ալիս գետը. գետին քով կը գտնուի հոյակապ պանդոկ մը, բայց աւերակ, զոր Սուլթան Մուրատ շինած է ըստ աւանդութեան։

Ջառայի արեւմտեան, այսինքն, դէպ ՚ի Սըվազի կողմը կէս ժամ հեռի կը գտնուի Գեւօձական կամ Գեւօձ (տաճկ. Տէվէյէ կամ Տէվէքըսէ) գիւղն Ալիս գետին եզերքին վրայ 40 տուն տաճիկ և Հայ բնակիչներով. ասոր մօտ կը գտնուի Գեւօձու Ս. Գէորգ անունով աւերակ վանք մը, նաեւ կրոյ հանք՝ ուր այրեր փորուած են։

Գեւօձէն 2 ժամ հեռի կը գտնուի Ճանճիկ կամ Ճէնճիկ գիւղը 30 տուն տաճիկ, 10 տուն Հայ բնակիչներով։

Այս գիւղին շուրջն 3 լիճ կայ, որոց երկուքը

կապու տագոյն են եւ միւսը սեւ, ամեն մէկին տարածութիւնը գրեթէ 140 մէթրի չափ է, ուրկէ ձկնորսները աշնան ատեն առատ ձուկեր որսալով կ'աղեն ու հեռաւոր քաղաքներու կը վաճառեն:

Ջառայէն 2 ժամ հեռի դէպ 'ի հիւսիս կը գտնուի Օղնովուտ գիւղը 45 տուն տաճիկ եւ 5 տուն հայ բնակիչներով. գիւղին առջեւէն քաղցրահամ առուակ մը կ'անցնի:

Ասկէ 1 ժամ հեռի Բուարերդ գիւղն, որ ունի 32 տուն տաճկի եւ 18 տուն հայոց, 1 քարաշէն եկեղեցի Ս. Թորոս, փոքրիկ դպրոց մը, 5 աղբիւր, որոցմէ միայն մէկին ջուրը քաղցրահամ է եւ միւսներունը լեղի:

Ասկէ ալ $1\frac{1}{2}$ ժամ հեռի կը գտնուի Ջայքիւրտ անուն գիւղը 25 տուն տաճիկ, 5 տուն հայ բնակիչներով:

Ասկէ ալ 2 ժամ անդին կը գտնուի Պահճէ գիւղը 22 տուն հայ և 6 տուն տաճիկ բնակիչներով: Գիւղին առջեւէն անուշ ջուրով գետակ մը կ'անցնի, ուրկէ կը հանեն քաղցրահամ ձուկեր. Պահճէ գիւղէն կէս ժամ հեռի ուխտատեղի մը կայ խնդրակատար Ս. Աստուածածին անունով, ուր վերափոխման տօնին օրն անթիւ ուխտաւորներ կ'երթան մատաղ կտրելու:

Ջառայէն $4\frac{1}{2}$ ժամ հեռի կը գտնուի Ոդ-մաշատ ըսուած արծաթի հանքն, ուրկէ կէս ժամ հեռի հիւսիսային կողմն անտառ մը կայ, որուն քովն ալ Ցէրէ-տամը անուն գիւղ մը: Դարձեալ $4\frac{1}{2}$ ժամ հեռի կը գտնուի Կիւլ--փունար արծաթի հանքն, որուն մօտն անտառ մը կայ: Նոյնպէս $4\frac{1}{2}$ ժամ հեռի եւ արեւելեան հիւսիսային կողմը կայ Փունար—տէրէսիի արծաթի հանքն, որ ունի անտառ մը մէկ քառակուսի ժամ ընդարձակութեամբ, ուրկէ 1 ժամ հեռի է Պօնճուքլու-սէքի ըսուած գիւղը: 3 ժամ հեռի ալ Ալչադ—պէլ ը֊

սուած արծաթի հանքն, որուն քով կամ Ջառայի արեւելեան կողմը կը գտնուի Պաշ խուրտ ըսուած գիւղն, ուրկէ $1^1/_2$ ժամ հեռու անտառ մը կայ․

Այս գիւղերուն գրեթէ ամենն ալ Ոլիս գետին աջ ու ձախ եզերքներուն վրայ կամ անոր մօտերը դաշտավայրի վրայ շինուած են։

Ոլիման ցուրտ ըլլալուն հողը յարմարութիւն չունի պտուղ ու այգի հասցունելու․ բայց գարի ու ցորեն առատ կըբերէ՝ որով այս գիւղերն՝ Ակնայ, Տիվրիկի, Արապկերի, Ոիւրինի, Մալաթիայի եւ ուրիշ շատ մը հեռաւոր ու մերձաւոր քաղաքներու շտեմարան եղած են։

Սըվազէն մէկ, երկու, երեք ժամ հեռաւորութեամբ կը գտնուին մէկ քանի ագարակներ, որ են Շուն-քուռակ կամ ըստ հնոց Սիմ-քիւրէկ, որ ունի անուշահամ պատուական աղբիւր մը։ Պալախօր, Աստղիկ գետին երկայնութեամբ Ջազանլու, Սարը-հասան, Էմին-աղա-չիֆթլիկի, Պօրօզլուս, Այրանլը, Փիւրտլէր-քէօյի, Ջելէպիլէր եւ Սէրբէնճիկ։

Սըվազէն 6 ժամ հեռու հարաւային կողմն երթալով կը հանդիպիս Ուլաշ, որ Թօնուս գաւառի գիւղերէն մէկն է դաշտավայրի վրայ շինուած․ ունի 100 տուն Հայոց, եւ 850 ի չափ բնակիչ, որոնց ամենն ալ երկրագործ են․ մէկ քարաշէն եկեղեցի, դպրոց չը կայ․ աոր մօտ է Թէճիր-տաղը ըսուած անտառապատ լեռը՝ որուն ստորոտը զետեղուած են Գոչքիրլի եւ Ջաղայ ցեղի քիւրտերը։ Այս գիւղէն երեք ժամ առաջ երթալով կը մտնես Գազի-մաղարայ ըսուած հայաբնակ գիւղն, որ ունի 30 տուն եւ 110 բնակիչ․ մէկ քարաշէն եկեղեցի, մէկ դպրոց։ Ասկէ անդին մէկ ժամ երթալով եւ մէկ քանի մանր գիւղեր անցնելէն վերջը կը հանդիպիս Գարայ-հաճուլու կամ Մաղարայ հայաբնակ գիւղն, ուրկէ անցնելով կ'երթաս Եաղ-տօնտուրան ըսուած լեռն, որուն

դածգալթն ամենաքաղցր ջուր մը կայ ։

Ժամ մ՚ալ յառաջ երթալով կը մտնես Մանճըլըք
ըսուած հայաբնակ գիւղը 50 տունով, որ ունի 200 բը-
նակիչ, ամէնն ալ երկրագործ, զինավարժ և քաջասիրտ,
բայց անկիրթ. մէկ վանք մը Ս. Թորոս անուն՝ ուր կը
նստի վիճակին առաջնորդը. դպրոցն ու եկեղեցին ալ
վանքին մէջ են ։ Գիւղին դիրքը լեռնային է, օդը բա-
րեխառն, հիւսիսային արեւելեան հովերը կը փչեն.

Այս գիւղէն 9 ժամու չափ հեռու ապառաժուտ ու
լեռնային ճամբաներէ յառաջ երթալով կը հասնիս Կիւ-
րին գիւղաքաղաքն, որ Սըվազի նահանգին կցորդ է
և ունի 20 գիւղ, որոնց բնակիչները տաճիկ են և եր-
կրագործ ։

Կիւրին գիւղաքաղաքն ունի 2000 ի չափ տուն, ո-
րոնց 1250 ը ուղղափառ Հայ, 90 ը հռովմէական և 10ը
բողոքական Հայոց է և 650 ալ տաճկաց ։ Բնակիչներն
ընդհանրապէս աղքատիկ են՝ բայց հիւրասէր. 4 եկե-
ղեցի Հայոց, որոնց մէկը քարաշէն է 14 սիւներու վը-
րայ կառուցեալ յանուն Ս. Աստուածածնի. միւս երեքը
փայտակերտ են, Ս. Գէորգ, Ս. Փրկիչ, Ս. Սարգիս ։ 1
քարաշէն փոքրիկ եկեղեցի հռովմէական Հայոց. 1
ժողովարան բողոքականաց ։ 1 մեծ մզկիթ աշտարա-
կաւոր, և մէկ քանի փոքրիկ աղօթարաններ ( Ջէօճէր ) ։
3 դպրոց Հայոց. 1 հռովմէականաց. տաճկաց դպրոց
չը գտնուելուն համար անկիրթ մնացեր են ։ 1 բաղնիք,
շուկայ մը, պարտէզներ ։ Հայերն ըստ մեծի մասին վա-
ճառական են և միշտ Բերիոյ ու Տրապիզոնի հետ յա-
րաբերութիւն ունին ։ Տաճիկները հիւսնութիւն և քա-
նի մը ուրիշ արհեստներ կը գործեն ։

Կիւրնոյ դիրքը լեռնային է, օդը բարեխառն, հիւ-
սիսային հովերը պակաս չեն ։ Ունի երկու դետ. մէկը
մէկ ժամու չափ հեռու տեղէ մը բղխելով կուգայ կ՚անց-

նի գիւղին մէջէն, ոռոգելով պարտէզներուն մէկ մասը կ'երթայ դէպ 'ի Տարէնտէ, և միւսը քաղաքին հարաւային կողմէն կէս ժամու չափ հեռի տեղէ բղխելով կուդայ գիւղին պարտէզներուն մնացած մասը ոռոգելէ ետքը՝ կը միանայ առջինին հետ։

Թօքաթէն Սըվազ գալու համար՝ սովորաբար հետևեալ ճամբան կը բռնեն. Թօքաթէն 9 ժամ հեռի Թուրխալ գիւղը Ա. իջեւան։ Անկէ 3 ժամ հեռի Չէնկէլլիւ — պէզ ըսուած ձորն, ուրկէ 3 ժամ հեռի Եյնէ — բազար ըսուած խանը Բ. իջեւան։ Անկէ ալ 6 ժամէն Սըվազ։

Իսկ Սըվազէն Թօքաթ երթալու համար երեք տարբեր ճամբաներ կան. — Ա. ամառնային ճանապարհ՝ որ Սըվազէն 12 ժամ երթալով կ'իջնան Գարխըն գիւղը, ուրկէ ալ 9 ժամէն կը մտնան Թօքաթ։ Այս ճանապարհին մէջ Սըվազէն 3 ժամ հեռի՝ թէ որ ճամբէն խոտորելով 3 կամ 4 ժամ աջ կողմն երթաս, Աստղիկ կամ Եըլտըզ ըսուած լեռը դէմդ կ'ելլէ՝ որ հռչակաւոր եղած է իր քաղցրահամ և արծաթավտակ ջրերու հարուստ ակերովը. (Կըսուի որ հին կռապաշտ Թագաւորներն իրենց ապարանններն երբեմն այս լեռանը վրայ հաստատած էին. արդարև ալ 1866ին ամերիկացի ճանապարհորդներ հնութեան շատ մը նշաններ գտան անոր վրայ)։ Բ. միջին ճանապարհ՝ որ Սըվազէն 5 ժամ հեռի դէպ 'ի Գարայ — ճէօրէն գիւղը $3\frac{1}{2}$ ժամու չափ հեռի իջեւան կ'ընեն. անկէ Չամլը — Պէլ ըսուած անտառն՝ որուն մէջ պատուական ջուրերու շատ մը ակեր կան, ուրկէ օձապտոյտ ու նեղ ճամբաներու մէջէն երթալով կ'իջնան Պօլիս ըսուած գիւղը Բ. իջեւան. անկէ ալ 6 ժամէն կը մտնան 'ի Թօքաթ։ Գ. ձմեռնային ճանապարհ, $4\frac{1}{2}$ ժամու մէջ կ'երթան Եըլտըզ — խանը կոչուած փայտաշէն պանդոկն՝ որ շինուեցաւ 1854ին,

Աստղիկ գետին ութ կամարեայ հաստահեղոյս և կոփա-
ծոյ քարերով շինուած կամրջին մէկ կողմը, ուրկէ $^1/_4$ ժամ
հեռի ժայռի մը տակ կը գտնուի ահաւոր խորութեամբ
փապար կամ վիհ մը լի բորակային ու ծծմբային ջու-
րերէ բիւրեղացած և վերէն 'ի վայր կախուած սիւնե-
րով, ուրկէ երբեմն երբեմն որոտման ահագին ձայներ
կը լսուին, և որուն սաստիկ խորութեան ու մթութեան
պատճառաւ Չէհէննէմլի անունը տուած են։ Այս
վիհէն 100 քայլ հեռի կը գտնուին հանքային և
առողջարար ջուրերու տաք ջերմուկներ, որոնց մէջ
ամենէն մաքուրն ու օգտակարը Տէփէ — ջերմուկ ը-
սուած ջերմուկներն են՝ որ կը գտնուին Չէհէննէմլիէն քա-
ռորդ մը հեռի բարձրաւանդակի մը վրայ։ Երլորգ խա-
նէն ալ 5 ժամ հեռի գտնուած Չիֆլիկ — քէօյ ըսուած
հայաբնակ գիւղն իջեվան կընեն, ուրկէ 6 ժամէն կը
հասնին 'ի Թօքաթ։

Յունուարի 24 ուրբաթ առտու ժամ $^1/_2$ ին ճամբայ
ելանք Տէլիք — Թաշ երթալու համար 10 ժամ հեռի,
և նոյն օրը ժամը 12 ին մտանք ու գիշեր կեցանք.
Տէլիք — Թաշ՝ 110 տունով տաճկի գիւղ մ'է. ունի
մէկ մզկիթ Բէօղէօք — Օէլլէր անունով. բնակիչներն եր-
կրագործ են. բոլոր տանեաց վրայ յարդի կոյտեր
կան։

Յունուար 25 շաբաթ առտու ժամ $3^1/_2$ ճամբայ ե-
լանք Ալաճա խան երթալու համար 10 ժամ հեռի, և
նոյն օրը ժամ 10 ին հասանք ու գիշեր կեցանք։ Այս
գիւղը շինուած է ձորի մէջ 55 տունով, աղբիւսի պէս տեղ
մը, ունի մէկ Ճէօրէօն, մէկ իջեվան, որ կ'ըսուի Ալաճա—խան,
վասն զի ալաճա քարերով շինուած է. ասի ամրակառոյց մեծ
շէնք մ'է Սուլթան Մուրատէն նորոգած և կրնայ քանի

մը հարիւր ձի պարունակել։ Ջուրը լաւ, օդը բնակչաց անհոգութեամբը դէշցած, վասն զի փողոցները լի են ապականութեամբ. Բնակիչները երկաթագործ են և վայրենի. կանայք գլուխնին խոշոր կը կապեն, մեծ ու կլկլնաձայլ ֆէսեր կը դնեն և ընդհանրապէս ոտքերնին բոպիկ։

Յունուար 26 կիրակի առտու ժամ 3 1/2 ճամբայ ելանք Հասան — չէլէպի երթալու համար 7 ժամ հեռի, և նոյն օրը ժամ 8 1/2 ին մտանք ու գիշեր կեցանք։ Ձորի մէջ երկու լեռներու զառիվայրին վրայ շինուած Գէօզլիւ—ջէ գիւղ մ'է 45 տունով. որոնց մէջ 3 ալ հայու տուն կայ. տուներն ընդհանրապէս դետնափոր շինուած են, սանիսներնին հողու հաւասար։ Ունի 100 բնակիչ՝ որ ամառը դաշտը կ'ելնեն. կանայք չեն փախչիր. նամէհրամ չունին, մզկիթ չըկայ, երեք աղբիւր կայ, մէկ կամուրջ գիւղին մէջ, մէկ կամուրջ ալ Հէօլէօ — թէրէսի ըսուած տեղը՝ Կըզըլ — սույը — ըրմաղը ըսուած գետակին վրայ շինուած. այս ջուրը գիւղին մէջէն կ'անցնի և բաւական լաւ է, զոր գիւղացիք կը գործածեն. Օդը աղէկ է։ Այս գիւղը յառաջագոյն Լօգլօ — քէօյ կ'անուանէր. իսկ Սուլթան Մուրատ հոս մտնելէն ետքը Հասան — չէլէպի անունն առաւ։ Հոս քանի մը հիւանդ նայեցայ.

Յունուար 27 երկուշաբթի առտու ժամ 4 ճամբայ ելանք Հէքիմ — խան երթալու համար 4 ժամ հեռի. նոյն օրը ժամ 8 ին մտանք ու գիշեր կեցանք։

Ճամբուն վրայ աջ կողմը կինար Ջէրէն — սույը ըսուած գետակին՝ որուն եզերքէն անցանք.

Հէքիմ խան բարձր լեռան մը ստորոտը բլրակներու վրայ շինուած է, օդն առողջ, ջուրը գէշ։ Ունի 200

տուն քրդաց, 20 տուն հայոց, փոքր շուկայ մը. մէկ քարաշէն ամրակառոյց մզկիթ, իջեւան մը՝ Չէլէպի—խանը անուն, որ լքեալ ամայի իբր արտաքնոց կը գործածուէր։

Յունուար 28 երեքշաբթի առտու ժամ 2 ճամբայ ելանք Էշի—քէօյ երթալու համար 8 ժամ հեռի; և նոյն օրը ժամ 10 ին մտանք ու գիշեր կեցանք.

Հէքիմ—խանէն մինչև Էշի—քէօյ թէ՛ ճամբուն վրայ և թէ՛ կողմնակի տեսնուած գիւղերն իրենց հեռաւորութեան չափովը հետևեալներն են.

4 ժամ հեռի աջ կողմը Մօլլա—Եուսուֆ—օղլու քէօյ, 1/4 ժամ հեռի ճամբայէն։

4½ „ „ ձախ „ Քընըղխ—քէօյ, ½ ժամ հեռի ճամբայէն.

5 „ „ „ „ Քըշլա—քէօյ, ½ ժամ հեռի ճամբայէն.

6½ „ „ ճամբուն վրայ Եօքարը—Սըւլէնկի.

7 „ „ „ „ Աշաղը „

Հէքիմ—խանէն մինչև Էշի-քէօյ ճամբաները միշտ ել և էջ են, անանկ որ շարունակ լեռներ դառնալու է։

Էշի—քէօյ կամ Եուզուրլու—օղլի—քէօյի լեռան վրայ շինուած 120 տունով Դըզըլ-դաշ գիւղ մ'է, մէկ հայու տուն միայն կայ. ունի մէկ մզկիթ, մէկ աղբիւր, ջուրը լեռնէն կուգայ և բաւական աղէկ է. օդը աղէկ, բայց ամառը շատ տաք կ'ըլլայ և ջերմային հիւանդութիւն պակաս չէ։ Բերքերն են. ցորեն, գարի, բամբակ։ Գիւղէն քառորդ մը հեռի Նէյկերլի ըսուած տեղին վրայ է գերեզմանատունը։ Գիւղէն կէս ժամ հեռի գետակ մը կայ Ինէճէ անուն՝ որ Եփրատ կը վազէ, այս գետակին եզերքը բոլոր արտեր են, ուր ոչխարներ և ուրիշ կենդանիներ կարածին։

Յունուար 29 չորեքշաբթի առտու ժամ 3 ճամբայ ելանք Կիւմիւշ — Մատէն երթալու համար 9 ժամ՝ հեռի. և նոյն օրը ժամ 11 ին մտանք ու գիշեր կեցանք։ Էշի — քէօյէն մինչև Կիւմիւշ — Մատէն ճամբուն վրայ և թէ՛ կողմնակի կը գտնուին.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 2 | ժամ հեռի | ճամբուն վրայ | | | Սէօյիւտլիւ չայ (գետակ մը) |
| 2 | ” | ” | աջ կողմը | | Մուլթմուր |
| 4 | ” | ” | ” | ” | Տէրէկէզէր |
| 5 | ” | ” | ձախ | ” | Բէրէլի |
| 5 ½ | ” | ” | ” | ” | Մէհմէտ ուշաղը |
| 7 | ” | ” | ” | ” | Սարաճըլը |
| 7 ¼ | ” | ” | ” | ” | Տէնիզլի։ |

9 ” ” ճամբուն վրայ Մուրատ չայ (1) ձորի մէջ, որուն աջ եզրն ելանք միգապատ լեռներն 'ի վար իջնալով. գետին միւս կողմի լեռանը վրայ կ'երևայ Կիւմիւշ — Մատէն գիւղաքաղաքը. Հոս գետը նեղ ու բաւական խոր է, երկու եզերքին վրայ լեռներ կը բարձրանան՝ որ հինատեն ները Անդէրդարա կը կոչուէին։ Այս գետին վրայէն տեսակ մը մեծ ու տափակայարկ նաւերով դիմաց անցանք ու Մատէն ելանք։

## ԿԻՒՄԻՒՇ-ՄԱՏԷՆ (ԿԱՊԱՆ)

Եփրատի ձախ եզրը լեռան վրայ 750 տունով գիւղաքաղաք մ'է. ունի 200 տուն տաճիկ, 380 տուն Հայ, 170 տուն յոյն, ընդ ամենը 7000 բնակիչ և ըստ մեծի մասին հանքահան։ 2 մզկիթ, մէկը քարաշէն անուանեալ Եուսուֆ Զիա Փաշայ Ճամիճ. միւսը փայտաշէն

(1) Գրքիս վերջը պիտի նկարագրեմ այս գետը զատ յօդուածով մը։

է ։ 2 Հայոց և 2 ալյունաց քարաշէն եկեղեցիներ կան։ 2 բաղնիք, 4 հացագործի փուռ, 100 խանութով շուկայ մը. և Պօլսոյ նման դերեզմանատուներ։ Օդը շատ լաւ չէ և ջերմ շատ կայ. ձմեռը միշտ միգապատ է, ամառը շատ տաք. Ջուրը Եփրատ գետինն է ։ Եփրատը կը սառի ձմեռն և ոտքով կ՚անցնուի վրայէն Քաղաքացիք կը պահեն այս սառն՝ ամառը գործածելու համար ։ Եփրատին երկու եզերքի լեռներուն վրայ, մանաւանդ գիւղաքաղաքին լեռան վրայ, հանքահանները այրեր ու գուբեր փորած են արծաթ ու երկաթ հանելու համար, մէկ կողմէն ալ բնակիչներու բազմութիւն ամեն օր աւելի փորելու վրայ էին ։ Այս լեռներուն մէջ գտնուած արծաթի ու երկաթի բովերուն համար գիւղաքաղաքն ալ Մադէն անուանած է. Հիմա այս հանքերէն քիչ բան կ՚ելնէ, վասն զի առաջներն այս կողմերն անհատնում անտառներ կային, բայց շռայլաբար ու անկանոնաբար կտրելով և ետեւէ ետեւ նորերը չը տնկելով սպառած են. ուստի հանք հանելու համար պէտք եղած փայտն ու ածուխը հեռուներէն բերել կը պարտաւորին ։ Ասկէ 'ի զատ հանքահաններն անհմուտ մարդիկ ըլլալով՝ հանքաբանական կանոնաց համեմատ չեն աշխատիր ։ Քաղաքէն քառորդ մը հեռի Տէյիրմէն տէրէ անուանեալ տեղին վրայ արծաթի [illegible] մը կայ, որ տարին 200 կամ 300 հոխայ արծաթ կը զտէր։

Քաղաքն իր սահմաններովը լեռնային ըլլալով՝ արտ ու պարտէզները քիչ են. ուստի պտուղները հազուագիւտ են և միայն կանանչեղէններ՝ դոնլըքա, բողտանոփ, պասմա բաւական կըլլան ։ Ցորենն ու ուրիշ ասոր նման բաները գիւղերէն կը բերեն, մանաւանդ Խարբերդէն, և միրգը՝ Արապկերէն ։

Ցունուար 30 հինգշաբթի առաւօտ ժամ 2½ ճամբայ

ելանք Խարբերդ երթալու համար 10 ժամ հեռի, և նոյն օրը ժամ 11 ին մտանք։ Ճամբան ժամ մը շարունակ քարաշէն էր։ Մինչեւ Խարբերդ քանի մը գիւղեր կան, որոնցմէ մէկն է Խուլա Հայոց գիւղն՝ որ Մատենէն 8 ժամ հեռի ճամբուն վրայ է, ուր կը գտնուի Ս. Գէորգայ մենաստանն՝ որ կը կոչուի նաեւ Խօուլու կամ Խօուլի ճանէ։

## ԽԱՐԲԵՐԴ ՆԱՀԱՆԳ (1)։

Այս նահանգը լեռներով շրջապատեալ լայնածաւալ դաշտավայր մ'է Խարբերդ Օվա անուն, 'ի հնումն Մեծ Հայոց աշխարհին Հանձիթ գաւառն էր։ Եփրատ գետին Պայազիտէն ելած ճիւղն՝ որ Որեւելեան Եփրատ կամ Մուրատ կըսուի՝ նահանգին մէջէն անցնելով կ'երթայ կը խառնուի Արեւմտեան Եփրատ կամ Ֆրատ ըսուած ճիւղին հետ։ Նահանգին լեռներուն վրայ մարած հրաբուղխի հետքեր կան, տեղ տեղ ալ երկաթի, պղնձի ու արծաթի հանքերու նշաններ։

Խարբերդի ընդարձակ դաշտին մէջ Մուրատ գետէն զատ վտակ չը գտնուելուն պատճառաւ, գետէն հեռի կողմերուն մէջ առատ ջուր չիգկայ. ցորեն, որիզ, բամպակ, շուշմայ, գարի, բակլայ, ոսպ, մանաւանդ կտաւատ առատ են. բաւական մրգեղէններ, ընդեղէններ ու խոտեղէններ ալ կ'ըլլան, կը բուսնի նաեւ շանաճանճի (կէնէ օթու կամ կէնէ կէրկէր) տունկը, (ricinus communis) որուն սերմէն իւղ մը կելնէ հինտ եաղը ըսուած (huile de ricin) որ կը գործուի վառելու և լուծողական դեղ մ'է։

(1) Այս մօտերս այս նահանգին անունը փոխուելով Մամուրէթ-իւլ-ազիզ ըսուեցաւ։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Բէրջէնջ | $1\frac{1}{2}$ | ժամ | հեռի | Խարբերդ | քաղաքէն ։ |
| Հապուսի | 5 | „ | „ | „ | „ |
| Զարդարիչ | 5 | „ | „ | „ | „ |

## ԽԱՐԲԵՐԴ

Լեռան վրայ շինուած բերդաւոր քաղաք մ' է 6000 տունով, որոնց 4200 ը տաճկի, 1440 ը Հայոց, 360 ալ Ասորւոց, Յունաց ու Հռովմէական եւ բողոքական հայոց ։

Բերդը՝ քաղաքին արեւելեան կողմն է, որուն մէջ տուներ ալ կան ։

Տուները միայարկ ու կրկնայարկ են և աղիւսակերտ ։ Ճանիքները հողամած, փողոցները նեղ, անկանոն և քարայատակ ․ Մէզէի կողմէն քաղաքը մտնալու համար լայն պողոտայ մը կայ ․ բայց քարայատակ չէ ։ Ունի 10 մզկիթ, 5 եկեղեցի Հայոց և ասորւոց, դպրոցներ, 4 բաղնիք, 10ի չափ խան, որոնց 2 ը միայն քարաշէն է, միւսները աղիւսակերտ ․ Գէշէօղլէն մը, հրապարակ մը Եօղուր-Ճէյամին կամ Ուլուճամի անուն, ուր կը ծախեն բամպակ, ցորեն և այլն ․ փայտաշէն շուկայ մը, ուր կը գտնուին դերձակ, կօշկակար, ներկարար, ոսկերիչ, միգավաճառ, սեղանաւոր, չէշմէ, Եաղմուր-Հաճի-Եէսի, ևլն ։ 6 կամ 7 աղբիւր այլ և այլ թաղերու մէջ ․ ասոնց ջուրը շատ լաւ չէ ․ օդը առողջ է, ձմեռը սաստիկ ցուրտ կըլլայ ։ Բնակիչներն անկիրթ են, կանայք ընդհանրապէս լկտի, գլուխնին Տըրապիզոնի լաչակով ծածկեալ ։

Աշաղը մէզէրէ դաշտին մէջ գիւղ մ' է Խարբերդէն 1 ամ հեռի, ուր կեցանք մինչեւ փետրուար 4 երկուշաբթի ։ Հոս կը նստին նահանգին կուսակալն ու բանակին սպարապետը ։ Ունի 600 տուն բնակիչ, որուն 500ը այոց և 100 ը տաճկաց ։ Հոս քանի մը տուն հռովմէ-

Այս նահանգը զուրկ է անտառէ ։

Խարբերդի դաշտն երկուքի կը բաժնուի․ Ուլ—Օվա և Քուզ—Օվա, որոնց առաջինը մեծ ու ընդարձակ է և ջրոտ, Մէզէրէի հարաւային կողմը․ երկրորդը՝ չոր և ո՛չ այնչափ ընդարձակ, Մէզէրէի հիւսիսակողմը․

Ունի 600,000 էն աւելի բնակիչ, տաճիկ ու Հայ, որոնք ընդհանրապէս անկիրթ են ։ Կը գտնուի նաեւ յոյն և ասորի․

Խարբերդ կը բաժնուի 7 խազաներու ։

1 Նէֆսի Խարբուդ
2 Մալաթիա
3 Արապկեր
4 Չըմըշկէզէք
5 Էկին
6 Շիրօ
7 Աղճատաղ } ապստամբ քրթաց բնակութիւն ։

Նէֆսի Խարբուդ ալ 5 նահիէյի բաժնուած է․

1 Հէրտի
2 Պէրամաս
3 Ալօշլու
4 Բէրդիքեան
5 Զիյվէ

Խարբերդի դաշտերուն մէջ 366 ի չափ գիւղեր կան՝ որոնց գլխաւորներն են․

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Հողի | 2 | ժամ | հեռի | Խարբերդ | քաղաքէն ։ |
| Փիւնկ | 5 | ,, | ,, | ,, | ,, |
| Երդմնիկ | 3 | ,, | ,, | ,, | ,, |
| Սօքարըր—խօխ | 5 | ,, | ,, | ,, | ,, |
| Աշաղը — ,, | 5 | ,, | ,, | ,, | ,, |
| Աշաղը—Մէզէրէ, կամ Աղավատ Մէզէրէսի | 1 | ,, | ,, | ,, | ,, |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Բէրջէնջ | $1\frac{1}{2}$ ժամ | հեռի | Խարբերդ | քաղաքէն ։ | |
| Հապուսի | 5 | » | » | » | » |
| Զարդարիչ | 5 | » | » | » | » |

# ԽԱՐԲԵՐԴ

Լեռան վրայ շինուած բերդաւոր քաղաք մ’ է 6000 տունով, որոնց 4200 ը տաճկի, 1440 ը Հայոց, 360 ալ Ասորւոց, Յունաց ու Հռովմէական եւ բողոքական հայոց ։

Բերդը՝ քաղաքին արեւելեան կողմն է, որուն մէջ տուներ ալ կան ։

Տուները միայարկ ու կրկնայարկ են և աղիւսակերտ ։ Տանիքները հողամած, փողոցները նեղ, անկանոն և քարայատակ ․ Մէզէի կողմէն քաղաքը մտնալու համար լայն պողոտայ մը կայ ․ բայց քարայատակ չէ ։ Ունի 10 մզկիթ, 5 եկեղեցի Հայոց և Ասորւոց, դպրոցներ, 4 բաղնիք, 10ի չափ խան, որոնց 2 ը միայն քարաշէն է, միւսները աղիւսակերտ ․ Պէզէսթէն մը, հրապարակ մը Քօշք-Մէյտանը կամ լօրաաա անուն, ուր կը ծախեն բամպակ, ցորեն և այլն ։ փայտաշէն շուկայ մը, ուր կը գտնուին դերձակ, կօշկակար, ներկարար, ոսկերիչ, մրգավաճառ, սեղանաւոր, դէրզօղ, Բօղաթհաննէֆի, ևլն ։ 6 կամ 7 աղբիւր այլ և այլ թաղերու մէջ ․ ասոնց ջուրը շատ լաւ չէ ․ օդը առողջ է, ձմեռը սաստիկ ցուրտ կըլլայ ։ Բնակիչներն անկիրթ են, կանայք ընդհանրապէս լկտի, գլուխնին Տրապիզոնի լաչակով ծածկեալ ։

Աշաղը Մէզիրէ դաշտին մէջ գիւղ մ’ է Խարբերդէն 1 ժամ հեռի, ուր կեցանք մինչեւ փետրուար 4 երկուշաբթի ։ Հոս կը նստին նահանգին կուսակալն ու բանակին սպարապետը ։ Ունի 600 տուն բնակիչ, որուն 500ը Հայոց և 100 ը տաճկաց ։ Հոս քանի մը տուն Հռովմէ-

ական հայեր ալ կան։ 2 ճամի աղիւսակերտ և մէկ ալ նոր քարաշէն, 1 հիւանդանոց աղիւսակերտ, 1 փոքրիկ շուկայ, 4 բաղնիք, 2 եկեղեցի Հայոց, 1 եկեղեցի Հռովմէականաց. 1 ժողովարան բռօթէսթան Հայոց, 2 դպրոց, 1 նորաշէն իջեվան Ընճիլլի խան անունով։ 1 ճէպ֊հանէ աղիւսակերտ և 1 զինուորանոց Հէօքէնլի անուն գիւղին մէջ՝ որ մէկ քառորդ հեռի է Մէզիրէէն։ 2 աղբիւր, որոնց ջուրը լեռնէն կուգայ, հորեր։ Ջուրը լաւ է, օդն առողջ։ Հոս շատ հիւանդներ դարմանեցի և 250 ի չափ ալ պատուաստ ըրի։

Փետրուար 4 ժամ 3 ճամբայ ելանք Քէզլին երթալու համար 6 ժամ հեռի, և ժամ 9 ին մտանք՝ Կէօլճիւք կէօլի անուանեալ լիճը անցնելնուս կէս ժամ անդին, և գիշեր կեցանք։

Քէզլին՝ ձորի մէջ 60 տունով քրդաց գիւղ մ'է ծառերով զարդարուած, մեծ մասը թթենի. ունի մէկ հողաշէն փոքրիկ մզկիթ մ' և մէկ ալ փոքրիկ բաղնիք. բաւական անուշ ջուր մը։ Այս գիւղը ձորի մէջ շինուած ըլլալուն՝ ամառը սաստիկ տաք կ'ըլլայ։ Բնակիչներն երկրագործ են և խիստ աղքատ։ Գիւղը ճամբուն վրայ ըլլալուն՝ գիւղացիք ուրիշ քրդերու պէս ամառ ժամանակ դաշտերը չեն ելներ, միշտ գիւղին մէջ կը մնան՝ եկող գացող ճամբորդներէն օգուտ քաղելու համար։ Քէզլին՝ կէս ժամու չափ հեռի է Կէօլճիւք ըսուած լիճէն. այս լիճը՝ որ Ծովակ կամ Լճակ Խարբերդի կըսուի և հին ատեն Ծովք կը կոչուէր, կը գտնուի երկու երկայնանիստ ապառաժուտ լեռներու մէջ, որ 'ի հնումն կը կոչուէին Ծովուց լերինք։

Այս լիճն ունի 3 1/2 ժամ երկայնութիւն և 1 ժամու չափ լայնութիւն։ Ջուրն աղի է և պայծառ, յատակը քարոտ և աւազուտ. մէջը կը գտնուին [illegible] անունով

տեսակ մ'առւատ մանր ձուկեր, որ իրենց համովն ու մեծութեամբը Կէմէշ-գուլէշ ըսուած ձկան կը նմանին.

Փետրուար 5 երեքշաբթի ժամ 3 ճամբայ ելանք Պաքըր—Մատէն երթալու համար 6 ժամ հեռի, և նոյն օրը ժամ 9ին մտանք ու գիշեր կեցանք։

Քէզլինէն մինչեւ Պաքըր—Մատէն՝ ժամբան 3 խան կայ։ Այս ճամբուն վրայ կը գտնուի Մէհրամ—տաղը (1) ըսուած բարձր լեռը. այս լեռն անցնելու համար մէկ ու կէս ժամ պէտք է, վասն զի ճամբան անհարթ ու առապար է, մանաւանդ լեռան կէս մէջքերուն վրայ, ուր անցնելու ճամբան հազիւ կէս կանգունի չափ լայնութիւն ունի և ծուռ ու ապառաժուտ է։ Ձմեռ ժամանակ լեռան այս նեղ ճամբան բոլորովին կը գոցուի ձիւնով և հետք ալ չը մնար և անցնելը խիստ դժուարին. մանաւանդ ձիւնախառն փոթորկի ժամանակ միշտ վըտանգաւոր է, վասն զի ճանապարհորդը տեղացող ձիւնին սաստիկ բախումէն չը կրնար աչքերը բաց բռնել և խափանեալ ճանապարհին հետքը որոշել. և մէկ կողմէն ալ հովին ուժգնութեանը չը կրնալով դիմադրել, կը շփոթի ու ճարը հատած կը գլտորի պարսպի պէս բարձրացած այս լեռան վրայէն մինչև ստորոտը. ետեւէն ալ կ'իջնէ կը հասնի լեռան ինքնաբեկ ապառաժը, որ իբրեւ տապան անանուն կը ծածկէ մշտնջենաւորապէս թշուառ ճանապարհորդին ոսկորները։ Շատ ճանապարհորդներ նմանօրինակ ճակատագիր կրած են այս լեռան ստորոտն, ուստի շատ անգամ ճանապարհորդները կը պարտաւորին օրերով սպասելու լեռան մէկ կողմը, մինչեւ օդը հանդարտի, որով կարող ըլլան

(1) Այս լեռն Աղձնեաց լեռներուն մէկն է։

անվնաս անկէ անցնելու ։ Բայց ես միայնակ Թաւալեցի յանդգէտս այս դժուարուղի լեռն ասանկ ձիւնաբեր ու փոթորկալից ժամանակ մը. և օր մը սպասեցի Պաքըր—Մատէն գիւղին մէջ ուղեկիցներուս գալստեանը ։

Պաքըր—Մատէն կամ Արղանա—Մատէն՝ հանդիպակաց լեռներուն վրայ շինուած գիւղ մ'է, որուն տուները այս իրարու դէմ ցցուած լեռներուն գագաթէն մինչեւ ստորոտը, այսինքն, մինչեւ ձորը շինուած են, ուրկէ կ'անցնի ջուր մը ։ Ունի 800 տուն, որոնց 200 ը տաճիկ, 200 ը հայու և 400 ալ յունաց են. իւրաքանչիւր ազգաց թաղերը զատ են. կը գտնուին խառն տուներ ալ ։ Ունի 3 մզկիթ, 1 Հայոց և 1 ալ յունաց եկեղեցիներ, 3 բաղնիք, 1 շուկայ. կան արտեր ու պարտէզներ ։ Օդն աղէկ չէ. ամառը սաստիկ տաք կ'ընէ. Ջուրն ալ աղէկ չէ, բայց Տիգրիս (1) գետին ջուրը կը գործածեն, որ գիւղին արեւելեան կողմէն կ'անցնի, ուր 10 կամ 15 կանգուն լայնութիւն ունի և ձուկեր ալ կը պարունակէ. Բնակիչները բ..ւական կրթուած են. ասոնց շատը հեռաւոր քաղ..քներէ հոս փոխադրուած են և առհասարակ հանք հանելու կը պարապին ։ Թէ՛ գիւղին և թէ՛ շրջակայ լեռներուն մէջ առատ պղնձի հանք ըլլալուն՝ լեռներուն վրայ շատ տեղ այրեր ու գուբեր փորած են, մանաւանդ Մ-ղ-ր- գիւղին լեռան վրայ. Գիւղին ամեն թաղերուն մէջ խոշոր խոշոր պղնձախառն հանքային քարեր ձգուած են, որ շատ մը պատերու ու փողոցներու մէջ ալ գործածուած են ։ Այս հանքը շատ հարուստ է. տարին մինչեւ 2,000,000 հոխայ պղինձ կելնէ, որուն մէկ հոխային գինը՝ 12 ղու-

(1) Գրքիս վերջը պիտի նկարագրեմ այս գետը զատ յօդուածով մը ։

*րուշի կըլլայ տէրութեան ։ Այս ամեն հանքատ լեռներն՝ որ երբեմն երկնաբերձ ծառերով անտառացեալ էին, այսօր չոր ու լերկ ապառաժուտներ են․ վասն զի դարերէ ՚ի վեր հանքահանները հանած պղինձներն զտելու համար՝ հալեցնելու կրակի տեղ զանոնք անխընայ կտրտած ու վառած են, առանց անոնց տեղ նոր ծառեր տնկելու ։*

*Գիւղէն մէկ քառորդ հեռի դէպ ՚ի Արղընի երթալու ճամբուն վրայ Տիգրիս գետին եզրը՝ ճարտարաձեւ քարաշէն նոր գործարան մը կայ պղինձ հալեցնելու (փոլհանէ) ։*

*փետրուար 6 չորեքշաբթի առտու ժամ 5, ճամբայ ելանք Արղընի երթալու համար 4 ժամ հեռի, եւ նոյն օրն ժամ 9 ին մտանք ու գիշեր կեցանք ։*

## ԱՐՂԸՆԱ ԿԱՄ ԱՐՂԸՆԻ ԿԱՄ ԱՐԿԸՆԻ

*Երկճեղ բարձր լեռան մը մէկ երեսին վրայ շինուած գիւղաքաղաք մ՚է․ ունի իբր 600 տուն, որոնց 400 ը տաճկաց է և 200 ը հայոց ։ Այս քաղաքը 3 թաղերու կը բաժնուի․ վերին, միջին և ստորին ։ Ունի 5 մզկիթ, 2 եկեղեցի, մէկը վերին թաղին մէջ և միւսը միջիններին մէջ, 1 բաղնիք ։ Օդը քաջառողջ է և ջուրը սպառուականադոյն, որ կուգայ Աքէ — սուը ըսուած լեռնէն ։ Լեռանը ներքեւէն, այսինքն, հիւսիսային կողմէն կանցնի Տիգրիսի մէկ վտակը Պօղէն — սույը ըսուած ։*

*Այս լեռան երկճեղ գագաթներուն մէկուն վրայ կը գտնուի Բարձրահայեաց Աստուածածնայ վանքը, և ...ս գլխուն վրայ ալ զօրաւոր բերդ մը հին աւերէ...ուած, որուն մէջ տաճկի տուներ կան 30 ի չափ․ Մէկ ալ ուխտատեղի շէյխլէր թօփէ Բէյլէրդէրէն գերեզ-...մը ․*

Թէ՛ լեռանը ստորոտն և թէ՛ Արղանա բոլոր գիւղը բազմաթիւ այգիներով, արտերով ու պարտէզներով զարդարուած են : Բերքերն են ցորեն, գարի և ամէն տեսակ բանջարեղէններ. մրգեր, մանաւանդ խաղող. որուն մէկ ողկոյզը մէկ երկու հոխայ խաղող կուտայ. ասոր գինին առատ, սև ու ընտիր է, զոր կաւակերտ անօթներու մէջ լեցուցած կը ղրկեն շրջակայ քաղաքները : Այս կողմերուն մէջ բամպակ ալ կը մշակեն : Այս գիւղաքաղաքիս լեռները պղնձի, արծաթի և ոսկւոյ հանքեր կը պարունակեն :

Փետրուար 7 հինգշաբթի առաւու ժամ 2 ճամբայ ելանք Տիարպէքիր երթալու համար, 12 ժամ հեռի :

Նոյն օրը Տիարպէքիրի կուսակալը, քաղաքացիք և զինուորական դասը նուագարանով դիմաւորեցին մեզ, և մեծ հանդէսով մտանք քաղաքը ժամ 11 ին :

Արղընէն մինչև Տիարպէքիր՝ ճամբան շարունակ դաշտային է. բնաւ լեռ չըկայ. Արղընէն մէկ քառորդ ժամ հեռի ճամբուն աջ կողմը Պըկըրաչը անուն գիւղը կայ : 8 ժամ հեռի դարձեալ ճամբուն վրայ գետ մը կայ Տէվէ — կէչիտի — սույը անունով, որուն վրայէն անցանք : Այս գետէն ճիշդ 4 ժամ անդին էր Տիարպէքիր քաղաքը :

## ՏԻԱՐՊԷՔԻՐ (1) :

Այս անունով նահանգին մայրաքաղաքն է, որ կը-

(1) Այս բառն Տիյար–Պէքիր ըսել է. վասն զի՝ նախ Պէքիր անուն մէկը զանի տիրապետած է : Նաև կը նշանակէ Տիյար-Կոյ. վասն զի Օսմանցւոց անցնելէն 'ի վեր օտարի ձեռք անցած չըլլալով՝ որպէս թէ կոյս մնացած է :

սուի նաև Ըմիթ կամ Գարա — ամիթ ։ Աշխարհագրական լայնութիւնն է 37°55' և երկայնութիւնը 37 31'։ Ի հնումն կըսուէր Տիգրանակերտ, վասն զի Հայոց Ա Տիգրան թագաւորը շինած է, որ և Մեծ Հայոց Աղձնիք նահանգին գլխաւոր քաղաքն էր։ Այս քաղաքը պարսպապատ է և բերդաւոր, և Տիգրիս գետին ձախակողմը մէկ քառորդ հեռի լայնանիստ քարակտուր բարձրաւանդակ տեղի մը վրայ շինուած. Պաղտատէն ճիշդ 625,000 մէթրօ հեռի և անոր արևմտեան հիւսիսային կողմը։ Այս բարձրաւանդակ տեղին նիւթը մարած հրախուղխի լաւա է։ Քաղաքին շրջապատը 1 ½ ժամ կը տևէ, որուն արևելեան կողմը գետեզրէն պատի պէս բարձրացած զառ 'ի վերի մը գագաթն է։ Պարիսպը խիստ բարձր է և ստուար մինչև 10 կանգուն, խոշոր, սև և սպնգանման քառակուսի քարերով շինուած, որոնք գուցէ այն մարած հրաբղխային լեռան քարերն եղած ըլլան։ Ունի 72 բարձր ու մեծ աշտարակներ, որոնց 12 ը աւելի մեծ են. այս աշտարակները կրկնայարկ են և ունին քարաշէն կամարներ։ Պարսպին վրայ տեղ տեղ երկու գլխով և երկու պոչակով արծիւներ քանդակուած են. կան նաև նշանագըրեր եռանկիւնաձև և Քիւֆի գրեր։ Ունի 4 դուռ. Մէրտին գաբուսու, հարաւակողմը. Ռում գաբուսու, արևմըտեան կողմը. Տաղ կամ Խարբերդ գաբուսու, հիւսիսակողմը. Եէնի գաբու կամ Շաթ գաբուսու, արևելեան կողմը։ Բերդը՝ քաղաքին արևելեան հիւսիսային կողմն՝ Եէնի գաբուին ու Տաղ գաբուին մէջ տեղն է. ունի 4 դուռ, որոնց երկուքը քաղաքէն դուրս կը բացուին և կըսուին Օղլան գաբուսի և Ֆէրահ գաբուսի, զորս միշտ փակեալ կը պահեն և միայն պէտք եղած ատեն կը բանան։ Միւս երկու դուռներն ալ քաղաքին մէջ կը բացուին և կըսուին Աշաղըի գալէ գաբուսու և Եուգարըի գալէ գաբուսու։

բերդին մէջ կան Ալթուն սէրայը՝ որ է փաշային դուռը կամ պալատը․ Սուլթան սէրայը՝ որ է փաշային կանանց բնակարանը (հաւէզ)․ փաշային պալատը (ֆէսգիյէ), և պէյրան թալէսի, որ բլուր մ՚է, ուրկէ հանդիսաւոր օրեր թնդանօթ կը նետեն։ Այս վերջինը քաղաքին հին բերդն է քայքայեալ․ ասոր աւերակներուն մէջ մինչև ցարդ կը տեսնուին հնաշէն եկեղեցւոյ մը խորաններուն տեղերը։ Բերդին մէջ կան նաև տաճկաց և հայոց տուներ, մզկիթ, հրապարակներ, բաղնիքներ և այլն։

Պատմութիւնը չը յայտնէր այս քաղաքին հնութեան ճիշդ ժամանակը, ըստ ոմանց Տիգրան թագաւորին դաստակերտն է, և քանի մ՚ անգամ փլած է․ իր վերջին նորոգութիւնը Վաղենտինանոսներուն ժամանակէն ՚ի վեր է։ Այս քաղաքը զանազան տէրութեանց ձեռք անցնելէն ետքը՝ 938 ին անցաւ տաճկաց ձեռքն, որ և մինչև ցարդ կը տիրեն։

Օդը բաւական աղէկ է․ աշնան ժամանակ տենդ կը տիրէ։ Քաղաքին ջրհորներուն ջուրը խմելու յարմար չէ․ ուստի հիները դրսէն քաղաքին մէջ ջրեր բերել տուած են, որք են․

Ա․ Համբրլաթ սուլը, որ միւսներէն պատուական է և ամենէն աւելի կը գործածուի․

Բ․ փայաս սուլը, բաւական աղէկ է և քաղաքէն կէս ժամ հեռի Ալի փունար գիւղէն գալով մզկիթներու և բաղնիքներու բաժնուած է։

Գ․ Քալէ սուլը, չը խմուիր և ուրիշ պիտոյից համար կը գործածուի, բաղնիք և այլն։ Այս ջուրը բերդին մէջէն է, անյայտ ճամբով մը կուգայ և Օղուր քարուսին տակէն դուրս ելնելով մէկ քանի ջրաղացներ կը դարձունէ․

Դ․ Պալըքլը սուլը, ասոր ալ ճամբան անյայտ է․

այս ջուրը յատուկ աւազաններու մէջ կը հաւաքուի, ուրկէ առնելով կը գործածեն ներկարարները, լաթ լուացողներն և ուրիշներն իրենց զանազան պիտոյից համար։ Այս աւազաններէն դուրս թափելով առու մը կը ձեւանայ, և Սալըխանէէն ու Թաղախխանայէն անցնելով քաղաքին մէջի ու դրսի ջրաղացները կը դարձընէ։ Բայց այս ամեն ջրերէն պատուականագոյնն ու անուշը Տիգրիս գետին ջուրն է, զոր քաղաքին մեծամեծները բերել կուտան խմելու և կերակուրներու համար։

Տիարպէքիր կը պարունակէ 5700 ի չափ տուն և 35,000 ի չափ բնակիչ, որոնց՝
3000 տուն և 16000 բնակիչը Թուրք(1) և քուրդ են(2).

(1) Թուրքերը հին Սկիւթացիներն ու Պարթեւներն են, որ հիմա Թուրք, Թաթար, Թիւրքմէն, Իւզպէկ եւ կամ Տաճիկ կը զրուցուին։

(2) Քուրդ կամ Քիւրտ անունն՝ որ 'ի հնումն Մարք կը-սուէր, կերեւայ որ Կորդուք կամ Կորդ հին հայկական ա-նունէն յառաջ եկած է։ Քրդաց ազգը երկուքի կը բաժնուի. վրանաբնակ (չէօլէր Էվլէ) եւ գիւղաբնակ։ Վրանաբնակներն ի-րենց ցեղերուն անունովը կը զրուցուին, զոր օրինակ. Ռըշ-վանցիք, Միլանցի, Մանըքեցի (մօմինանեան ցեղէն), Մէնտէքշի (մանդակունեաց ցեղէն) եւլն. եւլն։ Գիւղաբնակներուն ա-նունները սովորաբար բնակած քաղաքներնուն առած են, զոր օրինակ, Խնուսցի, Մշեցի, Բաղէշցի եւլն. կամ իրենց-մէ շինուած ու ճանչցուած նահանգին անունէն, զոր օրի-նակ. Սըլիվանցիք կըսուին Սըլիվանի նահանգը բնակողները (Պայազիտի փաշայութեան սահմանին՝ Սըլիվան կըսեն քուր-դերը)։ Նոյնպէս ալ Բոշկանցիք կըսուին Բոշկան բնակողները Եղիշոյ խանին սահմանին, ուր կը գտնուին Բաղէշ, Մուշ, տուն եւլն, Բոշկան կըսեն)։ Կ'ենթադրուի նաեւ թէ Սըլիվանցիները Սըլկունեաց ցեղէն եւ Բոշկանցիները Ռըշ-նեաց ցեղէն սերեալ են. կրօնիւք մահմէտական են եւ

1500 տուն և 12000 բնակիչ հայ․
1200 » » 7000 » խառն ազգեր՝ Յոյն , Քիլտանի(1) եւ Նաստուրի , Եագուպի(2) , Հրեայ եւ Արաբացի ։

Կար 3500 զինուոր , որոնց 3000ը հետեւակ էր և 500ը հեծելազօր․ յատուկ զինուորանոց չըլլալուն համար՝ զինուորները 5 մեծ իջեւաններու մէջ բաժնուած էին ։ Քաղաքին տուներն ընդհանրապէս քարաշէն են գետնէն մինչև կէսը Լ․ե․ քարերով․ կէսէն ալ մինչև առաստաղը աղիւսէ շինուած , ներսէն և դրսէն յարդախառն կաւով ծեփուած․ բայց հարուստներու տուներուն ներսի դին ճերմակ ծեփով ծեփուած , տանիքներն ալ յարդախառն կաւով շինուած են , զոր ամեն տարի կը նորոգեն ձմեռուան ձիւնն ու անձրեւները ներս չըլվազելու համար ։ Տուները քարաշէն ըլլալուն պատճա-

Նաֆի ։ Երկու լեզու ունին , մէկը բնիկ քրդաց լեզուն՝ որ զանազան լեզուներէ խառնուրդ մ՚է եւ մանաւանդ պարսկերենէն․ միւսը Զազա ըսուած լեզուն , որ առաջինէն բոլորովին տարբեր է․ այս լեզուն քանի մը քաղաքներու քուրդերը միայն կը խօսին , թէպէտ եւ առաջին լեզուն ալ գիտեն ։

(1) Քիլտանի եւ Նաստուրի մի եւ նոյն ազգ են կրօնքով բաժնուած․ ասոնք հին Քաղդէացիներ կամ Ասորեստանցիներն են ։ Նաստուրիները՝ Նեստորական են․ Քիլտանիները Հռովմէական ։ Նաստուրիներուն պատրիարքը Մուսուլի Ցալգօզ քաղաքը կը նստի , եւ Քիլտանիներուն պատրիարքը՝ Տիարպէքիր ։

(2) Եագուպիներն՝ ազգաւ նախնի Ասորիներն են , որ իրենց կրօնքովը Եագուպի կամ Յակոբեան կըսուին , եւ շատ անգամ ալ իրենց ազգին անունովը Սուրեանի կըսուին , որ ըսել է Ասորի․ ասոնց ալ պատրիարքը Մէրտին կը նստի ։

·ռաւ ամառը շատ տաք կըլլայ բնակարաններուն մէջ· քաղաքը՝ ունի 16 մեծ մզկիթ և 20 մէսճիտ· ասոնց գլխաւորն է Ուլու ճամի ըսուածը՝ որ յառաջագոյն յունաց եկեղեցի էր Ս. Աստուածածնի անունով. նոյնպէս Գուրշունլու ճամի ըսուածը՝ որ հայոց եկեղեցի էր Ս. Թէոդորոս անուն։ Երկու եկեղեցի հայոց Ս. Սարգիս և Ս. Կիրակոս· 1 յունաց և 1 ալ քիլտացւոց եկեղեցիներ։ Նախակրթական դպրոցներ իւրաքանչիւր ազգաց։ Մեծ հրապարակներ՝ որք են· Բուլանճըլար, Պօղազեայ ղուղուը, Սէֆահէ ղուղուը· ասոնցմէ մեծ է Իւէնչ ղուղուը ըսուած հրապարակն՝ ուր կան կօշկավաճառներ և կտաւագործներու կրպակներ· այս հրապարակը Եէնի քարուի մօտ է։ Պուղտայ պազարին մէջ Չիֆտէ լանին քով կը գտնուի ստորերկրեայ ճանապարհի մը բերանը· այս ճանապարհը մէկ քառորդ ժամ կը տևէ, որ կը հանէ քաղաքէն դուրս Թօփխանէ ըսուած գիւղին մօտ Կոմնէրօս էըլուխ ըսուած տեղը։ Կերևայ որ Պարսկաց ձեռքէն քաղաքին պաշարման ժամանակ փախչելու կարող ըլլալու միօք քաղաքացւոց փորած մէկ ճամբան է այս։ Քաղաքն ունի ուրիշ վաճառանոցներ զանազան արուեստաւորներու, կերպասագործ, վաճառանոց ոսկերչաց, խաղախորդք, ներկարարք· Ունի մեծամեծ եռայարկ իջևաններ՝ որք են· Հասան փաշա խանը, Չէֆթէ խան և Սէօկիւթլիւ խան։ Այս քաղաքին և նահանգին բերքերն են՝ արմտիք գրեթէ ամէն տեսակ, առատ ցորեն, սուսամ, բամպակ, զանազան տեսակ խաղողներ, խնձոր, տանձ, թուզ, դեղձ, նուռ, վարունգ, անուշ ու խոշոր ձմերուկ, որուն մէկ հատը մինչև 40 հոխա կը կշռէ։ Հռչակաւոր է բոլոր աշխարհի մէջ իր սեխը համովը ու մեծութեամբը մինչև 60 հոխայ։ Տօմպալան բոյսն առուանի է, որ գետնախնձորի պէս կը գործածուի և անվէ աղէկ է։ Կան նաև մեղր, մեղրամոմ, ճերմակ նաւթ,

հռչակաւոր է բոլոր աշխարհի մէջ Տիարպէքիրի Մահ-մուտիէն ։ Կան հարուստ աղէհանքեր ։ Գետէն առատ ձուկ կելնէ , որուն տեսակներուն անուններն հետեւեալներն են . Շալ , Չէ-ւ , Ճէյյէ . Մէշէ+ , Նշւն և Ալղւնւզը ։ Մեծ առուտուր ունի Իզմիրի , Հալէպի , Պօլսոյ , Տրապիզօնի , Էրզրումի , Պաղտատի եւն հետ . կը զրկէ չէմ , ղէղըւը , ալաճա , փէշտըմէլը չէմչէ , մետաքսէ կտաւներ , բրդեղէններ , հողէ և պղնձէ անօթներ , ճանճափէլէ , ջէփըր , սեկ ։

Այս նահանգին մէջ մնացանք ’ի Տիարպէքիր վըհատակար կարիճ մը կայ , որուն խայթուածոյն ցաւը 24 ժամ կը տեւէ . բայց երկրացիք խայթուածին վրայ կը քսեն նոյն ինքն խայթող կարիճին իւղը՝ որ ցաւը կ’անցունէ ։

Հոս 5 օր կեցանք . շատ մը հիւանդներ դամմանուեցան և շատեր ալ պատուաստեցան ։

Փետրուար 13 չորեքշաբթի ժամ 4 ½ մեկնեցանք Տիարպէքիրէն . նստանք լաստերու ( քէլէք ) վրայ՝ Տիգրիս գետով դէպ ’ի Մուսուլ երթալու համար ։ Այս լաստերը 4 հատ էին , իւրաքանչիւրը 12 տիկերով ( թուլում ) շինուած . տիկերը օդով ուռեցուցած և բերաններնին աղէկ մը սեղմած ու կապած էին , և այսպէս ուռեցած տիկերէն տասնական հատ իրարու քով մէկ գծի վրայ կապած , և դարձեալ 10 հատ տիկեր առաջնոյն պէս իրարու քով կապելով՝ առաջին կարգին ետեւը դնելով և առաջիններուն հետ կապելով՝ երկրորդ կարգ մը կազմած էին . սյս եղանակաւ երրորդ , չորրորդ և այլն . մինչեւ 12 կարգ շինած էին , որով երկար քառակուսի լաստ մը ձեւացած էր . ասոր վրայ քովէ քով փայտեր դնելով յատակ մը շինած էին , և չորս կողմէն ալ մէկ

մէկ գերան բարձրացնելով՝ վրան վարագոյրով (Քէչէ-ով) գոցած էին․ այսպէս շինուած լաստին վրայ աթոռներ ու բազմականներ դրած էին հանգիստ նստելու համար․ Այս լաստերը գետոյն ընթացքին հետ կը նաւէին․ իսկ գետոյն հոսանքը խիստ դանդաղ եղած կողմերուն մէջ առագաստ կը բանային ու թիակ ալ կը գործածէին․ Լաստերուն ծայրը ղեկի տեղ թիաձեւ տախտակ մը կը գործածէին և լաստավարներուն ձեռքը մէկ մէկ ձող՝ միշտ կը կառավարէին ու կը կանոնաւորէին անոր ընթացքը, անանկ որ երբ լաստերը ջրին ընթացքին հետ դէպ 'ի եզրը երթային՝ ձողերուն ծայրը ցամաքին կրթնցունելով ու հրելով եզրէն կը հեռացունէին զանոնք ու կրկին կը մտնէին ջուրին հոսանաց ընթացքին մէջ։ Թէ որ տիկի մը օդը կապին թուլութենէն դուրս պարպուէր և տիկը պարպուէր, իսկոյն նոյն տիկին բերնէն կը փչէին ու կրկին կ'ուռեցունէին և նորէն կը կապէին բերանը. այս գործողութիւնը դիւրաւ ընելու համար՝ լաստը կազմած ժամանակնին տիկերուն բերանը միշտ դէպ 'ի վեր շարած էին։ Թէ որ մէկ կամ մէկ քանի տիկեր պատռելու ըլլային, կամ կը փոխէին ու նորը կը դնէին և կամ կ'սպասէին մինչեւ իրիկուան օթեւանը. և երեկոյէ երեկոյ երբ ցամաքը կ'ելնէինք օթեւանելու, նորէն կուռեցունէին բոլոր տիկերը փչելով։ Երբ 'ի կէտ եղեալ տեղը հասնին՝ լաստերը կը քակեն ու կը ծախեն, վասն զի հոսանքին հակառակ չեն կրնար երթալ։

Տիարպէքիրէն մինչեւ Նինուէ ցամաքի ճամբով 84 ժամ կը տեւէ և 12 աւուր մէջ կրնայ երթալ մարդ. այս լաստով գետին վրայէն 70 ժամ կը տեւէ և 6 կամ աւուր մէջ կ'երթուի, օրը 6 էն մինչեւ 10 ժամ ճամյ առնելով։

Տիարպէքիրէն ¾ ժամ անդին անցանք Տէօրղէօնէօ քէօփ-

քէօփրի տակէն՝ որ 10 կամարներով քարաշէն բարձր կամուրջ մ'է ։ փորձով հաստատուած է որ այն տարին որ գետին ջուրը կամուրջը ծածկելու չափ առատ է․ անտարակոյս նոյն տարին գետը կ'ողողէ Բաբիլոնը ։ Գետին աջ և ձախ կողմերուն վրայ հետզհետէ գտնուած գիւղերը՝ Տիարպէքիրէն իրենց հեռաւորութեան կարգաւ հետեւեալներն են․

Ա․ Զարօխի գիւղ․ 2 ժամ հեռի գետին աջ կողմը․

Բ․ Հաճիիզ (հաճէ խօճա էօլտիւ եէր) գիւղ․ 2 ժամ հեռի ձախ կողմը գետեզրին վրայ, բնակիչները տաճիկ և ասորի են ։

Գ․ Քիապի քէօյիւ․ 2 ½ ժամ հեռի գետին ձախ կողմը և մէկ քառորդ ալ գետեզրէն հեռի ։ Այս գիւղին մէջ անհամար աղաւնիններ կան՝ որ Պէօճն կըսուին, և ընդարձակ ու մեծաշէն Պօղախանանէր կան․ բնակիչներն են քանի մը հարիւր տուն Հայ և ասորի ։

Դ․ Ճէօճէլթի գիւղ 4½ ժամ հեռի և գետեզրին վրայ։

Ե․ Հօլա „ 5 „ „ „ „

Զ․ Քարա ահմէտ գիւղ․ } 6 „ „ „ „

գիւղերը հոս անցուցինք, եւ փոխարուար 14 հինգշաբթի առտու ժամ 12 նստանք Թէլէճիները ճամբանիս շարունակելու համար․

Է․ Թէօսէլի գիւղ․ 8 ½ ժամ հեռի Տիարպէքիրէն և գետեզրին վրայ․ բնակիչները Զազէօղլի կըսուին, այսինքն, գետեզրը բնակող․ կըսուին նաեւ Չըրաղճը, Չըրաղ սէօնտիւրէն կամ Մում սէօնտիւրէն ։ Ասոնք մահմէտական են, կը թլփատին, նամազ կընեն ևն․ բայց գարշելի աղանդ մ' ունին՝ որ տարին չորս անգամ չորս եղանակներու մէջ որոշեալ օր մը բոլոր գիւղացիք արք և կանայք, օրիորդներն ու պատանիները մէկ տան մը մէջ կը ժողվին մեծ հանդէսով խնջոյք կընեն՝ որուն կըսեն տէր-

նէ․ խնճոյքէն ետքը ճրագները կը մարեն և արու և էգ իրար կը խառնուին՝ ո՛վ որի հանդիպի հոգ չէ․ Ասոնք ընդհանրապէս Տիարպէքիրի նահանգին մէջ կը գըտնուին․ 10 կամ 12 գիւղի չափ բնակիչներ են․ այս գիւղերը գրեթէ բոլորն ալ գետեզրին վրայ են․ ասոնցմէ ուրիշ երկիրներու մէջ ալ կը գտնուին։

Ը․ Պիամիլ գիւղ․ 9 ժամ հեռի գետին ձախ կողմը և գետեզրին վրայ։

Թ․ Քօրուճի » 10 » հեռի գետին ձախ կողմը և գետեզրին վրայ։

Ժ․ Պօհճալը » 11 » հեռի գետին ձախ կողմը և գետեզրին վրայ․

ԺԱ․ Զէրի քէօյիւ $11^{1}/_{4}$ » հեռի գետին ձախ կողմը և գետեզրին վրայ։

ԺԲ․ Սլիւս գիւղ 12 » հեռի գետին աջ կողմը և գետեզրին վրայ, որ 20 տունով քրիստոնէից գիւղ մ՚է, հոս եկանք եւ գիշեր կեցանք։

ԺԳ․ Շէքէֆտան ըսուած քրդաց գիւղը, որ 20 ժամ հեռի է Տիարպէքիրէն․ հոս գիշերը կեցանք։ Այս գիւղըն ապառաժուտ լեռան մը վրայ է և տուները լեռանը ապառաժներուն մէջը փորելով շինուած են․ Թիւը 200ի կը հասնի․ ունի 500 ի չափ վայրենի քուրդ բնակիչներ։

Տիարպէքիրէն մինչեւ Սլիւս՝ Տիգրիսի մէջ վազած ջուրերը հետեւեալներն են․

| | | | |
|---|---|---|---|
| Զարօխի | սու | Հէօճէլթի | գիւղէն վար․ |
| Անպար | » | Խուլաճրխէն | » |
| Պարավան | » | Քէօսէլլիէն | » |
| Ընտավան | » | Պիամիլէն | » |
| Օլան | » | Քարա ահմէտ | » |
| Կէօք | » | Քէրխէն | » |
| Պաթման | » | Պիամիլէն | » |

փետուար 15 ուրբաթ առտու դարձեալ նստանք լաստերը ճամբանիս շարունակելու համար ։

Այսօր 8 ժամ ճամբորդութենէ վերջն ելանք գետին ձախ կողմը ։

փետրուար 16 շաբաթ առտու նստանք լաստերն ու սկսանք երթալ․ ճամբան տեսանք գետին աջ կողմը ,

ԺԳ․ Հասան քէֆ անուն քրդաց գիւղը , որուն տուները գետեզրէն պարսպի պէս բարձրացած անառիկ ապառաժուտ լեռան մը վրայ փորուած անձաւներ են ։ Այս լեռան վրայ սանդուխքի նման նեղ ճամբաներ փորուած են , ուրկէ մէկ մարդ մը հազիւ հազ ամենայն դժուարութեամբ վեր կրնար ելնել․ Այս գիւղը քարէ բարձր կամուրջ մ'ունէր , զոր մեծ Բէշիր փաշան ռմբակոծելով կործանած էր , որուն հիմա թէպէտ աւերակը միայն կը տեսնուի , բայց և այնպէս՝ այն մնացորդն ալ կրնայ գաղափար մը տալ անցաւորին իր հին բարձրութեանը․ Տեսանք նաև հետզհետէ ,

ԺԴ․ Քէֆրախլ գիւղը․

ԺԵ․ Հասան Օսման գիւղը․

ԺԷ․ Շէմսի մէհէնա „

ԺԸ․ Սլիրամօ անուն քրդաց գիւղը՝ աջ կողմը , 28 ժամ հեռի Տիարպէքիրէն և 8 ժամ վար Շէքէֆտանէն ։ Հոս ելանք գիշեր կենալու ։ Այս գիւղը ունի 150 աղիւսակերտ տուն․ 500 բնակիչ քիւրտ և քանի մ'ալ հայ ու ասորի․ ամենուն մէջքը մէկ մէկ դաշոյն ( խանչէր )․ Լեռան գագաթը մեծ ու գեղեցկաշէն պալատներ , բերդեր , կամուրջներ կան , ուր կը նստէր այս կողմերուն իշխող Սլիրամօ անուն քուրդ պէյը , այր երկայնահասակ , հաստաբազուկ և կորովի , որ մեծ հանդէսով դիմաւորեց մեզ գիւղը մտած ժամանակնիս․ Սենեկապետն ալ պատուեց զանի կարմիր հիլաւ մը հագցունե-

լով։ Այս անձը մերձակայ քուրդերու վրայ պատերազմի գացած էր և քանի մը օրէ 'ի վեր յաղթութեամբ վերադարձեր էր հոս իր գիւղը։

Շէքէֆտանէն մինչև Սլիւանի մէջ առուները Տիգրիսի մէջ կը թափին Թէլ [illegible] և Պէհուան [illegible] ըսուած ջուրերը։

Փետրուար 17 կիրակի առաւօտ, մեկնեցանք գիւղէն, և լատերով ճամբայ ելանք։ 2 ժամ վար մտանք Պէտրհան պէյի ապստամբութեան տիրած հողերուն մէջ։ Գետին ձախակողմեայ եզերքին վրայ լեռ մը բարձրացած է, որուն միջին կողերուն վրայ ծծմբական հանքային տաք ջուր մը կը բղխի 70՝ տաքութեամբ. Հոս յատուկ բաղնիք մ'ալ շինուած է [illegible] անուն, ուր երկրացիք միշտ կը յաճախեն մաքրութեան և բժշկութեան համար։ Այս ջերմուկին կողմերը լեռան վրայ բոլոր գետնին երեսը մաքուր ծծումբ կայ, և հանքերէն ալ փտած կամ նեխեալ հաւկիթի հոտով կազ մը կելնէ. այն է ջրածնեալ ծծմբային թթուոյ կազը. այս ջուրէն անօթի մէջ լեցունելու ըլլաս մրուր մը կը ձգէ տակը, այս է ծծումբը։ Այս լեռան վրայ քրդաց ցիրուցան բնակարաններ կան ապառաժներու մէջ փորուած, որոնց բոլորտիքը ցորենի ու բամպակի արտեր մշակուած էին և սալորի, թզենեաց ևլն. ծառեր կային։ Գետին ձախ կողմը և եզրէն 3 վայրկեան հեռի ապառաժուտ լեռան մը ստորոտը քանի մը հարիւր տունով քրդաց գիւղ մը կայ։

Ժթ. Ցէնտըլխ քէօյ անուն, որ ունի ընդարձակ արտեր ու ճոխ ծառաստան։ Այս լեռան գագաթը մէկ նաւիկ ապառաժի մը վրայ, ուր անհնար էր ելնել, բերդ մը կայ, որուն մէջ էր Պետրհան պէյի բնակարանը կամ լաւ ևս է ըսել ապաստանարանը, ուր կը քաշուէր

պէտք եղած ժամանակ։ Այս ապառաժուտ ցիցին դէմ դարձեալ ուրիշ ցցուած բարձր ապառաժի մը վրայ աշտարակ մը շինուած է, որուն բարձրութիւնը Պօլսոյ Փուրէ Ներքէն քիչ պակաս չէ։ Ոլիրամօէն 8 ժամ վար՝ ընել է Տիարպէքիրէն 36 ժամ հեռի՝ ելունք Տիգրիսի աջ կողմը՝

Ի. Ճէզիրէ կամ Ճէզրէ անուն քրդաց քաղաքը, ո՛ւր գիշերը կեցանք։ Պէտրհան պէյի մարդիկը դէմ ելան և ներողամտութիւն խնդրեցին իրենց պէյը անձամբ զմեզ չը դիմաւորելուն համար, և ըսին՝ որ շատ մը գործերու համար գիւղերը գացած ըլլալով այս միջոցիս քաղաքը չը գտնուիր։ Այս պէյը՝ Քրդստանի ամենէն հռչակաւոր պէյն էր, որ ինքնագլուխ կը կառավարէր ու կիշխէր Քրդստանի մեծ մասին. տէրութեան ո՛չ տուրք կուտար և ոչ զինուոր. անյաղթելի զօրութիւն ունէր և անբաւ հարստութիւն. իր իշխանութեան ներքեւ եղող քրդերը իրեն հաւատարմաբար կը ծառայեն. վերջապէս գրեթէ անկախ իշխանութիւն մ'եղած էր. բայց 1847 ին վերջերը ճիշդ մեր ճանապարհորդութեան տարին՝ տէրութիւնը իր վրայ բանակ ղրկելով պատերազմ բացաւ. բանակին սպարապետն էր Միւշիր Օսման փաշան, որ նուաճեց Քրդստանը, բռնեց Պետրհանն ու ուրիշները, վերջացուց ապստամբութիւններն ու հնազանդեցուց քրդերը։

## ՃԷԶԻՐԷ

Պարսպապատ քաղաք մ'է Տիգրիսի աջ կողմը. գարնան ժամանակ երբ գետը կուռանայ, երկու առուներու կը բաժնուի, որ ամեն կողմէն ու շրջանակի քաղաքը կը պատեն երեք չորս ամիսի չափ, անանկ որ քաղաքը ջուրերէ շրջապատեալ կղզի մը կը ձեւանայ. անոր համար Ճիզիրէ անունը առած է՝ որ արաբերէն

կոչի ըսել է .

1836 էն ի վեր, այսինքն, Քրդաց ապստամբութիւնը զսպելու համար Ռէշիտ փաշային հրամանատարութեամբը Քրդաստանի վրայ բացուած պատերազմին ռմբակոծութենէն ի վեր. այս քաղաքը անշքացեր էր, բոլոր պարիսպներն աւերակ դարձած էին և տուներուն գրեթէ 4/5 մասը փլած հիմնայատակ կործանած ։ Քաղաքին հիւսիսակողմը անառիկ բերդ մը կայ Ֆէնէր Գալէսի անուն, ուր կը քաշուէր Պետրհան պէյը՝ երբ խռովութիւն մը ծագէր ։ Այս բերդին մէջ կերևայ քառակուսի Լօվ քարերով և Հռովմայեցւոց ոճարի ձևով շինուած բոլորակ շէնք մը՝ որ կըսուի Եահուտի Քէլիսէսի . վասն զի 12րդ դարուն մէջ երբ քաղաքիս մէջ շատ մը հրեայներ կը գտնուէին, իրենց տօնի օրերը այս շէնքին մօտ տեղ մը կերթային կը ժողովէին, համարելով թէ այս շէնքը բուն իսկ Եղրասայ Սէնճաք՝ այսինքն ժողովրդանոցն է։ ճէզիրէ ունի մզկիթներ, բաղնիքներ, եկեղեցիներ ։ 2500 տան չափ բնակիչ կայ, որոնց մեծագոյն մասը քուրդ է և մնացածը Նասատուրի ։ կան նաև քանի մ'ալ հայոց՝ ասորւոց և դաղթական արաբացւոց տուներ ։ Քաղաքին առջևը Տիգրիսի վրայ նաւակներով շինուած և երկաթէ շղթայով իրարու կապուած փայտաշէն կամուրջ մը կայ. Այս քաղաքին շրջակայները բարեբեր էին, նաև թէ ալ կենէ. մեծեղջիւր այծեր կան և տեսակ մը կշ, և շատ տեղերու վրայ մարած հրաբուղխի հետքեր կը տեսնուէին. Մեր նախնիքները այս քաղաքին Բաղէշ անուն կուտային, և օտարները հին ատեն Չօբտօ կամ Պէդօբտօ (ղարդիկեան դաւառին մէկ գլխաւոր քաղաքը) կը կոչէին. կը կարծուի՝ թէ կորդուաց Զարուան Թագաւորին մայրաքաղաքն եղած ըլլայ .

փետրուար 18 երկուշաբթի առտու լաստեր-վ ճամբայ ելանք և 6 ժամ վար՝ այսինքն 42 ժամ հեռի Տիարպէքիրէն, հասանք,

Խան Բէշավուր գիւղը, ուր գիշեր կեցանք։ Ասիկա Թիլամնիի գիւղ մ՚է լերան վրայ շինուած. ունի 60 տուն և մէկ փոքրիկ եկեղեցի. լեռի ջուր մը կանցնի գիւղին մէջէն դէպ ՚ի դետը, ուր ջաղացներ շինած են բրինձ հանելու համար։

փետրուար 19 երեքշաբթի առտու նստանք լաստերը և մինչև կէսկուն շարունակ ճամբայ առնելնէս ղատ, գիշերն ալ դարձեալ անդադար նաւեցինք մինչև առաւօտ առանց տեղ մը հանգչելու։

փետրուար 20, չորեքշաբթի առտու, 5 ժամ ևս նաւելնէս վերջը՝ Մուսուլի 2 ժամ մնացած ելանք դետին ձախ եզրը, և կառքերով ու դորդարուն ձիերով՝ փառաւոր հանդէսով մտանք ՚ի Մուսուլ ժամը 9 ին։

## ՄՈՒՍՈՒԼ (ՆԻՆՈՒԷ) (1)։

Ասիական Թուրքաստանի մէկ քաղաքն ու այս անունով նահանգին (موصل) մայրաքաղաքն է, Տիգրիսի աջ կողմը դաշտի վրայ շինուած և պարսպապատ, որուն աշխարհագրական երկայնութիւնն է 40° 48′, և լայնութիւնը 36° 10′։ Նահանգը կը պարունակէ 180 000 բնակիչ. ասկէ զատ կը գտնուին նաև քրդաց և եզդիաններու (1) անկախ ցեղեր։

(1) Եզդիները կորովի պատերազմող եւ տգէտ ու անգիր ազգ մ՚են, աստին անդին ցրուեալ ու թափառական, 200,000

Քաղաքը ունի 4500 ի չափ բնակիչ, որոնց 32000 ը մահմէտական են և միացած 13000 ը նաստուրի, քիլտանի, եագուպի, հրեայ և քանի մ'ալ հայ. 10000 ի չափ տուն, 20 մզկիթ, 10 եկեղեցի, մեծ շուկայ մը՝ ուր գրեթէ ամեն բան կայ և աժան գնով. զանազան թաղերու մէջ մաքուր ու գեղեցկաշէն զինուորանոցներ, իջեւաններ, որոնց մէջ կը գտնուի քարաշէն գեղեցիկ մեծ իջեւան մը հարիւր սենեակով. մեծ ու գեղեցիկ հիւպատոսարան մը անգղիացւոց, նոյնպէս գաղղիացւոց և ուրիշ ազգաց հիւպատոսարաններ. շատ մը բաղնիքներ մութ ու չը բռուած, որոնց մէկ քանիին ջուրը ծծմբային ըլլալով՝ աճառով գլուխ լուալու չի յարմարիր, մազերը թաղիք կը դարձունէ. ուստի գե-

տուն կընեն. տանք զանազան ցեղերու եւ աղանդներու բաժնուած են, մեծ մասը վրանաբնակ է եւ փոքր մասը հաստատ բնակութիւն ունի Տիարպէքիրի, Մուսուլի գիւղերուն մէջ, Մուշի, Պայազիտի կողմերը, եւ գլխաւոր սահմանին Սինճար է։ Կրօնքով քրիստոնեայ են եւ Մանիքեցւոց աղանդը ունին. բայց քրիստոնէութեան միայն ուրուականը մնացեր է. մկրտութիւն չունին, չեն ալ թլփատուիր. Յիսուսի անուանը կերդնուն. ոչ պահք կը բռնեն եւ ոչ աղօթք կ'ընեն, վասն զի անանկ կ'ըսեն որ Շէյխ-Հատի իրենց առաջնորդը՝ որուն կը հետեւին, իրենց ընելիք ամեն աղօթքներն ու բռնելիք պահքերը ինքն ընել ու բռնել յանձն առած է, եւ յարութեան օրը իրենց ամենն ալ խուռն բազմութեամբ դրախտը պիտի խոթէ։ Ուստի իրենց բոլոր աղօթքը հետեւեալն է. Արեւն ծագելէն յառաջ դէպ 'ի արեւելք կայնիլ, ձեռքերնին երեսնուն դէմը բարձրացունել, երկու բթամատերնին իրարու վրայ խաչաձեւ դնել եւ արեւուն ծագած ժամանակ՝ երբ ճառագայթը նոյն խաչաձեւ բռնած բթամատերնուն վրայ զարնէ, իսկոյն զանի համբուրել։ Ահա ասանկով վճարած կը

տէն ջուր կը՛ բերեն կը տաքցնեն և գլուխնին անով կը լուանան ։ Քաղաքին պարիսպը խրամապատ է և աշտարակներ ունի ։ Քաղաքին արտաքին երևոյթը այն աստիճան անշուք էր, որ հեռուէն կարծես թէ կրակէ ելած փլատակ մը կամ չոր ապառաժներ կամ շատ մը պատերու կոյտ մ'է ։ Մէջը ո՛չ պարտէզ կայ և ո՛չ ծառեր՝ որոնց կանանչ տերևները գոնէ չքեղութիւն մը տային անոր ։ Փողոցները նեղ ու անկանոն ։ տուներն ալ առ հասարակ աղիւսով շինուած և իրարու կից ։ Կան նաև սպնգային քարով շինուած տուներ ։ Մէկ կամ կրկնայարկ են և փողոցին վրայ պատուհան չունին ։

համարին ամեն պարտականութիւննին ու աղօթքնին ։ Ամեն մէկ Օղա մէկ մէկ ամուսնացեալ Շէյխ ունի՝ որ քահանայի պէս է ․ գլուխը սեւ փաթթոց կը կրէ եւ ծոպաղող կըսուի ․ այս Չէյխերը պատարագի ուրուականը կը կատարեն, մրանին չուրջառի պէս բան մը կառնեն, գլուխնին բաց, գինի եւ հաց կը դնեն սկիհին մէջ եւ քառորդի մը չափ վրան աղօթքներ կընեն մտքով առանց գիրքի մէջ նայելու ։ Ժողովուրդը անոնցմէ արքայութենէ տեղ ծախու կառնէ ։ Այս Չէյխերուն գլուխը Սինճար կը նստի ու տարին մէկ անգամ Ցալքօլ քաղաքը կերթայ ընծայներով, զոր կը նուիրէ նստուրեանց Պատրիարքին եւ ծնրադրութեամբ օրհնութիւնը կառնէ ։ Այս ազգը Մանիքեցւոց պէս չարեաց սկիզբը կը դնէ սատանան, բայց իրեն չարութիւն մը չը հասցունելու համար կը պատուէ, եւ կը կարծէ՝ թէ օր մը դարձեալ դարձի գալով Աստուծոյ հետ պիտի հաշտուի ․ ուստի կը ջանայ սալաննել սատանային գէշ բառը։ Անոնք կերդնուն Սըլտէ անուան վրայ՝ հաւատալով որ Սըլտէ մայր սաղայէլի է ։ Քրիստոնեայները կը սիրեն, նաեւ կը մտնեն եկեղեցի եւ վառած կանթեղի իւղով խաչաձեւ կոծեն կուրծքերնին ։ Կատեն մահմէտականները, բայց տաճկական անունները կը գործածեն բաց 'ի Մուհամմէտէն ։ Մահ-

Տանիքները հողէ են, կղմինտր չըկայ. անձրեւը դիւ-
րաւ ներս չանցնելու համար՝ հողը պինդ մը սխմած են
և գլանաձև խոշոր քար մ'ալ տանեաց վրայ կը պահեն,
զոր կը գլտորեն անձրեւէն ետքը, որ առաւել պնդա-
ցունելով հողը կարգիլէ տղմանալէն: Տուներուն ներ-
քին կողմը բաւական զարդարուն է. սպնդանման քա-
րերով հիւսած են պատերը, որոնց վրայ զանազան
քանդակներ կան: Տուներուն կեդրոն տեղը վրան բաց
բակ է, տանը սենեակները չուրջանակի այս բակին
վրայ կը նային. տուներուն տակը ստորերկրեայ յարկ
մ'ալ կայ Սէրտապ անուն, ամառան սաստիկ տաքին ներս-

մէտական մը սպաննելը մեծ առաքինութիւն է, որով Աստու-
ծոյ զոհ մը մատուցած կը համարին եւ սպաննածնուն արիւ-
նէն ալ քիչ մը կը խմեն: Ամուսնութեան օրէնքը կը պահեն,
բազմակնութիւն չունին, պոռնկութիւնն ու արուագիտութիւ-
նը զարշելի բաներ են իրենց մէջ, բայց գողութիւնը մեղք
չէ. վասն որոյ երկրագործութեամբ ու աւազակութեամբ
կապրին: Ծաղրելի սովորութիւն մ'ունին. թէ որ մէկը Եէ-
զիտի մը կեցած տեղը չրջանակի գիծ մը քաշէ, մարդը ան-
շարժ կը մնայ մինչեւ որ մէկը չաւրէ նոյն գիծը. Նոյնպէս
տանը դուռնէն ելած ժամանակ դրան առջեւ գիծ մը քաշե-
լու ըլլայ կամ ճամբան երթալու կամ վազելու ատեն առջե-
ւէն գիծ մը քաշէ, ոչ դռնէն դուրս կրնայ ելնել եւ ոչ ճամ-
բան կրնայ շարունակել եւ հոն կը դառնայ, մինչեւ որ կամ
գծողը եւ կամ մէկ ուրիշը գայ աւրէ նոյն գիծը: Ոմանք կը
կարծեն՝ թէ այս ազգը Քաղդէացիներէն սերեալ է, եւ ոմանք
ալ Փրգաց մէկ ցեղն ըլլալ կը կարծեն. վասն զի լեզունին ալ
ու հասարակ քրդերէն է եւ վերջերը Եէզիտի անուանած է.
յս անուան ալ սկզբնապատճառ այն է որ Սէյխն իրեն զըլ-
խաւորը կը ճանչէ եւ անոր (Եէզիտին) անուանը կերդնու, ինչ-
պէս որ Իսայի. այսինքն, Յիսուսի անուանը վրայ:

տելու համար։ Օդը շատ տաք կընէ. ամառը հողին վրայ քառորդ մը բոկոտն քալելը անհնար է. Ջուրը Տիգրիսինն է, զոր քարէ սափորներու մէջ զտելով կը գործածեն։

Արհեստներն ու առուտուրը բանուկ էին, բայց խյ-նալու վրայ. Կային բամպակի կտաւներ, բեհեզ, թա-ւիշ, տապաստակ, վիժակ, ապաղէնք, զէնք, երկա-թի և պողովատի գործանոցներ, կտաւի տպարաններ, նարօտաներկութիւն, ևլն. Մէկ հոխա սերը 3 ղուրուշ, մէկ հոխա մածունը 10 փարայ. 150 տրամնոց ճերմակ ֆէրէն 4 փարայ։

Մահմետականները խստակրօն էին. մանաւանդ կա-նայք՝ որ մարդու չէին երևար, կը փախչէին ու կըռ-նակնին կը դարձընէին։ Քաղաքէն քառորդ մը հեռի գետին եզերքին վրայ շինուած են կուսակալին պալա-տը, զօրանոց մը, հեծելազօրաց ձմերոց մը և հիւան-դանոց մը։ Քաղաքին առջև գետին վրայ փայտաշէն կամուրջ մը կայ ծէգէրէլինին նման, զոր գիշերները կը բանային անցուդարձը դադրեցունելու համար։ Քա-ղաքէն դուրս դաշտին մէջ կային հարիւրի չափ վրան-ներ, ուր կը բնակէին մերկ ու մուրացկան արաբացիք, որ մածուն ու կտաւ շինելով կապրէին։ Քաղաքէն մէկ երկու ժամ հեռի կը գտնուի տաճկաց ուխտատեղիներ։ Քաղաքին դէմ և Տիգրիսի ձախ կողմն է Նունիա ա-նուն անշուք գիւղը։

Նահանգին նորընտիր կուսակալը ծերունի մարդ մ'էր Մէհէմմէտ Եսատ փաշայ անուն, որ մենէ 5 օր ա-ռաջ քաղաքը մտած ըլլալով՝ իր պաշտօնին վերաբե-րեալ հրովարտակը դեռ կարդացուած չէր և մեր ներ-կայութեամբ կարդացուեցաւ։ Բոլոր պաշտօնատարները իրենց համազգեստներովը կարգաւ կայնած էին, ա-տոնց դէմն ալ քաղաքին ծերունիները, և նորընտիր

կուսակալը մէջերնին ոտքի վրայ· բազմաթիւ քաղաքացիք ներկայ էին, և մէկ քանի գունդ ալ զօրք· Պաշտօնակալ մը բարձրաձայն կարդաց հրովարտակը, որուն բոլոր հանդիսականք ակնածութեամբ ունկն կը դնէին։ Լմննալէն ետքը կուսակալը ձեռքն առաւ հրովարտակը, ճակտին դրաւ· այն ատեն նուագարաններն սկսան երգել և 19 թնդանօթ արձակուեցաւ։ Կուսակալը մեծերուն ու ծերերուն խաթրն հարցուց· վերջը զօրաց գունդերը գեղեցիկ ու վարպետ զինախաղ մ'ըրին։ Վեց օր կեցանք այս քաղաքը և շատ մը հիւանդներ դարմանեցի· այս վեց աւուր մէջ օր մ'ալ գացինք Մուսուլէն 9 ժամ հեռի գետին եզրը Նեմրութ անուն գիւղին մօտ՝ դաշտի մէջ գտնուած Նինուէի աւերակները տեսնելու· այս դաշտին մէջ երկու հողակոյտներէ ձևացած բլրակներ կը տեսնուին, որոնց տակը թաղուած էր հին Նինուէի աւերակաց մէկ մասը։

Անգղիոյ կառավարութեան կողմէն ղրկուած անգղիացի պաշտօնեայ մը Նեմրութ գիւղին մէջ իրեն յատուկ բնակարան մը շինած և բոլոր գիւղացիներուն օրական տալով բլուրները փորել բանալ տուած՝ ու տակէն մեծ տաճարի մը մնացորդ գտած էր, որուն մէջի սենեակները, դահլիճներն ու ճամբաները շրջեցանք։ Տաճարին որմերը իրարու քով դրուած 5 կամ 6 կանգուն բարձրութեամբ և 2 էն մինչև 3 կանգուն լայնութեամբ միակտուր հաստ քարերով շինուած էին· քարերուն վրայ թագաւորներու, թագուհիներու, նաժիշտներու, չաստուածոց, քրմապետներու, առիւծներու, կովերու, կապիկներու, ծառերու, ծաղիկներու, ոչխարներու, կառքերու և այլն, պատկերներ քանդակուած էին արհեստին ամեն ճարտարութեամբը· նոյնպէս և նշանագիրներ և եռանկիւնաձև գիրեր ոչ սակաւ կը տեսնուէին։ Տաճարին սենեկաց դռներուն

առջև կողմնակի մարդկան և ցլուց վիթխարի արձաններ կային։ Այս անգղիացի պաշտօնեայն իր կառավարութեան կը ղրկէր ոչ միայն գետնին տակէն գտած փղոսկրէ պատկերի մասունքներն ու ոսկեզօծ փայտերու կտորներն ու զանազան անօթները են, այլ նաև այն ծանրաշարժ մեծամարմին քարերն ալ անտանելի աշխատութեամբ որմերէն կը քակէր և լաստերու վրայ հեծցուցած մինչև Բաբիլոն, անկէ ալ շոգենաւով մինչև Հնդկաց Անգղիան կը հասցունէր․ խորապատի մէջ ալ Յովնան մարգարէին գմբեթաւոր շիրիմը գտնուած էր, որ հրէից ուխտատեղի է։

Ահա այսպէս ժամանակին դեռ իսպառ սպառ չըկորցած մաշեցուցած կամ ըստ մասին խնայած Ասորեստանի այն մեծ քաղաքին յիշատակաց հետքերը բոլորովին ջնջելու կ'աշխատէր անգղիացի պաշտօնեայն․ բոլորովին կը զրկէր հին աշխարհը իր նախնեաց պատկառելի ու հըրաշալի ձեռակերտաց մնացորդներէն, վերջնադոյնն ալ իր ձեռքէն խլելով։ Երբ իրեն հարցուցի թէ ինչ է պատճառը այդ զրկանաց, պատասխանեց՝ թէ իւր կառավարութիւնը կը յարգէ հնութիւնները, զի անոնք՝ ըսաւ, պատմութիւնը կը կենդանացունեն եւ ներկայ ազգերը հնոյն հետ ժամանակից կընեն․ ուստի անոնց անկորուստ պահուիլը անտարակոյս մի եւ նոյն ծառայութիւնը կընէ ապագայ սերնդոց ալ։ Իւր այս պատասխանին իրաւունք տուի եւ իմ կողմանէս շնորհակալ եղայ մարդկային սեռին ըրած իւր այս մեծ ծառայութեանը համար այնպիսի աշխարհներու մէջ՝ ուր իր անձին կորստեան սպառնալիքներ պակաս չէին միշտ։ Բայց սա ալ չըմոռցայ իրեն կրկնելու՝ թէ շատ աղէկ կըլլար որ Անգղիա կարող ըլլար ամեն հնութիւններ իրենց գտնուած տեղերուն մէջ եւ իրենց երկնքին տակ պահելու ու ներկայացունելու․ որովհետեւ, ըսի, հնու-

թիւններն իրենց սկիզբ առած կէտերուն վրայ , իրենց երկնքին տակը միայն կարծես թէ իրենց նախնական դէմքովը կը պատկերանան · վասն զի իրենց տակի հողերն ու շրջակայ վայրերը , դաշտերն ու լեռներն և այն վայրերն ոռոգող գետերը , եւ անոնց մէջ սերեալ ազգաց բարքն ու սովորութիւններն և աւանդութիւններըն այն հնութեանց կենդանի վկայներու պէս մարդուս երեւակայութեան առջև իրենց ճշգրիտ կերպարանօքը կը ներկայացնեն · բայց երբ փոխադրուին՝ բնականաբար կը զրկուին այս բարբառող վկայներէն , և այն ատեն չեն կրնար վերստեղծել գաղափարաց սահմանին մէջ , և միայն հիներուն իբր յիշատակ կը հանդիսանան մտքին կարողութեան առջև ։

Նինուէ կամ Նինոս հին Ասիոյ քաղաքն Ասորեստանի կամ Նինուէացւոց թագաւորութեան մայրաքաղաքն էր , որ կը գտնուէր Տիգրիսի ձախ կողմը ։ 45,000 մէթրօ շրջապատ ունէր կըսեն , և 30 մէթրօէն աւելի բարձրութեամբ պարիսպ մը՝ 70 աշտարակով · և 600,000 բնակիչ ։ Կ'ըսուի որ Ասուր հիմնարկած է 2680 տարի Քրիստոսէն առաջ , և վերջը Նինոս 1968 տարի յառաջ քան զՔրիստոս մեծցուցած ու իր անունն ալ անոր տուած է ։ Շամիրամ իր էրկանը Նինոսին յիշատակին համար մահարձան մը կանգնեց մէջն , և հետզհետէ իր յաջորդները ճոխացուցին քաղաքը ։ Նինուէ երկու անգամ նուաճեցաւ · նախ՝ Սարդանապաղոյ օրով ( 762 յետ քան զՔրիստոս ) երբ Բաբելացիք , Մարք , Պարսիկք և Հայք միաբանեալ պատերազմեցան Նինուէի դէմ · Սարդանապաղ ինք զինքը կրակը նետեց և քաղաքին մեծ մասն ալ այրեց , որուն հրդեհը 15 օր տեւեց ։ Այս պատերազմէն ետքը և Սարդանապաղոյ մահուանէն յետոյ ( 759 յետ քան զՔրիստոս ) Արպակէս և Պելէսիս նուաճեցին զՆինուէ · երկրորդ անգամ ալ

Բաբելոնի Թագաւոր Ա· Նապօքօլասար նուաճեց ( 625 յետ քան զՔրիստոս ) ։

Նինուէ որչափ որ հարուստ էր ու ամուր, բարուց ապականութիւնն ու զեղխութիւնն ալ այնչափ յառաջացեր էր · ամենուն ծանօթ է Յովնանու ըրած այն հռչակաւոր քարոզութիւնը՝ զոր հրամայեց Աստուած ։ Յովնան նախ թէպէտ կերկնչէր քարոզելու, բայց ՚ի վերջոյ կատարեց, Նինուէի բոլոր Թաղերուն մէջ պոռալով թէ « Քառասուն օրէն ետքը Նինուէ պիտի կործանի »։ Բայց Աստուած, կըսէ Ս· Գիրքը, գթալով Նինուէացւոց զղջմանը վրայ՝ ներեց այն անգամ ։ կերևայ որ Նինուէ մնաց, թեպէտ և շատ ինկաւ մինչև եօթներորդ դար, այսինքն, Արաբացւոց աշխարհակալութեան ժամանակ՝ որ առին ու աւեր դարձուցին · անկէ ՚ի վեր աւերակ մնաց այս քաղաքը հողերուն տակ ծածկուած. աւերակները հիմա կը գտնուին Նէմրուտ, Խորսապատ և Նունիա գեղերուն մէջ, որ ըսել է 20 մղոնէն աւելի տարածութեան մէջ, և Մուսուլի հիւսիսային արևելեան կողմը իբր 20,000 մէթրօ հեռի ։ իսկ ժամանակէ մ՚ետքն անոր մօտերը շինեցին այժմեան Մուսուլ քաղաքն՝ որ երկար ատեն մանաւոր Սուլթաններ ունեցաւ, որոնք ընդ իշխանութեամբ խալիֆէից էին ։ Սալատին, Մօնկոլները և Թիմուր — Լէնկ հետզհետէ զարկին աւերեցին այս քաղաքը · 1741 ին ալ Նատըր — շահ պաշարեց, բայց չը յաջողեցաւ ։

Մուսուլի կառավարութիւնն երբեմն Պաղտատի կուսակալէն կախումն ունէր, շատ անգամ ալ զատ ֆուշյուքիւն եղած էր, ինչպէս որ հիմա ·

Փետրուար 26 երեքշաբթի մեկնեցանք Մուսուլէն չքեղ հանդէսով անցանք կամուրջը · մտանք տապակէզ ու անբոյս դաշտային ճամբաներուն մէջ Ջող սույը —

Քէօյը ըսուած գիւղն երթալու համար՝ որ Մուսուլէն 9 ժամ հեռի և Զապ — սույու (1) ըսուած գետին ե-զերքին աջ կողմը 100 տունով գիւղ մ'է, որուն բնա-կիչներն են քուրդ ու արաբացի. իրիկուան հոս հա-նելով գիշեր կեցանք վրաններու տակ։

Փետրուար 27 չորեքշաբթի առտու լաստերով ան-ցանք Զապ — սու գետին միւս կողմն, և ճամբայ ելանք դէպ 'ի Էրպիլ երթալու համար 7 ժամ հեռի, ուր մը-տանք իրիկուան ու գիշեր կեցանք։ Էրպիլ՝ լեռան վրայ շինուած պարսպապատ գիւղաքաղաք մ'է. բը-նակչաց թիւը 4000 ի չափ է. ասոնց մեծ մասը քաղա-քին մէջ կը նստի և մնացածը պարսպէն դուրս. ըստ մեծի մասին քուրդ են, կան նաև տաճիկ ու հրեայ. այս վերջին ազգը պարսպէն դուրս զատ թաղի մը մէջ կը բնա-կի։ Քաղաքէն դուրս կան ուխտատեղիներ, վրանաբնակ արաբացիներ, շուկայ մը, քանի մը պարտէզներ՝ տեսակ տեսակ ծառերով։ Քաղաքէն մէկ քառորդ ժամ հեռի Քէհրիզ ըսուած տեղը հոր մը կայ, ուրկէ ջուր կը բղխի՝ որ յատուկ շինուած ճամբով մը կուգայ մինչև քաղա-

(1) Մեծ Զապ-սույու ըսուած գետն՝ որ յունարէն Լի-կոս, այսինքն, Գայլ և Զէրպ'ս ալ կը կոչուէր, Տիգր'սի երեւելի մէկ վտակն է, որ Վանայ հարաւային կողմերէն կ'իջնայ. իր մէջը կ'ընդունի շատ մը գետակներ. նաև Շէհ-րիզուր նահանգէն բղխած ջուրերն, և շրջապտոյտ ու ա-րագ ընթացքով մը կուգայ կը թափի Մուսուլէն օր մը վար Հատիսէ քաղաքին մօտ՝ Թօֆրագ-գալէի առջև Տիգրիսի մէջ։ Հոս 50-60 կանգուն լայնութիւն ունի գետը. ջուրը յստակ ու քաղցր է. իր արագընթացութեան ը համար Աղէ-ճէհեան ըսած են, այսինքն, Ջօռը-մօյեփին։ Փոքր Զապ-սու գետակն ասկէ հեռի է։

քին պարսպին դրսի կողմը և կը հաւաքի աւազանի մը մէջ, ուրկէ բնակիչները կ'առնեն գործածելու իրենց ամեն պիտոյիցը համար։ Քաղաքին մէջ ուրիշ ջուր չը կար։

Փետրուար 28 հինգշաբթի ճամբայ ելանք Ալթըն-Քէօփրիւ երթալու համար 12 ժամ հեռի, և նոյն օրն իրիկուան ժամ 10ին մտանք և գիշերն օթևանեցանք։ Մինչև Ալթըն—քէօփրիւ ճամբու վրայ տեղ տեղ ջուր կը գտնուի։ Ալթըն—քէօփրիւ՝ դաշտին մէջ Տիգրիս գետին ձախ կողմն և անոր ոլորմամբ թերակղզի ձևացած հողին վրայ շինուած գիւղաքաղաք մ'է 300 տուն քիւրդ բնակիչներով։ Քաղաքին երկու կողմերը մէկ մէկ բարձր ու քարաշէն կամուրջ շինուած են, որոնց վրայէն պէտք է անցնիլ թէ՛ քաղաքը մտնելու և թէ անկէ դուրս ելնելու համար. ինչպէս որ մենք ալ այս երկու կամուրջներուն վրայէն անցանք քաղաքը մտած ու ելած ատեննիս։ Բնակիչներէն ոմանք վարժուած էին այս բարձր կամուրջներուն գագաթէն՝ որ 30 կամ 35 կանգուն բարձրութեան կը հասնի, ինք զինքնին գետը նետել, ինչպէս որ մեր ներկայութեանն ալ նետուեցան։

Փետրուար 29 ուրբաթ, ճամբայ ելանք Քէրքիւթ երթալու համար, 9 ժամ հեռի, նոյն օրն իրիկուան մտանք.

Այս ճամբուն վրայ աւերակ խան մը կար, ուրկէ ջուր մ'ալ կ'անցնէր։ Քէրքիւթի մօտ շատ մը հորեր կան, որոնց մինչև բերանը տեսակ մը կուպրով լեցուած էր. այս կուպրը գետնին տակէն կը բղխի և հորերուն մէջ կը պարպուի. ուրկէ ուզողը կ'առնէր տիկերու մէջ լեցընելով վառելու կը գործածէր։ Հոս տեսակ մը կպրաձիւթ (Նէֆթ) ալ կայ։ Այս վայրէն մէկ քառորդ ժամ անդին և Քէրքիւթի 2 ժամ մնացած դաշտավայ-

րէ մը վրայ ծծումբի հոտ կը բուրէ . գետնին երեսը ծծումբ ալ կը գտնուի , և երբ փայտով մը հողը խառ-նեն՝ իսկոյն կ'սկսի գետինը մխիլ , վառիլ և բոց հա-նել հրաբուղխի նման ։ Բոլոր այս վայրերուն տակը Թա-փուր ու պարպուած է , մինչեւ անգամ քալած ատեն ոտքի ձայնին արձագանգը կը լսուի գետնին խորէն ։

## ՔԷՐՔԻԻԹ

Պաղտատի գիւղաքաղաքներուն ամենէն 'գեղեցիկն է . ունի 8000 ի մօտ տուն , 15000 ի չափ բնակիչ քիւրտ , տաճիկ , Հայ , ասորի , քիլտանի , հրեայ և արաբացի . 10 մզկիթ , մէկ մէկ եկեղեցի իւրաքանչիւր ազգի հա-մար . Քէֆիլ , Ճէրճիլ և Եագուպ բէյդ–մղէրնէրաւն Նէ–ըղէ-նէրը . 8 բաղնիք , խաներ , արհեստաւորաց շուկայ մը ։ Կան շատ մը գեղեցիկ ու ընդարձակ արտեր , այգի-ներ , պարտէզներ տեսակ տեսակ պատուական պտղա-բեր ծառերով՝ որ կուտան խնձոր , լիմոն , նարինջ , տալոր , խաղող ևլն ։ Կը գտնուին նաեւ սօսիի , չոճիի ծառեր և Թթենւոյ ու արմաւենւոյ անտառներ ։ Բնա-կիչները հիւրասէր , ազնիւ և հլու մարդիկ են , շատեր-նին գինուորական ծառայութեանց մէջ կրթուած ։ Սէկ քանի հարիւրէն աւելի ոդահա կար . Օդն աղէկ և ջուրը բաւական անուշ՝ որ կուգայ 5 ժամ հեռի լեռնէն և կըսուի խառխա——ռաա ։

Այս գիւղաքաղաքը 4 Թաղերու բաժնուած է , ո-րոնց անունները են .

Ա. Քէօյրայ մահալէսի . ուր կեցանք օր մ' եւ երկու գի-շեր ։ Ունի 2500 տուն ։

Բ. Խօտարը չէյմ մահալէսի . ունի 100 տուն ։

Գ. Աշաղը չէյքէ մահալէսի . ունի 2500 տուն , որոնց 500 ը հրէից էր ։

Շուկան այս երկու թաղերուն մէջ տեղն է բաւական ընդարձակ, ուր կը գտնուին զանազան արհեստանոցներ։ Այս երեք թաղերը դաշտավայրի վրայ շինուած են։

Դ. Քալէ մահլէսի. որ ունի 2000 տուն ամեն ազգէ խառն։ Այս թաղը հողակոյտէ ձեւացած լեռան մը ղառ ’ի վերին վրայ շինուած է պարսպապատ։

Մարտ 2 կիրակի առտու ճամբայ ելանք Թավուք երթալու համար 9 ժամ հեռի, և նոյն օրը իրիկուան մտանք ու գիշերը հոն օթեւանեցանք։ Թավուք քըրդաց փոքրիկ գիւղ մ’է 120 տունով. մէկ քանի ալ հրեայ կը գտնուի. գիւղին մէջ տեղէն ջուր մը կանցնի։ Ունի արմաւենիներ։

Մարտ 3 երկուշաբթի ճամբայ ելանք Տուս Հուրմաթ երթալու համար 7 ժամ հեռի, եւ նոյն օրն իրիկուան մտանք ու գիշեր կեցանք։

Տուս Հուրմաթ քրդաց գիւղ մ’ է 200 տունով. մէկ թաղ ալ հրեայ կը գտնուի։ Գիւղին մէջէն ջուր մը կանցնի։ Ունի գեղեցիկ պարտէզներ սալորի, լիմոնի եւ արմաւի ծառերով։ Ջուրին եզերքին վրայ ջուր մը կայ Սէրայ անուանեալ, ուր կեցանք գիշերը։

Մարտ 4 երեքշաբթի առտու ճամբայ ելանք Քիֆրի երթալու համար 7 ժամ հեռի, եւ նոյն օրն իրիկուան մտանք։ Քիֆրի՝ 300 տուն քուրդ եւ հրեայ բընակիչներով գիւղ մ’ է. ունի աղիւսակերտ հին պարիսպ մը, պարտէզներ։ Գիւղին մէջ տեղէն ջուր մը կ’անցնի՝ որ քաղաքէն դուրս կ’ոռոգէ բրինձի ու ցո-

բենի արտերը ։ Այս ջուրն իր աղբերականցը մօտ շատ աղէկ է, բայց ճամբան ուրիշ ջուրի հետ խառնուելով քիչ մը կը գէշնայ։ Հոս գիշեր մը կեցանք վրաններու տակ։

Մարտ 5 չորեքշաբթի առտու ճամբայ ելանք Քարա—Թէփէ երթալու համար 7 ժամ հեռի, և նոյն իրիկուն մտանք ։ Քարա Թէփէ—փոքրիկ գիւղ մ'է աղքատիկ քրդաց․ ունի 100 տուն և պարտէզներ ծառերով ։ Հոս գիշեր մը կեցանք վրաններու տակ ։

Մարտ 6 հինգշաբթի առտու ճամբայ ելանք Տէլի—Ապպաս երթալու համար 10 ժամ հեռի, և նոյն իրիկուն մտանք ։ Տէլի—Ապպաս փոքրիկ գիւղ մ'է և մէկ խան մ'ունի ։ Գիւղին քովէն գետակ մը կ'անցնի, որուն եզերքը կեցանք գիշեր մը վրաններու տակ․ այս գետակը բաւական լայն, մեծ ու խորունկ է, և մէկ կողմէն միւս կողմն անցնելու համար քարաշէն կամուրջ մը շինուած է ։

Մարտ 7 ուրբաթ առտու գիւղին կամուրջն անցնելով ճամբայ ինկանք Պաշ—Եէնկիճէ երթալու համար 18 ժամ հեռի, և նոյն իրիկուն մտանք ։ Ճամբուն վրայ 12 ժամ հեռի Տէլի—Ապպասէն՝ Հօքօբ անուն գիւղ մը կայ ։ Այս տաք ու դաշտային երկիրներուն մէջ ծովի կամ գետի նման ջուր մը կերեւայ ճամբորդին աչքին ժամ մը հեռի դէպ 'ի զգալի հորիզոնին վրայ․ արեգական և գետնին տաքութենէն տոչորած ծարաւի ճամբորդն 'ի զուր կ'աճապարէ այս անգոյ ջուրին հասնելու և ծարաւը յագեցունելու․ վասն զի նա քանի՛ կաճապարէ յառաջ կը վազէ, այս երևոյթն ալ նոյն համեմատութեամբ իրմէ կը հեռանայ, որով ուղևորին ծարաւն առաւել կը սաստկանայ ։ Գետնին երեսէն շա֊

րունակ գոլորշիք կ'արտադրի արեգական տաքութեանն, ճամբորդն ալ հարկաւ այս արտադրութեան մէջ կը քալէ և չը կրնար տեսնել անմիջապէս զինքը պաշարող գոլորշիքը. վասն զի խիստ անօսր է. բայց այսպէս իրարու ետեւէ արտադրեալ անօսր գոլորշիներն՝ անոնց մէջէ քալող ճամբորդին աչքին ջուրի նման խտացեալ երևոյթով մը կը տեսնուին մինչեւ բաւական հեռաւորութիւն մը ։

Պաշ Եէնկինճէ Տիգրիսի ձախ եզերքին վրայ արմաւենիներու մէջ շինուած աւերակ գիւղ մ'է, որուն որմերուն փլատակներն ու մնացորդները միայն կը տեսնուին հիմա. աւերակներուն մէջ պատուական իջեվան մը կայ ։ Հոս գիշեր մը կեցանք.

Մարտ 8 շաբաթ առտու ճամբայ ելանք Պաղտատի մօտ Իմամ—Ազամ երթալու համար. Պաշ—Իէնկինճէէն մինչեւ Պաղտատ՝ որ 6 ժամ կը տեւէ, երկիրը խիստ հարթ է. Իմամ—Ազամի 2 ժամ մնալով Պաղտատի եւրեւելի անձինք դիմաւորեցին մեզ՝ որոնց հետ մէկտեղ շարունակելով ճամբանիս դալարագեղ վայրաց վըրայէն մտանք գեղեցիկ ծառաստանի մը մէջ, ուր կը գտնուէր Իմամ—Ազամի մզկիթը ։

Իմամը—Ազամ՝ Պաղտատի արեւմտեան հիւսիսային կողմն և անկէ $5/4$ ժամ հեռի Տիգրիսի ձախ եզերքին վրայ գեղեցիկ ծառաստաններու մէջ փառաւոր մզկիթ մ'է, որուն մէջն է Մուհամմէտի եղբօր Իմամ—Մուսային գերեզմանը ։ Այս մզկիթին բոլորտիքը կան արտեր ու պարտէզներ, ուր կը գտնուին լիմոնի, նարնջի, արմաւի, թութի, սալորի, դեղձի ևլն. ծառեր ։ Գետեզերին վրայ շատ մը ջաղացներ շինուած կան, որոց ամեն մէկին երկերկու ձի կապելով ջուր կը քաշէին և արտերըն ու պարտէզները կը թրջէին ։ Գիշերը հոս կեցանք

մզկիթին մէջ։ Այս մզկիթն երեւելի ուխտատեղի մ՚է՝ ուր քրիստոնէից ներեալ չէ մտնել։

Մարտ 9 կիրակի առտու ժամ 4 ին չքեղ հանդէսով ելանք Իմամը—Ազամէն Պաղտատ մտնելու համար. Պաղտատի բոլոր մեծամեծները, պաշտօնեայներն ու իւլէմաներն իրենց համազգեստներովն Իմամ—Ազամ եկան. մզկիթին առջեւ պատրաստ կը կենային արաբացի բարձր ձիեր ոսկեհուռ ու արծաթապատ հօշաներով զարդարուած՝ որոնց վրայ հեծանք ու ճամբայ ելանք։ Հանդէսին առջեւէն խումբ մը զինուոր կ՚երթար, ետեւէն ալ քաղաքացիք զոյգ զոյգ իրենց աստիճանի կարգաւն. անոնց ետեւէն քեհեա փաշան բազմաթիւ սպասաւորներով. անոր ետեւէն Պաղտատի բանակին Ֆէրիք փաշան. անոր ալ ետեւէն Սենեկապետ Պէյն իր բոլոր սպասաւորներովը. Պէյին ետեւէն իր գանձապետն՝ որուն ձեռքն էր բարձր բռնած Արքունական այն ականակուռ ոսկէպատ Թուրը, կարմիր շղաշատեռի մէջ պատատեալ, զոր բարեյիշատակ Սուլթան Ապտ—իւլ—Մէճիտը կը ղրկէր Պաղտատի ընդհանուր կառավարիչ Ալի Նէճիպ փաշային։ Կուսակալի փեսայն ու ես Թուրին երկու կողմէն կ՚երթայինք, և մեր ետեւէն կուգար նուագարաններու խումբ մը. որ չարունակ կ՚երգէր պարսկական, արաբական և եւրոպական եղանակներ՝ որոնք այս անթիւ բազմութեանը հանած չփոթին հետ խառնուելով անապատը կը դողացնէին. Այս խուռն բազմութեան ճիշդ նկարագրութիւնն ընելը դժուար է։ Պաղտատի բոլոր բնակիչները, մօտակայ գիւղերէն հազարաւոր արաբացիները այր և էգ, ծեր և տղայ Իմամը—Ազամի դուռնէն մինչեւ Պաղտատի դուռն իրարու վրայ դիզուած էին։ Ճանապարհին երկու կողմերուն վրայ զինուորական կարգեր կայնած

էին խուժանը չը խռնելու և հանդիսականք անարգել յառաջ ընթանալու համար։ Բաբիլոնի դաշտին մէջ այս օրինակ արեւելեան հանդէս մը քիչ անգամ տեսնուած էր, հանդէս մը՝ ուր ներկայ էին արաբացւոց զանազան ցեղերն արք և կանայք զանազան տեսակ ըզգեստներով. արք կը պարէին և կանայք հնդկահաւի նման կը կկլային. ուշէրէններուն վահանակիր նիզակաւոր և սուսերամերկ զօրքերն արաբական զինախաղութիւններ կընէին. հագուագիւտ արաբական ձիերու խումբեր՝ ոսկեթել ականակուռ և հնաձեւ հուշններով զարդարուած՝ որոնց արձակած շողն ու ցոլմունքն ամեն աչք կը խտղտեցունէին. նուագարաններուն արաբական և պարսկական երգերը քաղցր ու հեշտալուր էին. այսպէս նուագարաններուն ձայներն ու կանանց կոկորդաձայն երգերուն կկըլուկն ու խուժանին ուրախական շաչիւնն ու ձիերուն խխնջիւնն իրար խառնուած՝ անապատին երկինքը կը դղրդէին. Այս տեսարանին մէջ մարդ չըկար որ յափշտակուած չըլլար։ Վերջապէս քաղաքին մէկ քառորդի մը չափ միացած իջանք մէկ մեծ ու գեղեցիկ վրանի մօտ, ուր Նէճիպ փաշան՝ իր համազգեստը հագած կ՚սպասէր Սենեկապետին գալուստը բարեւելու. ալեւոր ծեր կուսակալը մօտենալով Սենեկապետին՝ գրկեց զանի և ուրախութեամբ ջերմ արցունքներով համբուրեց, գոհանալով Աստուծմէ որ մեզ անվտանգ հոն բերեր էր, եւ վրանը մտնալով քառորդի մը չափ հանդիստ ընելնուն ետքը, կուսակալը մեկնեցաւ միայնակ դէպ 'ի Պաղտատ՝ հոն իր պալատին առջեւ կրկին զմեզ դիմաւորելու՝ համար. քիչ մը ետքը մենք ալ ճամբայ ելանք հանդիսին առաջին կարգաւը. Թնդանօթաց որոտման մէջ մտանք 'ի քաղաք և ուղղակի գացինք կուսակալին պալատն՝ որ շինուած էր գետեզերքին վըրայ։ Պարիսպէն ներս քաղաքին մէջ մինչեւ կուսակա-

լին պալատը՝ փողոցներուն մէջ, պատուհաններուն առ-
ջեւ և տանիքներուն վրայ անհամար բազմութիւն տես-
նելու կայնած էր, արք և կանայք՝ ծեր ու տղայ խա-
ռըն 'ի խուռն. կիները վրայնին Տրապիզոնի վերարկու
առած, դէմքերնին ալ ձիու մազէ հիւսուած սեւ քօ-
ղարկով մը գոցած, ամենը մէկ բերնէ հնդկահաւի նը-
ման կոկորդային ձայներ կը հանէին 'ի նշան ուրախու-
թեան. ամեն կողմէ բարի' եկաքի ձայներ, երգեր ու
պոռչըտուքներ ականջնիս կը խլացունէին: Մտանք պա-
լատին բակն, ուր կուսակալը կ'սպասէր իր համազգես-
տովը՝ բայց թուր չէր կապած. վասն զի քիչ մը ետքը
հանդիսաւոր արարողութեամբ Թագաւորին ղրկած
թուրը պիտի կապէր: Ելանք վեր պալատին մէջ, մէկ
մեծ ու ընդարձակ սենեակ մը, որուն ձեղունն ու որ-
մերն ապակիէ շինուած էին և պարապ տեղերուն վը-
րայ ալ ոսկեզօծ քանդակներ կային: Պաշտօնական
քարտուղար մը կարդաց Արքունական հրովարտակը,
զոր Ապտ—իւլ—Մէճիտ իր ձեռօքը շարադրած ու
գրած էր. յիշատակաց արժանի Նայարն Թուրքերոյ, այս
հրովարտակին մէջ իրեն սովորական ոճովն իր բարձր
գոհունակութիւնը կը յայտնէր կուսակալին՝ իր բարւոք
կառավարութեանն ու աչալուրջ հսկողութեանը համար,
ծանուցանելով միանգամայն թէ այնքան ծառայու-
թեանց 'ի վարձատրութիւն ոսկիապատ ականակուռ
թուր մը կը ղրկէր իրեն, թուր մը՝ կըսէր, զոր արդա-
թեան յաղթանակին և թշնամեաց ու ապստամբաց պար-
տութեանը պիտի գործածես: Հրովարտակը կարդա-
ցուելէն ետքը՝ կուսակալը ձեռքն առաւ՝ համբուրեց
ու ճակատը դրաւ, ինչպէս օրէն է մեծարանաց՝ զոր
ուրաքանչիւր ոք կը պարտի հատուցանել Արքունական
հրովարտակաց: Իսկ հրովարտակին խրախուսիչ բանքն
ու գոհունակութեան հաւաստիքն այն աստիճան յու-

դեցին ծերունազարդ կուսակալն՝ որ չըկրնալով ինք զինք զսպել ուրախութեան արտասուքներ սկսան ոլոռն ոլոռն թափիլ ու ցոլանալ իր դէմքին խորշոմներուն վրայ ։ Միւս կողմէն ալ հանդիսականք սրտաշարժ յուզմամբ լցեալ կային 'ի լուր Հրովարտակին և 'ի տես աղդեցութեանն, որոյ ներքեւ կուլար տղու մը պէս ծերունի կուսակալն, և ամենուն դէմքին վրայ գոհութիւն և պատկառանք միանգամայն նկարուած կը տեսնուէին ։ Հրովարտակին ընթերցումէն անմիջապէս ետքը, Սենեկապետը ձեռքն առաւ Արքունական թուրը՝ համբուրեց ու կապեց կուսակալին մէջքը ։ Ներկայ իւլէմաններէն մէկն ալ շնորհաւորութեան ու օրհնութեան թուղթ մը կարդաց ։ Այս արարողութենէն ետքը մեկնեցանք պալատէն և գացինք նեղ փողոցի մը մէջ մեզի համար յատկացեալ քարաշէն մեծ տուն մը ։

Քաղաքին մէջ հինգ գիշեր շարունակ նմանը չտեսնուած լուսաւորութիւններ ու հրախաղութիւններ եղան . հրոյ բոց մը պատած էր բոլոր քաղաքը, շուկաներէն սկսեալ մինչեւ երեւելեաց ու արհեստաւորաց տուները ցերէկուան պէս լուսաւորուած էին գիշերները մինչեւ լոյս . իսկ ամենէն աւելի գեղեցիկ ու զուարճալի տեսարան ներկայացնողն էր պալատին ընդարձակ հրապարակը . վերջապէս այս հինգ օրը ճշմարիտ տօնախմբութեան օրեր եղան բոլոր քաղաքին համար, և հինգերորդ օրը իբրեւ կնիք այս արարողութեան տեղի ունեցաւ պաշտօնական այցելութեանց արարողութիւնը Սենեկապետին, կուսակալին և հիւպատոսաց մէջ։

Կնքենք մենք ալ այս հակիրճ ու տժգոյն նկարագրութիւնն այն շողշողուն հանդէսներուն, ու անցնինք նըկարագրելու նախ նահանգն և ապա քաղաքը հռչակաւորն Բաբելոնի ։

# ՆԱՀԱՆԳ ԲԱԲԵԼՈՆԻ

Պաղտատի կամ Բաբելոնի Նահանգն Ասիական Թուրքաստանի մէկ փաշայութիւնն է (Ալ— Ճէզիրէ) որ Էրզրումի, Տիարպէքիրի, Իրանի և Պարսկաց ծոցոյն մէջ տեղերը կէյնայ, և ընդհանրապէս դաշտային է մինչև Պարսկաց ծոցը, բաց 'ի հիւսիսային արևմտեան կողմը Շահրիզուր երկրէն՝ որ լեռնային է։

Ունի 590,000 մէթրօ (1) երկայնութիւն (351 մղոն կամ 768,821 կանգուն), և 550,000 մէթրօ լայնութիւն (327 մղոն կամ 717,619 կանգուն)։

1,300,000 ի չափ այլ բնակիչ, որուն՝

650,000 վրանաբնակ ու Թափառական Արաբացիներ են․
600,000 քաղաքաբնակ ու գիւղաբնակ Մահմէտական․
35,000 „ „ „ Հրեայներ․
2,040 „ „ „ Քրիստոնեայներ․

յորոց՝ 700 Հայ․
500 Քիլտանի․
400 Սիւրեանի․
200 Հայ պապական․
100 Լատին․
100 Բողոքական․
40 Յոյն․

12,960 այլ գաղթականներ են՝ քուրդ, աղուան, հընդիկ եւ այլն։

Այս Թափառական արաբացիները դեռ միաւորական մշակութեան ստորնագոյն աստիճաններուն մէջ

(1) 1680 գաղղ․ մէթրօն 1 մղոն է, կամ 2192 կանգուն տաճկ․

երբ բաւական կը յոգնիս՝ հանգիստ ընելու համար կախաղանաւոր բուրաստանք ճեմելու կ'երթաս ու հանինք զինքդ դրախտի մը մէջ կը կարծես․ գեղեցի՜կ տեսարան, զմայլելի ծաղկըներ անուշ հոտերով և հովանաւոր ծառեր, որոնց ներքև մարգագետնի մը վրայ ձեռքս գլխուս վրայ կռթնցունելով ընկողմանած՝ մարդկային մեծագործութեանց վրայ մտածութիւններ կընէի ու կըսէի որ մարդ աշխատութեամբ կրնայ ձեռք բերել՝ ինչ որ այս աշխարհիս մէջ իր կարծեցեալ երջանկութեանը կը նպաստէ․ Սո՜ւտ և պատի՜ր երջանկութիւն, ո՜րքան խարխուլ և ո՜րքան դիւրաբեկ՝ որչափ յայտ յանդիման կ'երևան աչքիդ առջև այս վիթխարի շէնքերուն փլատակները՝ որ ամեն տեղ երկրիս երեսը ծածկած են․ այս փլատակները մարդկային ունայնութեան մէյ մէկ տխուր վկայներն են, մարդկային հանճարին ու աշխատութեան բեկորները, զոր դարերը թոյլ ձեռքով սփռած են աշխարհիս երեսը։ Երբոր սանկ մտածութիւններ զիս դրաւած էին, յանկարծ տեսայ քովս 'ի վեր կանգնած Լիկոդրոն և Կալլիմաքոս (Պտղոմէոս Եգիպ․ թագաւորին պալատի իմաստունները), որ ողջունելով զիս ըսին․ «Այդ ի՞նչ յափշտակութիւն է վրադ․ գիտցի՛ր, ոչ միայն Բաբելացւոց ու Ասորւոց աշխարհներուն մէջ գտնուած մեծագործութիւնները պիտի չքանան, այլ նաև Եգիպտացւոց, Յունաց, Պարսից, Պարթևաց, Հայոց, Մարաց և ուրիշ ամեն ազգաց մեծագործութիւններն ու ամրութիւնները, քաղաքներն ու բնակիչները, թագաւորները ու զինուորները, հանճարներն ու ազգերը՝ մի և նոյն ճակատագիրը պիտի կրեն, անոնց ամենն ալ ժամանակին բուռն հոսանքը պիտի մղէ ու կորստեան անդունդներուն մէջ պիտի տանի ձգէ․ չըկայ զօրութիւն մը՝ որ կարող ըլլայ զանոնք ազատելու։ անոր ճիրաննե-

րէն, աւերակաց աւերակներն ալ պիտի անհետանան ։ Գիտցի՛ր որ երկրի վրայ ինչ որ կուգայ, անտարակոյս պիտի երթայ. հաւատա՛ որ այս ժամանակաւոր բանե-րուն վերեւը անոնց գալստեան և կորստեան, առաջ-մանն ու բարձման օրէնքներուն անընթերակայ անխա-նալի էակ մը կայ, որ 'ի հարկէ ինքը ժամանակ չունի, ո՛չ սկիզբ և ո՛չ վախճան, 'ի յաւիտենից տնօրինած է ամեն բան և յաւիտեան կը հսկէ. Նա՛ է առաջին և Նա՛ է վերջին. ահա՛ Նա է միայն՝ որ յաւիտեան կը մնայ ։ Մեր այս սկզբունքին ճշմարիտ ըլլալն ապացու-ցանելու համար կ'ուզենք ներկայացընել արդի գտնո-ւած բաներն ապագայ սերունդին, որ ծանօթանայ թէ ինչե՛ր եկած են մեր աշխարհին մէջ. արդ կը գըլ-տորենք ժամանակին շրջանին մէջ մեր պատմութեան գիրքն, որ անոր ամեն շրջանին հետ վերադառնալով ամեն հանդըպածին իր թղթերը բանայ ։ Այս մեր կամ-քին գործադրութեանը՝ ժամանակն ալ կ'օժանդակէ, վասն զի ան որ ամեն բան կը ջնջէ, կը խնայէ միայն յիշատակը, զոր սերունդէ սերունդ յաջորդաբար կ'ա-ւանդէ իբր յաղթանակ իր անդթութեան, որով կը խորտակէ ներկային գոռոզութիւնն անցելոյն տուգա-նքը ։ Մեմփիս, Արեգ Աթէփէ իր մեհեաններովն ու 120 սիւներու վրայ շինուած հրաշակերտ պալատովը, իրենց փառաւոր շէնքերովը, կոթողներովն ու արձան-ներովը պիտի անհետանան ։ Պիտի անհետանայ Մեմ-նոնի արձանն ալ, որ այսօր այնքան ներդաշնակաւոր ձայ-ներ կը հանէ՝ քանի որ արեւին ճառագայթները վրան զար-նեն ։ Տե՛ս Ոսիմանդի պալատն այնքան հռչակաւոր, տե՛ս ինչ աշխատութեամբ ձեւացուցեր են ճարտարարուեստ պատկերներով ու քանդակներով Բակտրիացւոց վրայ իր ըրած յաղթութիւնն, և ոչ իսկ փոքրին պիտի մնայ այս պալատէն, ինչպէս նաև իր 365 կանգուն շրջապատ

ունեցող ոսկի շրջանով գերեզմանը, որուն չորս կողմեաստուածներուն արձանները կանգնեցուցած են պահպանութեան համար։ Փիլոնի ու Ասիքիսի բրգունքը պիտի փրթին իյնան, և ահագին ու հիանալի լաբիւրինթոսն ալ պիտի լափէ ժամանակը։ Սեսոստրի 'ի յիշատակ իր յաղթութեանցը կանգնած արձաններն, և այն հարիւր փառաւոր մեհեանները, Պեղուսիոնէ մինչև Արեգ 1500 ասպարէզ շինած պարսպին մէկ քարն անգամ՝ չը պիտի մնայ։ Նաւորդաց լոյս տալու համար Աղեքսանդրիոյ նաւահանգստին բերանը՝ Փարոս կըղզւոյն մէջ Պտղոմէոսի կանգնած գերահրաշ աշտարակն ալ պիտի մարի։ Նեքաւովի սկսած և Պտղոմէոսի լմընցուցած կարմիր ծովը Միջերկրականին միացնող ջրանցքըն ալ պիտի գոցուի։ Եկբատան պիտի մերկանայ մէջէ մէջ բարձրացած եօթն պարիսպներէն։ Պիտի կործանին բազմահարուստ ամրապարիսպ Ակրագանդ իր Բաղերեան հռչակաւոր ցլովը, Աթենասայ տաճարըն ու Յունաստանի հրաշակերտ արձանները։

Օր պիտի գայ՝ որ ոչ ևս պիտի տեսնեն նաւավարք Հռոդոսի նաւահանգստին բերնին վրայ Հռոդացւոց շինած պղինձէ մեծ արձանը։ Այո՛, բան մը չը պիտի դիմանայ, ո՛չ Կրետէ կղզւոյն բաւիղը, ո՛չ Եփեսոսի Արտեմեայ տաճարը, ո՛չ Սամոս կղզւոյն Հերայի տաճարը, ո՛չ Դեղփիսի Ապողոնի տաճարը, ո՛չ Ողիմպեան Արամազդայ տաճարն և ո՛չ ալ Ամենադէից մեհեանը։ Անդուլ ժամանակն ոչ միայն այս ամրապինդ շէնքերն արմատախիլ կը ջնջէ, ասոնք՝ որ անզգայ անիմաստ նիւթեր ըլլալով կարող չեն ինք զինքնին պաշտպանելու անոր բուռն յարձակմանց դէմ, և հետզհետէ կը քայքային կ'ըսպառին, այլ նաև այն բանական կենդանիներն ալ, այն հզօր թագաւորներն ալ, այն հանճարներն ու ազգերն ալ՝ որ իրենց իմացականութեամբ

ինք զինքնին պահպանել կը ջանան, իրենց զօրութեամբն ամեն բան յաղթել կ'աշխատին, իրենց հանճարովն անոր գիւտագործելու հնարքներ կը հնարեն, անոնք ամենն ալ դարձեալ կը նուաճին. յաղթանակը ժամանակին է, վասն զի Աստուա՛ծ անանկ տնօրինած է 'ի յաւիտենից՝ որ ինչ որ կը կանգնի՝ պիտի իյնայ, ի՛նք միայն կանգուն փլատակաց վերեւը ։ Ի զուր պիտի փնտռէ ապագայ սերունդն իր նախնիքը, մեր աշխարհի մարդիկն, այս ազգերն. ամենակուլ ժամանակն անոնց ամենն ալ յաւիտենական չիրմին տակ պիտի խռկէ, և զամենայն հող պիտի դարձընէ ։ Այն ամրափակ դերեզմանին մէջ պիտի թաղուին Ասիոյ և Հնդկաստանի տիրող, Նեթովպացիներուն յաղթող, Սկիւթացիներն ու Դանայիսի բնակիչները հնազանդեցընող, կապադովկիան հարկատու ընող ա՛յն աշխարհակալ Սեսոստրը. հո՛ն չը պիտի ունենայ չորս թագաւորներով լծեալ կառքը ։ Ասիոյ մեծ մասը նուաճող Նինոսը, Սոտեր պատուանուն ունեցող Պտղոմէոսն, Աստուածաշունչ սուրբ գիրքը թարգմանել տուող Պտղոմէոս թագաւորը ։ Արշակ, Վաղարշակ, Օրոտաշէս, Տիգրան. ասոնց ամենն ալ գահերնէն խոնարհաբար իջնալով հոն պիտի պառկին. Հերակղէսի, Աքիլլէսի դիւցազնութիւնները հոն պիտի թաղուին ։ Ամէն հիւանդութիւն բժշկելու գաղտնիքը գիտցող Պոդալիր ու Մաքաւոն ինք զինքնին բժշկելու ճարը չը պիտի գտնան ու հասարակաց ճակատագրին մասնակից՝ անոնք ալ հոն պիտի փակուին ։ Լիգուրկոս օրէնսդիր թագաւորը պիտի հնազանդի ժամանակին օրինաց առջև և Դեղփիսի Ապողոնի տաճարէն ա՛լ ետ չը պիտի դառնայ ։ Կրեսոս իր անբաւ գանձերն ու կարասին պիտի թողու, մե՛րկ ու չքաւոր իր ոսկերներուն քով պիտի փտտի հոն ։ Թեմիստոկլ իր փառասիրութեան վախճանը հոն պիտի տեսնայ, և

Միլտիադէսի հետ յաւիտենական քնոյ մէջ պիտի ըն-
կղմին ։ Քսերքսէս իր միլիոնաւոր զօրքերուն ՝ բանակը
հոն պիտի զետեղէ , և հայրենիքը դառնալու համար
ձկնորսի նաւակ մ'ալ չը պիտի գտնայ հոն ։ Նոյն չիրմին
տակ պիտի մնան Կիմոն և Պերիկլէս պերճախօս ․ հոն
Արամազդ անոր բերնովը չը պիտի որոտայ ։ Աշխարհա-
կալն Փիլիպպոս ․ նա՛ ալ իր ընկերներուն պիտի երթայ
խառնուի ․ հո՛ն իր մահկանացու ըլլալն իրեն յիշել տա-
լու համար՝ քովը մասնաւոր մարդ մ' ունենալու կա-
րօտութիւն չը պիտի ունենայ ։ Հո՛ն պիտի ամփոփի մե-
ծըն Աղեքսանդր , որոյ փառասիրութիւնը ծիր և հորի-
զոն չունեցաւ աշխարհիս վրայ ․ Աղեքսանդր՝ յաղթող
Գետացւոց , Թրէկացւոց , Տրիբաղաց , Լիւլիկեցւոց ,
Թեբացւոց ․ Աղեքսանդր՝ որ կործանեց զԹեբէ , յաղ-
թակալեց զՀայս և միահեծան ինքնակալեց այնքան թա-
գաւորութեանց և բոլոր Յունաստանի ․ դողացուց Ըգ-
Պարսիկս , հնազանդեցուց զՓիւնիկէ , զԿիւրոս , Գազա,
Սոգդիանէ , Սկիւթիա , Բաբելոն , և մինչև Գանգէսի
եզերքը տարաւ իր յաղթող ու աշխարհաւեր սուրը ․
ա՛ն ալ հոն պիտի կծկի ։ Փիլոպեմէն ալ Յունաստանի
դուռներն երևելի և հռչակաւոր անձանց դէմ ամուր
մը փակելով , անոր փառքն ու ազատութիւնն իր ծո-
ցը դրած , նոյն անդնդին մէջ պիտի թաղուի ։ Վերջա-
պէս , ո՛չ երաժիշտ , ո՛չ բանաստեղծ , ո՛չ նկարիչ , ո՛չ
պատմաբան , ո՛չ ճարտասան , ո՛չ բժիշկ , ո՛չ իմաստուն
և ո՛չ մէկը հոս չը պիտի մնան ։ Լինոս ․ Հոմերոս , Պար-
րասիոս , Քսենոփոն , Դիմոսթենէս , Սողոն , Սոկրատ ,
Պղատոն , Արիստոտէլ , Թալէս և որ մէկն ըսենք , մին-
չև Մինեկրատ ինքնակոչ Արամազդը թագ 'ի գլուխ
ցուպ 'ի ձեռին կրկին կենդանութիւն շնորհելով յա-
րուցած մարդոցն հետ այն խաւարչտին բանտին մէջ
պիտի թաքչին , ուր արեգակն ալ չը կրնար սահիլ ըն-

պրգևը՝ որ իր լուսոյն ճառագայթովը ցամքեցունէ թալկացեալ բանտարկելոց արտասուքը ։

Այո՛, ահա ասանկ ամէն բան ժամանակին առջև պիտի խոնարհի »։

Երբոր ամենայն ուշադրութեամբ մտիկ կընէի, յանկարծ սպասաւորս ինձի ձայն տուաւ, որպէս զի ըզգուշանամ սենեկին որմէն 'ի վար իջնող կարիճին խայթելէն. վասն զի այս տաք կլիմաներուն մէջ գրեթէ ամէն տեղ կը գտնուի այս խայթիչ կենդանին, որուն կճած տեղին վրայ իսկոյն տիղմ կը դնեն. Սպասաւորիս ձայնելէն սթափելով իմ խորին զգացումներէս, կորուսի ամէն բան աչքիս առջևէն և սկսայ մտածել տեսած սոսկալի երազիս վրայ՝ որ այսօր սոսկալի իրողութիւն մ' եղած է ։

## · ՊԱՂՏԱՏ ·

Պաղտատ՝ Ալ—Ճեզիրէի մէջ Տիգրիսի ձախ եզերքին վրայ շինուած, այս անունով փաշայութեան մայրաքաղաքն է ։ Աշխարհագրական երկայնութիւնն է 42° և լայնութիւնը 33° ։ Ունի 80,000 բնակիչ, 20,000 տուն. որոնց՝

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 7500 | տունը | Մահմէտական . | 6000 | տուն | Արաբացի . |
| 6000 | " | Հրեայ . | 104 | " | Հայ . |
| 180 | " | Քիլտանի . | 176 | " | Ասորի . |
| 40 | " | Եւրոպացի ։ | | | |

Պաղտատ՝ գետի կողմէն զատ ուրիշ ամէն կողմէն աղիւսաշար բարձր պարիսպով շրջապատած է մէկ ժամ տարածութեամբ ։ Պարիսպը շատ անգամ քանդուած աւերուած ըլլալով՝ զանազան ժամանակ նորոգութիւն ած է և արտաքին կողմն ալ խրամ բացուած ։ Այս պարիսպը 4 դուռ ունի ։ Քաղաքին մէջ կան հարուստ

վաճառանոցներ, հրապարակներ, մէկ քանի գեղեցիկ տուներ, իջեվաններ, զինուորանոց, հիւանդանոց և շատ մզկիթներ, որոնց անուններն իրենց շինութեան թուականով հետևեալներն են.

| Թիւ | | | անուանք | տաճկ. թուական |
|---|---|---|---|---|
| 1 | Ճամի—իւլ—Մուրատիէ | | | 870 |
| 2 | „ | „ | Ահմէտիէ | 1221 |
| 3 | „ | „ | Փաշայ | 1133 |
| 4 | „ | „ | Վէզիր | 1008 |
| 5 | „ | „ | Մէհմէտ իւր Ֆաթըլ | 1197 |
| 6 | „ | „ | Ագուլիէ | 1095 |
| 7 | „ | „ | Հայդըր խանէ | 1243 |
| 8 | „ | „ | Մօլլա խանէ | 1242 |
| 9 | „ | | Խասաքի | 1094 |
| 10 | „ | | Ադլիէ | 1170 |
| 11 | „ | | Սէյդ-Սուլթան-Ալի | 1039 |
| 12 | „ | | Հօսէյն փաշայ | 723 |
| 13 | „ | | Շէյխ-Աբդըլ-Ղադըր | 840 |
| 14 | „ | իւլ | Ղափլանիէ | 1134 |
| 15 | „ | | Խըդըր—Բէգ | 1133 |
| 16 | „ | իւլ | Խաթուն | . . . |
| 17 | „ | „ | Խաթուն | . . . |
| 18 | „ | | Նէֆիսէ—խաթուն | 1113 |
| 19 | „ | | Օզբէգիէ | 1242 |
| 20 | „ | իւլ | Ղազէէ | 1112 |
| 21 | „ | | Ալի—էֆէնտի | 1130 |
| 22 | „ | | Ահմդ—էֆէնտի | 1220 |
| 23 | „ | | Նաամանիէ | 1197 |
| 24 | Մըսճըդ | | Գանճ Օսման | . . . |
| 25 | Ճամի | | Համ-իւլ-Մահլըհ | 1162 |
| 26 | „ | | Համ-իւլ-Մահլըհ | . . . |
| 27 | „ | իւլ | Մահդիէ | . . . |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 28 | ճամի | | Դամբար—Ալի | 1201 |
| 29 | " | | Բաբուլ—Աղայ | . . . |
| 30 | " | խուլ | Սէյաղ | 1118 |
| 31 | " | | Հաջ—Էմին | . . . |
| 32 | " | | Շէխ-Սրաջ-Ուդդին | 1192 |
| 33 | " | խուլ | Ղըզլաղէ | . . . |
| 34 | " | | Հաջ—Ֆըլթհի | . . . |
| 35 | " | խուլ | Նաամանի | . . . |
| 36 | " | | Սուգ—ըլ—Ղըզըլ | 1116 |
| 37 | " | | Քնաթուլ—Հասան | . . . |
| 38 | " | | Շէխ—Շհաբուդդին | 1115 |
| 39 | " | խուլ | Մուջանիէ | 758 |
| 40 | " | | Իմամ-Ազամ (Աբու Հանիֆէ) | 1115 |
| 41 | " | | Իմամ-Մուսա-Ըլքադըմ | . . . |
| 42 | " | | Մաշհէդ-Սլի ('ի Նէջէֆ) | . . . |

Ասոնցմէ զատ կան նաև փոքր մզկիթներ ալ։

Բաղնիքներ, որոնց անուններն հետևեալներն են.

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Համամ—ըլ—Ղոր | | | 2 | Համամ—ըլ—Ելթեիմ | | |
| 3 | " | " | Քաշէ | 4 | " | " | Ռէջբ |
| 5 | " | " | Մաշհ | 6 | " | " | Շորջէ |
| 7 | " | " | Սեխիդ | 8 | " | " | Ալեի |
| 9 | " | " | Հէյտէր | 10 | " | " | Ղադի |
| 11 | " | " | Գմրուկ | 12 | " | " | Քինջեալի |

Խաներ, որոնց անուններն հետևեալներն են.

1 Խան—ըլ Ղուուր
2 " " Ջքզլէր քէհեասի մեծ
3 " " " " փոքր
4 " " Մերջան
5 " " Օրթմէ
6 " " Տավուտ փաշայ մեծ
7 " " " " փոքր
8 " " Տէֆթէրտար

9 խան—ըլ Քեթան
10 " " Բեքիր
11 " " Մեխողում
12 " " Ադլիեէ
13 " " Ջեն մուրատ
14 " " Մեմելեզի
15 " " Քաղեզի
16 " " Վեզան
17 " " Կումրուկ
18 " " Շըղալ
19 " " Հեուխու
20 " " Սֆֆխու հին
21 " " " Նոր
22 " " Թուլթըն
23 " " Ջեզաղին
24 " " Սուլթան հմուդի
25 " " Ռըմահ
26 " " Մըսալչէ
27 " " Մոպղէ
28 " " Քեպապչիէ
29 " " Բըզընլի
30 " " Թեմու մեծ
31 " " " փոքր
32 " " Հննէ ընդրեժ
33 " " Զըղ՞
34 " " Ջաչ
35 " " Հաջի խլդ
36 " " Ըուզեիչ
37 " " Ջդիդ
38 " " Եոհուդ
39 " " Ահմէդ աղայ
40 " " Մեչէ

41 խան — Ըլ Տհըն
42 » » Քինչ աղայ
43 » » Ումեր բէգ
44 » » Նեջիբ փաշայ
45 » » Քմեք
46 » » Սոքըլ զեզլ
47 » » Ջո
48 » » Սըղալին

Հայոց 2 եկեղեցի, որոնց մէկը՝ Ս. Աստուածածնայ անուամբ կառուցեալ 1638 թուականին Քրիստոսի, քաղաքին արեւմտեան հիւսիսային կողմը՝ Մեյտան կոչուած թաղին մէջ. և միւսը՝ յանուն Ս. Երրորդութեան կառուցեալ 1852 թուականին, Շօրջէ կոչուած թաղին մէջ։ 1 եկեղեցի քըլտանցւոց, 1 եկեղեցի ասորւոց, 1 եկեղեցի լատինաց, 1 եկեղեցի հայ հռոմէականաց։ Կան նախակրթական դպրոցներ իւրաքանչիւր ազգաց։ Տաճկաց նախակրթական դպրոցները՝ որոնց թիւը 100 էն աւելի է, ամայի մնացած հին մզկիթներու անկիւններու կամ զանազան թաղերու մէջ գտնուած Վախըֆի կալուածներու մէջ աղքատիկ դրութեամբ շինութիւններ են, ուր հասարակ մոլլաներ 20—30 ի չափ տղայոց մինչեւ Գուրան կարդալ և արաբերէն ու տաճկերէն գրել կը սորվեցունեն, իւրաքանչիւրէն 4—5 ղուրուշ ամսական առնելով։ 15 ի չափ մեդրեսէներ, երեւելի մզկիթներու մէջ, որոնց դասատուները գիտնական էֆէնտիներ են՝ Էվգաֆի կողմանէ տարեկան թոշակով կարգուած։ Շատ մը հոյակապ շինուածներ, որոնց երեւելիներն են՝ Հարուն—էլ Ռէշիտի կնոջ Զօպէիտի և Շէյխ—Ապտ—իւլ—Գատիր—Ճիլանիին գերեզմանները. փաշային պալատը (սարայ). մաքսատունը՝ որ Ապպասիէ խալիֆաներու շինութիւնն է։ Սուգըլ Ղըզըլի Մինարէն՝ որ Ապպասի խալիֆայից ժամանակէն մնացած հին ու բարձր շի-

նուած մ'է, որուն չուրջը ոչ մշկէթ կայ հիմայ և ոչ աղօթատեղի ։ Տուներն առհասարակ աղիւսակերտ են՝ 6 էն 12 կանգուն բարձրութեամբ . կը գտնուին նաև քարաշէն ու փայտաշէն տուներ ալ, որոնց ձևը Մուսուլի տուներուն կը նմանի . փողոցին կողմը պատուհան չունին, և ամառնային գետնայարկ (սէրտապ) ունին ։ Փողոցներն ընդհանրապէս նեղ ու անկանոն են . իւրաքանչիւր ազգ ղատ ղատ թաղերու մէջ կը բնակին ։ Բընակիչներն անկիրթ են, բայց հիւրասէր ։ Կը շինեն սեկ (տախթապան), թամբի գործածներ (տուրամէնչէ), մետաքսէ, բամպակէ ու բրդէ կերպասներ, կտաւներ ։ Կ'ընեն ոսկերչութիւն, ներկարարութիւն, ոստայնանկութիւն, որմնադրութիւն, հիւսնութիւն, զինագործութիւն, դարբնութիւն, երկրագործութիւն ։ Կը ծախեն նաև թնդանօթ՝ յատուկ ձուլարանի մէջ ։ Քաղաքիս վաճառականութիւնն առհասարակ Պարսկաստանի, Հնդկաստանի, Արաբիոյ և Թուրքիոյ վրայ է ։ Քաղաքիս երեւելիները, զինուորական ու քաղաքական պաշտօնականներն ու բոլոր օտարականները սպիտակ հանդերձներ կը հագնին ամառ ատեն, տակէն բարակ շապիկ մը, վրայէն ալ կանեփ կամ բամպակ կտաւէ էնտրէ և ջուպպէ ։ Հասարակ ժողովուրդն ու արաբացիները՝ թեւերն երկայն շապիկ, վրայէն բամպակեղէն էնտրէ կը հագնին . մէջքերնին գօտի և սպիտակ կամ սեւ վերարկու (մէշլահ), գլուխնին ֆէսէ, վրայէն էնէ փաթթած ։ Կիները բամպակէ Տրապիզոնի սպիտակ կամ ներկուած վերարկու մը կ'առնեն վրանին, որով գլուխնին ալ կը ծածկեն, և երեսնին ալ սեւ բարակ չկտաւէ կամ ձիի մազէ շինուած քօղով մը կը գոցեն ։ Ազնուական կանայք երբեմն ոսկէթել հիւսուածքով մետաքսեայ կտաւէ վերարկու մը կառնեն .

Քաղաքիս ջուրը Տիգրիս գետինն է և լաւ է . բայց

քաղաքին բոլոր ապականութիւնը՝ ինչպէս որ ուրիշ ամէն գետեզերեայ քաղաքներուն ու գիւղերունը, գետին մէջ կը թափի ու գետին հոսանքը դանդաղած ժամանակ ջուրին երեսը յայտնի կ'երեւայ. ուստի քաղաքացիք ու մասնաւոր ջրկիրներ առհասարակ գետին վերի ծայրի կողմէն ջուր կառնեն, և իրարու տակ դրուած տեսակ մը սափորներուն վրայինին մէջ կը լեցունեն, որուն մէջէն մզելով կաթիլ կաթիլ տակի սափորին մէջ կը հաւաքի. այս հաւաքուած ջուրը մաքուր ու յստակ է, զոր կը գործածեն միայն խմելու և կերակուրի։ Այս ջուրը պաղեցունելու համար ալ տեսակ մը հողէ մանր ամաններու (չէրդէ) մէջ կը լեցունեն և գիշերները մինչև առաւօտ օդին կը դնեն. անկէ ետքը այս ջուրը ցերեկն ալ չի տաքնար չէրդէէն յատկութենէն. վասն զի չէրդէն շարունակ ծծելով իր մէջի պարունակած ջուրը՝ միշտ թրջած կը մնայ և հովն ալ քանի վրան փչէ, մէջի ջուրը աւելի կը պաղի։ Աղքատ բնակիչներն առանց զտելու գետին աղտեղի ջուրը կը խմեն և ուրիշ ամեն պիտոյից կը գործածեն։ Օդը բաւական առողջ է. ամառը սաստիկ տաք կըլլայ ցերեկները. ժամը 4 էն մինչև 12 կիզող հովեր (սամ եէլի) կը փչեն. 12 էն ետքը՝ գիշերը ցուրտ կըլլայ և պաղ հովեր կը փչեն։ Ջերմ և թանչք dyssenterie հիւանդութիւնները շատ կը պատահին հոս. և հալէպ չըպանի նման՝ մորթոյ հիւանդութիւն մը միշտ կը տիրէ, որ կըսուի պաղտատ չըպանը, զոր երկրացի և օտարական անխտիր կը հանեն մէկ անգամ մը միայն։ Երկրացիներն առհասարակ տարեկան մը ըլլալուն վերջը կը հանեն, բայց օտարականներն այս հողերուն մէջ ոտք կոխելնուն քանի մը օր ետքը կանուխ կամ ուշ, երբեմն ալ տարիներ անցնելէ վերջը, թէ և իրենց հայրենիքն ալ դարձած ըլլան։

## ԲԱԲԵԼՈՆԻ ԿԱՄ ԴԱՄԱՍԿՈՍԻ ԿՈԿՈՆ

### Պաղտատ կամ Հալէպ չըպանը(1)։

Ասիկա մորթոյ ախտ մ՚է, կեղալից, խեցամորթի ձևով և երկարատև, որ կը տիրէ Ասորեստանի և Միջագետաց բոլոր սահմաններուն ընդարձակ տարածութեանց մէջ, զորօրինակ. Ուֆայ, Մուսուլ, Տիարպէքիր, Հալէպ, ևն. ևն.։

Այս ախտը մարմնոյն վրայ մէկ կամ շատ խումբ կոկոններ կամ երբեմն միակ կոկոն մը դուրս կուտայ, որուն սկսիլն ու վերջանալը միշտ մէկ տարի կը տևէ. երբեմն ալ աւելի և վերջն իր տեղն անջինջ սպի մը կը ձգէ. Մի և նոյն անձի վրայ իր բոլոր կենացը մէջ միայն մէկ անգամ կը պատահի։ Կոկոնը միակ եղած ատեն արու, և բազմապատիկ եղած ատեն էգ կըսուի ըստ արաբացւոց։ Արուն սովորաբար ընդարձակ ու մեծ կըլլայ. բայց էգը փոքրիկ և մարմնոյն զանազան կէտերուն վրայ փուլի պէս ցրցըլնած։ Էգ կոկոնները ամէնը մէկէն երևան կելնեն, որոնց թիւը միշտ անորոշ ու անհաստատ է, և մինչև 77 գլխաւոր կոկոն մի և նոյն անձին վրայ տեսնուած է բայց 'ի փոքրիկներէն, որ անոնց ամեն մէկին բոլորտիքն եղած կըլլան։ Արու և էգ կոկոնները տարբեր տեսակ ախտեր չեն. երկուքին ալ ընթացքը, տևողութիւնը, վախճանը միշտ միօրինակ են։ Կոկոնը 'ի սկզբան փոքրիկ բան մ՚է, ոչ ցաւ կուննենայ և ոչ բարձրութիւն մը կը ձևացընէ մորթոյն վրայ և հազիւ կը տեսնուի։ Առջի օրերուն մէջ ծանր կաճի, և մինչև 3 ամիսէն ետքը կաղնոյ չափ

(1) Bouton de Bagdad et d'Alep.

կը մեծնայ, կը կարմրի և շատ կը ցաւի ։

Անկէ ալ մինչև երկրորդ եռամսեայ շրջանին վէրքը կը շարաւանայ ու կեղ մը կը շինէ, որուն լայնութիւնը սովորաբար մեթալիկ քառասնոցի չափ կ'ըլլայ, երբեմն ալ աւելի մեծ և մինչև արծաթ չէյրէկ տարածութեան չափ ։ Մէկ խոնաւ և սպիտակագոյն կեղև մը շարունակ կը ծածկէ սոյն կեղին մակերևոյթը, որ մերթ ընդ մերթ փրթելով կամ ճեղքուելով մէջի շարաւը դուրս կուտայ, և դարձեալ կը նորոգի, և ասանկ յաջորդաբար մինչև վէրքը կը շարունակէ ։ Բաւական շարաւ կը գոյանայ առհասարակ դեղնագոյն և անհոտ, և երբեմն ալ գարշահոտ ։ Այս կեղևին բարձրութիւնը խիստ շատը 0,01 մէթրոյի կը հասնի ․ Կեղը ասանկ շինուելէն ետքը 5—6 ամիս կը տևէ ․ և վէրքը կսպիանայ ։ Ահա կոկոնի սկզբնաւորութենէն մինչև կատարեալ սպիանալը ընդհանրապէս դրեթէ տարի մը կը տևէ ։ Այս կեղը չորնալ ու գոցուելէն ետքն՝ իր տեղը տձև, ճնշուած ու խորունկ սպի մը կը ձգէ, որ նախ կարմիր գոյն մը կունենայ և հետզհետէ գոյնը կը կորսնցունէ և անջնջելի կը մնայ ․ Կոկոնը առհասարակ մարդուն դէմքին վրայ, մանաւանդ այտերուն վրայ կ'ելնէ, երբեմն ալ մարմնոյն ուրիշ կողմերուն վրայ ։ Բնիկ երկրացիներն առհասարակ մինչև երկու երեք տարեկան անպատճառ սպիի հանեն ։ Երբէք տեսնուած չէ՝ որ երկրացի տղայ մը մինչև 10 տարեկան ըլլայ ու կոկոն չը հանէ ։ Կաթնասուն մանկանց համար հազուադէպ է ։ Օտար երկիրներէն այս կողմերուն մէջ բնակութիւն հաստատող անձանց համար չէ ըսածս ․ ասոնք երբեմն վեց ամսուան մէջ, երբեմն տարի մը, երկու, մինչև տասը և աւելի ևս անցնելէն ետքը կը հանեն ։ Սա միայն փորձով հաստատուած է որ երբէք օտարական մը չը կրնար զերծ մնալ այս ախտէն, թէ և ձգէ այս երկիրն ու հե-

ռանայ անկէ . վասն զի մինչ իր հետ կը կրէ հիւանդութեան թաղուն սերմը ( germe en incubation ) ։ Օտարական մը նաև 3—4 օր ալ միայն կեցած ըլլայ այս հողերուն մէջ , անպատճառ կանուխ կամ ուշ պիտի հանէ զանի ։ Սակայն մէկ քանի հազուագիւտ բացառութիւններ կան . զորօրինակ . Ժերման անուն անձը՝ 69 տարի Հալէպ նստաւ և 85 տարեկան մեռաւ առանց կոկոն հանելու ։ Նոյնպէս Պարոն Ցիզօ , որ 30 տարիէն աւելի է որ Հալէպէն ելած է , մինչև հիմա անարատ մնացեր է ։ Նոյնպէս ես , սպասաւորս և 40 ճանապարհորդակիցներէս 4 ը մինչև հիմա 18 տարի ազատ մնացեր ենք , թէպէտ և շաբաթներով այս վայրերուն մէջ բնակեցանք ու շրջեցանք .

Կըսուի որ խուլագարներուն (սըռաճայլը , scrofuleux ) ու ափրոդիտեան ախտէն բռնուածներուն (ֆըրէնկի , syphilis ) վրայ կոկոնը շուտ մը երևան կելնէ աւելի ուժով և աւելի ծանր կերպարանքով մը ։ Փորձը կը սորվեցունէ թէ կոկոնը բուժելու համար միակ լաւագոյն դեղը՝ զանի չը խառնելն է միայն . ուստի պէտք է կեղը մաքուր բռնել շարունակ դաղջ ջուրով լուալով .

Բժիշկներէն ոմանք կըսեն որ 3—4 ամսական կոկոն մը չարաւանալու սկսելէն առաջ կրակով երելով համառօտած են անոր տևողութիւնն ու տարածութիւնը ։ Հաստատուած է որ կոկոնը տարափոխիկ չէ . երբէք տեսնուած չէ որ ախտակիր երկրացի մը օտար երկիրներ՝ ուր որ հիւանդութիւնը չը տիրէր , դացած ու հոն իրմէ ուրիշի մը փոխադրելով տարածած ըլլայ այս ախտը ։ Պէտք է գիտնալ նաև որ պատուաստելու փորձերըն ալ ապարդիւն մնացած են . շատերն աշխատեցան որ պատուաստով դոնէ կարող ըլլան դէմքէն զատ ուրիշ տեղի մը վրայ զանի արտադրելու , որով ախտակիրը զերծ մնայ այն տգեղութենէն՝ զոր կը պատճառէ

կոկոնին տձև սպին անոր դէմքին վրայ անջինջ դրոշմելով ։ Կոկոնը շուներուն վրայ ալ կերևէ ։ Այս տեղական և տիրող հիւանդութեան բուն իսկ պատճառն իմանալը դժուար է . այս խնդիր մ՚է , որ մինչև հիմա յայտնի ապացուցական վկայութեամբ լուծուած չէ ։ Բժիշկներէն ոմանք կը կարծեն թէ պատճառը ջուրն է ․

Պաղտատի բանակին կեդրոնը հոս է , ուր միայն 3 գունդ զօրք կը գտնուէր ։

Գետին աջ կողմին վրայ և քաղաքին դէմ շինուած է արուարձանն , ուր կը բնակին արաբացիներ , խրճիթներու , վրաններու , հողաշէն և մէկ քանի ալ փայտաշէն տուներու մէջ ։

Գետին վրայ Պաղտատէն մինչև արուարձանը 600 ոտնաչափ երկայնութեամբ փայտաշէն նաւակամուրջ մը կայ , որ կպրով պատած 27 հատ անարուեստ նաւակներով շինուած է ։

Աբբասեան ցեղէն Աբու—Ճաֆէր—Ըլմանսուր Բ. Ամիրապետը (Խալիֆէ) հիմնեց Պաղտատ քաղաքը՝ Քրիստոսի 762 թուականին կամ 145 թուականին տաճկաց , հին Սելևկիոյ մօտերը ։ Կըսուի թէ այս քաղաքին տեղը Դատ անունով մէկուն այգին է եղեր , որ իր անուամբը Պաղ—իւլ—Դատ կը կոչուէր եղեր . վասն որոյ Ըլմանսուր՝ քաղաքը հիմնարկած ժամանակը մի և նոյն անունը պահելով Պաղտատ անուաներ է ։ Այս քաղաքը հինգ դար շարունակ արաբացւոց տէրութեան մայրաքաղաքն եղաւ . Քրիստոսի 1258 թուականին ( 656 հիճրէ) Ճինկիզ խանի չորրորդ զաւակը՝ Հուլակու անուն բռնակալը նուաճեց քաղաքն և 150 տարի շարունակ տիրապետեց . անկէ ետքը պարսկաց ձեռքն անցաւ . և 1534 ին (940 հիճրէ) Սուլթան Սիւլէյման տիրեց քաղաքին մինչև 1623 թուականը , երբ քաղաքացիք ապստամբեցան . և վերջապէս Սուլթան Մուրատ

Դ. երկար ատեն պաշարելէն ետքն՝ առաւ 1648 թուականին՝ (1048 հիճրէ) Պարսից ձեռքէն .

14 օր կեցանք Պաղտատ, ուր շատ հիւանդներ դարմանեցի և 1000 ի մօտ պատուաստ ըրի ։

Մարտի 24 ին երկուշաբթի օր ժամ 3 ½ Տիգրիսի վրայ նաւել սկսանք Պասրա երթալու համար ։

Կուսակալն, պաշտօնակալներն և քաղաքացւոց երեւելիներն ուղեկից եղան մինչև Պաղտատի նաւահանգիստն, ուր պատրաստ էին դրօշակակիր երկու նաւակներ մեզի համար, և մէկ ալ մեծ ու բարձր նաւ մը կահ կարասեաց և պարէնի համար ։ Այս նաւակներուն երկայնութիւնն էր 25 կանգուն . ունէին մէկ մէկ սենեակ (քէօշք) բենճերելի 8 պատուհաններով, 20 ական թի, առագաստ կրող մէկ մէկ հաստ կայմեր, 3 ական թնդանօթ և պահապան զօրքեր ։ Նստանք նաւակներն ու ելանք ճամբայ . Քաղաքը թնդանօթներով բարևեց մեզ . կամուրջը բաց էր . յաջող հով մ'ուռեցուց առագաստները . թիավարներն ալ սկսան քաշել, և գետին ընթացքն ալ նպաստելով նաւակները թռան լարեալ աղեղէ մ'ելած նետի պէս, և շուտ մը ամեն բան կորսնցուցինք աչքերնուս առջևէն ։ Պաղտատի արուարձանը շատ մը ծառաստաններ կը ներկայացնէր և քաղաքին պարսպէն անդին արմաւենիի անտառներու մէջէ կը սպրդէինք, որոնց մէջ արաբացիներու բնակութիւններ կը տեսնուէին և կանայք մեր ճանապարհը կ'օրհնէին ։ Հազիւ ժամ ու կէս անցաւ, այս գեղեցիկ տեսարանն ալ կորսնցուցինք . անկէ ետքը չոր անապատներէ զատ բան մը չէինք տեսնար, միայն թէ տեղ տեղ արտեր .

Պաղտատէն մինչեւ բաւական հեռաւորութեամբ վար՝ գետին ջուրը խիստ պղտոր ըլլալուն անկարելի էր խմելը . վասն որոյ մեծ սափորներու մէջ լեցունելով

ղուելէն ետքը կը գործածէինք ։ Այսօր հովը շարունակ յաջող ըլլալով՝ առագաստները չը պարպուեցան ։

Պաղտատէն 6 ժամ հեռի գետին ձախ կողմը եզերքին վրայ իջանք ժամ 9 ին ։ Հոս ձիեր պատրաստուած էին, նստանք ու գացինք Հօշբէնի—Սէլմանի Բաք—Չէօշբէնհանէսի ըսուած տաճկաց ուխտատեղին՝ գետէն մէկ քառորդ ժամ հեռի ։ Ասոր մօտն էր Տէվանի Քէսրա ըսուած շէնքի մը մնացորդը, որուն լայնութիւնը 20 կանգունի, բարձրութիւնը 20 կանգունի և երկայնութիւնը 60 կանգունի չափ էր. Հոս աւանդաբար կըսեն՝ թէ այս Նուշիր—ըէվան թագաւորին կառատան մնացորդն է, որ ըսել է 2500 տարուան շէնք է. Պատերը տեղ տեղ ճեղքըռտած էին, և կամարը տեղ տեղ փլած փլփլկած, պատերուն փայտէ հեծանները դեռ չէին փտտած ։

Ուխտատեղիէն ետ դառնալով գիշերը նաւերուն մէջ մնացինք

Մարտ 25 ին երեքշաբթի առտու ժամը 11 ½ ին՝ նաւակներուն առագաստները բացին, թիավարները թի քաշել սկսան մինչև իրիկուն. ժամը կէսին գետին աջակողմը Պօղտարէ անուն տեղը հասանք, ուր մարտկոց մը կար և քիչ մ'ալ անդին պարիսպը ։ Մինչև հոս դարձեալ երկու կողմը անապատ էր ։

Մարտի 26 չորեքշաբթի օր առտուն ժամը 12 ին նաւակներն սկսան ճամբայ ելնել. այսօր գետին երկու եզերքներուն վրայ կուգային կը մօտենային շատ մ'արաբացիներ զաւկներով ու կնիկներով, կը պարէին կ'երգէին կ'օրհնէին Սուլթանն ու Պէյը, և 'ի նշան ուրախութեան նուիրել կուզէին իրենց գեղեցիկ ոչխարները. Վերջն իրենց խեղճութիւնը լալով կըյայտնէին և դարման կը խնդրէին։ Մօտեցանք գետեզերքին. Սենեկապե-

որ դրամական օգնութիւններ ընելով քաջալերեց զանոնք։ Այս արաբացիները կուսակալին չէին հնազանդեր․ իրենց շէյխերուն իշխանութեանը տակն էին ։ Ասոնք միայն շապիկով մը ձիերու ([illegible]) վրայ հեծած՝ ձեռքերնին մէկ մէկ [illegible] առած՝ կարավաններ կը կողոպտեն մարդասպանութիւններ կընեն ։

Իրիկուան ժամը 10 ին գետին աջ կողմը ելնելով գիշեր կեցանք ։

Մարտի 27 հինգշաբթի առտու ժամը 11 1/2 ին նաւակները ճամբայ ելան ։ Այս կողմերը գետը շատ ընդարձակ էր․ երկու կողմի անտառներուն մէջ և մինչև գետեզերքներուն վրայ թուփի պէս մանր ծառերով անտառներ կային, որոնց մէջ տեսակ տեսակ անասուններ կը գտնուէին, առիւծ, խոզ, ինձ, ճագար, զանազան թռչուններ, որ գետէն ջուր խմելու կը դիմէին ։ Այս անտառներուն մէջ՝ մանաւանդ գետոյն վրայ ամեն տեղ ասանկ ամառնային եղանակներուն մէջ անթիւ ճանճեր կը գոյանան, որ կը խայթեն և ճանապարհորդը խիստ անհանգիստ կընեն ։

Իրիկուան ժամ 11, գետին աջ կողմը ելանք, ուր պարիսպ մը կար ։ Հոս գիշերը անցուցինք ։

Մարտ 28 ուրբաթ օր առտուան ժամ 11, նաւակները ճամբայ ելան և իրիկուան ժամ 10 1/2 ին մօտեցանք [illegible] ըսուած տեղը, ուր կար վրանաբնակ արաբացիներու բնակութիւն։ Հոս Տիգրիս երկուքի ճղքուելով կղզի մը կը ձևացունէ, որ կըսուի [illegible] ։

Մարտ 29 շաբաթ առտու ժամ 11, նաւեցինք և երեկոյին գետին աջ կողմը կեցանք ։

Մարտ 30 կիրակի առտու ժամ 12, Նաւեցինք և 4 ½ էն գետին ձախ կողմը կեցանք։

Մարտ 31 երկուշաբթի առտու ժամ 11, Նաւեցինք և 6 ժամ ետքը գետին ձախ կողմը կեցանք։

Ապրիլ 1 երեքշաբթի առտու ժամ 11 Նաւեցինք. հազիւ 6 ժամ Նաւած էինք՝ հեռուէն տեսանք անթիւ արաբացիներու խումբեր, ձեռքերնին սուր ու վահան, որ արեւուն շառաւիղներէն կը շողային և հրացաններու ճայթիւններ կը լսուէին։ Այս յանկարծադէպ տեսարանը քիչ երկիւղ չը պատճառեց մեզ. չփոթեցանք և իսկոյն առագաստները ժողովել տալով գետին աջ կողմի եզերքը քաշել տուինք Նաւակներն ու սպառազինեալ ցամաքն ելանք. շուտ մը պատգամաւոր ղրկեցինք անոնց՝ մեր հետ գտնուող սէյիտը, իմացունելու համար՝ թէ մենք պիտի անցնինք, ի՞նչ կը պատասխանեն։ Շատ չանցաւ, մեր պատգամաւորը պատասխան բերաւ՝ թէ կրնանք անցնիլ աներկիւղ, և ըսաւ որ այս պատերազմը նոր չէ, քանի մը ամիսէ 'ի վեր է որ [illegible] կռնեն։ Անոնք օտարականի վնաս չունին, մանաւանդ ձեզի՝ որ իմացած են թէ Սուլթանին փոխանորդն էք. անոնք կը յարգեն ձեզ և ապահովութեան համար՝ ըսաւ, իրենց սէյիտն ալ հետ ղրկեցին։ Այն ատեն մըտանք Նաւակներն ու քաշուեցանք սենեակներուն մէջ, որոնց վանդակաձև փեղկերն (բանջուր) ալ գոցեցին, և աճապարանօք անցանք բանակատեղիէն առանց վըտանգի։ Այս պատերազմն եղած տեղ Շադը երկուքի բաժնուած էր, որուն մէկ ճիւղը կերթայ 'ի Պարսկաստան և միւսը 'ի Պասրա։

Պատերազմի դաշտին մէջ 50—60 հազարէն աւելի մերկ արաբացիներ կային, որոնց շատերն մէկ ձեռքին

մէջ երկաթածայր երկար գուրզ մը կար և միւսին մէջ ալ վահան մը . ոմանք սուսերամերկ էին , ոմանք ալ երկար հրացաններ ունէին . ասոնք խումբ խումբ բաժնուած էին և տեսակ տեսակ դրօշակներ կը կրէին , արևուն տաքէն պատսպարելու համար բոլոր մարմիննուն վրայ տիղմ քսած էին ։ Այս ցամաքային խումբերէն զատ՝ կային նաև հրացանակիր անթիւ գետայիններ , որ շատ մը եղեգնաշէն նեղ ու երկայն նաւակներու ( թուրրատէ և պելեմ կոչուած ) մէջ նստած կը պատերազմէին ։ Պատերազմին դաշտը մեռնող հայրենակցին դիակին քով կը տնկէին ձեռքի գուրզը 'ի նշան քաջութեան և հայրենասիրութեան ։ Այս վայրերէն անդին գետին երկու եզերքներուն վրայ մէկ քանի ժամ շարունակ արաբացւոց մեծ ու երկար սև վրաններ կային , ուրկէ հետզհետէ խումբ խումբ պատերազմին դաշտը կը դիմէին ։ Այսօր մինչև գիշերւոյ 1 ½ ժամը շարունակ նաւելով խաղաղ հեռացանք այս արիւնոտ վայրերէն , և ելանք գետին ձախ կողմը գիշերը լուսցուցինք ։

Ապրիլ 2 չորեքշաբթի օր առտուան դէմ ժամ 9 ին նաւեցինք . քանի մը ժամ ետքը գետեզերքին վրայ Խոզէեր Բէյլըմըզեր Չէորէնի ըսուած տեղն ելանք . հոս գետին երկու եզերքներուն վրայ երկու փոքրիկ ոյէրէնէր կային . Գիշերուան ժամը 1½ գետին աջ կողմը Մընթէֆիք չէյխին մաքսատան տեղն ելանք ։

Ապրիլ 3 հինգշաբթի առտու ժամ 11 , նաւեցինք և 1 ժամէն հասանք գետին աջ կողմը Քօռնա . ասոր առջև Եփրատ ու Տիգրիս գետերը իրար կը խառնուին . և այս երկու գետերուն միաւորութեամբը շինուած ընդարձակ գետը Շաթ էլ Արապ կըսուի , որ Քօռ-

նայի առջևէն սկսելով կերթայ կը թափի պարսկաց ծո-ցը 5 բերաններով, որ կը կոչուի Քօուխաադոնէ։ Քօռ-նայէն մինչև գետին բերանը 200000 մէթրօ է. գետին ընթացքն ու ուղղութիւնն արևմտեան հիւսիսային կող-մէն դէպ 'ի արևելեան հարաւ։

-

Քօռնա՝ Պասրայի ար մտեան հիւսիսային կողմը 58 000 մէթրօ հեռաւորութեամբ Եփրատի ու Տիգրի-սի իրարու խառնուած տեղին վրայ շինուած 6 կամ 7 հարիւր տնով գիւղ մ՚ է երկու գետոց մէջ տեղը (1)։

Ունի 5000 արաբացի բնակիչ։ Այս գիւղը լեզու մ՚է, որուն աջ կողմէն Եփրատ կանցնի, և ձախէն Տիգրիս։

Տուները եղեգնաշէն են արմաւենիներու և ուրիշ տեսակ ծառերու մէջ։ Ունի արտեր և պարտէզներ։ Հոս ելանք նախաճաշիկ ըրինք, ուր դիմաւորութեան եկած էին Պասրայի կառավարիչն ու քաղաքացւոց ե-րևելիները։ Շատ մը թնդանօթներ նետուեցան։ Այս վայրերուն մէջ Տիգրիսի և Եփրատի ամեն եզերքներուն վրայ արմաւենիի անտառներ պակաս չէին։ Պարսկային ծոցին մակընթացութիւնն ու տեղատուութիւնը երկու գետերուն մինչև այս կողմերուն վրայ կը հասնէր, որով այս երկու գետերուն ջուրն օրն երկու անգամ կաճի կուռենայ, երկու անգամ ալ կը նուազի կը քաշուի։ Մէկ աւուր մէջ պատահած այս երկու մակընթացու-թիւններուն իրարմէ հեռաւորութիւնը 10 ժամ է։ Լուսնոյ ամսոյ նորելուն առտուան ժամ 12 ին գետին ջուրը բարձրանալով կսկսի առաջին մակընթացու-թիւնը, և 1 ½ կամ 2 ժամ տևելէն վերջը քաշուե-լով կըլլայ առաջին տեղատուութիւն. 10 ժամէն ետքը՝

(1) Հոս շինուած էր հին Ապամիա կամ Տիկպա։

այսինքն իրիկուան ժամ 12ին կրկին անդամ ջուրը բարձրանալով կըլլայ երկրորդ մակընթացութիւնը, որուն կը յաջորդէ երկրորդ տեղատուութիւնը՝ գիշերը ժամը 1 ին կամ 2 ին ջուրերուն կրկին քաշուելովը։ Ամիսը քանի որ լրանայ, առաւօտեան մակընթացութիւնն ալ այնքան ուշ կսկսի ըլլալ. այսինքն առտուան ժամը 12 ին ըլլալու տեղ ժամը 1 ին, 2 ին, 3 ին եյն. նոյնպէս ալ երկրորդ մակընթացութիւնը իրիկուան 12 ին սկսելու տեղ՝ քանի՛ ամիսը հիննայ՝ գիշերուան 1 ին, 2 ին, 3 ին, եյն. կ'սկսի. և վերջապէս ամսոյ նորոգման կրկին առտուան ժամ 12 ին կ'սկսի։ Մակընթացութենէն օգուտ քաղելու համար գետեզերքներուն զանազան կողմերուն վրայ դէպ 'ի դաշտը երկար խրամներ (1) փորած են, որ գետերուն ջուրն օրն երկու անգամ, առտուան և իրիկուան մակընթացութեանց ժամանակ) բարձրանալով մէջը կը վազէ ու կերթայ կ'ոռոգէ արտերն ու ծառերը, և ետքը ինքնիրեն (տեղատուութեանց ժամանակ) կը քաշուի։

Քանի մը ժամ Քոռնա կենալնուս վերջը՝ ժամ 6 ½ին մտանք նաւերն ու ճամբայ ելանք, շատ մը նաւակներու ու նաւերու հետ, որ կը կրէին դիմաւորութեան եկող բազմաթիւ պասրացիներ։ Քոռնայէն 32000 մէթրօ վար կամ Պասրայէն 26000 մէթրօ վեր դետին ձախ կողմը կը թափի Քէրահ կամ Քէրխահ ըսուած Պարսկաստանի գետը, որ սկիզբ կառնէ Քրդաստանի հիւսիսային կողմերէն և 600000 մէթրօ երկայնութիւն ունի։ Գետին վրայ շատ տեղեր եղեգէ շինութիւններ (տալեան) կային ձուկ որսալու համար։ Քոռնայէն մինչև Պասրա գետին

(1) Այս խրամները Աւխ կըսուին, որ շինծու առուակներու կը նմանին։

երկու կողմերուն վրայ անընդհատ արմաւենիի անտառներ կան 2—3 ժամ խորութեամբ․ այս ծառերն իրարմէ մէկ մէկ կանգունի չափ միայն հեռաւորութիւն ունին ։ Քոռնայէն մինչև Պասրա նաւակները միայն թի քաշելով 12 ժամ կը տևէ․ բայց յաջող հով մը 6½ ժամու մէջ մեզ տարաւ ձգեց Պասրայի նաւարանին առջև գիշերը ժամը 1 ին ։ Այս ժամանակ տեղատուութիւն ըլլալով ջուրերը քաշուած էին, և նաւակները չը կրնալով յառաջ երթալ՝ մնացին ջուրին քաշուած տեղին վրայ, ուր փոքրիկ նաւակներ (պելլէն) բերած էին մեզ առնելու համար․ մտանք անոնց մէջ․ արաբացիները տիղմին մէջէն հրելով քաշելով տարին Մէննէվի գիւղին մէջ, ուր ելանք գիշերը կեցանք ։ Այս գիւղը պարտէզներու ծառերու մէջ էր․ ունէր 200 տան չափ բնակութիւն ։

Ապրիլի 4 ուրբաթ առտու ժամ 4 ին հեծանք ձիերըն ու ծառաստաններու մէջէն անցնելով․ ուր տեղ տեղ վրանարնակ և հողէ շինուած փոքրիկ խրճիթներու մէջ բնակող արաբացիներ կային․ քառորդէն մտանք Պասրա մեծ հանդէսով ։

## ՊԱՍՐԱ ։

Ասիական Տաճկաստանի մէկ քաղաքն է Շատ էլ արապի վրայ, Պարսկաց ծոցին հիւսիսային կողմը․ ուրկէ 88000 մէթրո հեռու է, և Պաղտատի արևելեան հարաւային կողմը, ուրկէ ալ 410000 մէթրո հեռու է ։

Աշխարհագրական երկայնութիւնն է 45° 20′, և լայնութիւնը 30° 16′ ։

Այս քաղաքն՝ որ երբեմն պարսպապատ էր և աւելի ընդարձակ, բարգաւաճ և Տաճկաստանի վաճառաշահ

քաղաքներուն ամենէն հռչակաւորը, ուր շատ եւրոպացի վաճառականներ մեծ տուներ բացած էին, և 150000 էն աւելի բնակչաց պատսպարան էր, այսօր անոր պարիսպը բոլորովին քայքայեալ է, տուներուն շատին տանիքներն ու որմերը փլած, դուռները կրնակի վրայ բաց, շուներու և անասնոց բնակարան եղած է, և հազիւ 10000 ժողովուրդ կը պահէ 1000 ի չափ տուներու մէջ. վասն զի օդին դէշութիւնը, փէլլահներուն բարբարոսութիւնը, Մաքսերուն և Իսթիպտլիէի ծանրութիւնը, և մանաւանդ գլխաւորապէս քօլէրայի երբեմն երբեմն ըրած սարսափելի կոտորածները պատճառ եղած են բնակչաց նուազելուն և քաղաքին կործանմանը։ Հիմա վաճառականութիւնը բոլորովին դադրած է. վաճառական մը չըկայ, և ոչ ալ վաճառականաց նաւերը կերթևեկեն։ Հնդկաստանէն երբեմն յաճախող շոգենաւերն ալ հազուադէպ եղած են. Այս քաղաքը Շատ—ըլ—արապին անմիջապէս եզերքին վրայ չէ. բայց գետեզրէն մինչև քաղաք փորուած առուներուն մէջէն անոր ջուրն օրն երկու անգամ (երկու մակընթացութեան ժամանակ) կերթայ կը ջրէ քաղաքին մէջի և շրջակայ արտերն ու պարտէզները, և մէկ երկու ժամէն վերջը (տեղատուութեանց ժամանակ) կը քաշուի։ Տուները բարձր են և աղիւսաշէն կամ Ն—ղլ—յ—ն շինուած. վրանաբնակներ ալ կան. քար քիչ գտնուելուն համար սոսկ քարաշէն տուն չըկայ։ Տուներուն մէջի ձեղունները արմաւենիի անկոփ գերաններով շինուած են անզարդ և աններկ։ Տուներուն վրայ [illegible] չըկայ, և անոր տեղ տանիքին գերաններուն վրայ արմաւենիի տերևներով հիւսուած փսիաթներ դրուած են՝ վրայէն հողով ծեփուած։ Ամեն տան մօտ փուռեր կան պիտոյից համար։ Փողոցները անկարգ, նեղ ու անտեղի են։ Կան աւերակ եղած շատ մը հրապարակներ

ու վաճառանոցներ․ 120ի չափ խանութով Նորաշէն շուկայ մը՝ որուն 30 խանութը միայն բաց է․ 25ի չափ մեծ սրճարաններ՝ ուր կը յաճախեն քաղաքացիք․ 100ի չափ մեծ ու ամուր խաներ՝ անտէր ու երեսի վրայ մնացած․ քանի մը բաղնիք՝ մէջը մութ ու ցած, գետինն ալ մարմարինի տեղ կպրաձիւթ․ ապարան մը՝ քաղաքին կառավարչին յատկացեալ, ուր մենք նստեցանք․ Այս ապարանին մէջ ընդարձակ բակ մը կայ, որուն մէջ արաբացի անկանոն զինուորներ արուեստական զինախաղութիւն մ'ըրին․ քանի մը մզկիթ՝ որոնց մէկը Հուսէյնի Ալին ոտքին կոխած տեղին վրայ շինուած է․ 1 Հայոց փոքրիկ եկեղեցի, և 1 ալ Փռանկաց․ 10000 բնակիչ, որոնց 100ը միայն հայ է, մէկ քանին եւրոպացի․ մէկ քանին ալ քաղդէացի և ասորի․ իսկ մնացեալները հրեայ, պարսիկ և մահմէտական արաբայիններ են։ 100ի չափ կանոնաւոր զօրք և 300ի չափ ալ անկանոն։ Հուսէյնի [illegible] [illegible] ալ քաղաքին մօտերն է։ Կլիման տաք է մանաւանդ ամառը․ ցերեկն ո՛րչափ որ կեփի, գիշերներն ու առտուներն ալ այնքան սաստիկ ցուրտ հով մը կը փչէ անդադար։ Քաղաքին բաց ականներուն գարշահոտութեան և փողոցներուն ջրանցքներուն ու ջրամբարներուն անմաքրութեան և մանաւանդ Եփրատի ողողման պատճառաւ երկրին օդն որքան որ ապականեալ է, այսու ամենայնիւ դիւրին է առողջարար և պատուականագոյն ընել․ բայց պէտք է յատուկ ճամբայ մը շինել՝ որ ականները մինչև գետ տանի թափէ․ փողոցներն ու ջրանցքները և ջրամբարները մաքրել․ ջրանցքներուն ու առուներուն եզերքներուն վրայ ուռիներ տնկել․ արդէն ալ կան տեղ տեղ․ Եփրատ գետին եզերքին վրայ պատ մը շինել՝ որ դաշտը չողողէ և ճահիճներ չը ձևացունէ։ Քաղաքին ջուրը ծանր է, վասն

զի Ջրամբարներուն մէջ անշարժ կը մնայ․ բայց հարուստները Թէ-Մէ ֆրէնկէն կամ Բօռնայէն բերել կուտան՝ որ աւելի աղէկ է։

Առողջութեան ամենակարեւոր պիտոյից պակասութեան պատճառաւ բնակիչներն ընդհանրապէս վատառողջ են և հիւանդ։ Քաղաքին մէջ և շրջակայ վայրերուն վրայ արգաւանդ պարտէզներ կան տեսակ տեսակ ծառերով, ինչպէս են՝ խնձորի, սալորի, արմաւի, սև թութի, տօտու, հնդիկ արմաւի (թէմիր հինտի), տանձի, սերկեւիլի, դեղձի, լիմոնի, փորթուքալի, խաղողի, նուան, ևլն ծառեր․ խաւհմէլի ծառ չըկայ։ Քաղաքին շրջակայ արտերուն մէջ առատաբար կը բուսնին ցորեն, դարի, բամպակ, Նէնդէ·է, քըն·ա, ևլն։

Նահանգին ջուրն առատ ըլլալուն՝ հողն ալ շատ ուժով է և բարեբեր․ թէ որ օրինաւոր կերպով հողտ որուն մշակութեան, անտարակոյս բերքերը կը բազմապատկին․ վասն զի շատ կողերուն հողերը՝ տարին երկու անգամ բերք կը հասցունեն, զոր օրինակ, ցորեն, դարի ևլն․ Հոս ոչխարները մէկ տարույ մէջ երկու անգամ կը ծնին․ Մարդկային սեռին ծննդական կարողութիւնն ալ շուտ կ'սկսի, անանկ որ 12 տարեկան աղջիկ մը կրնայ ծնանիլ․ վասն որոյ ծնողք սովորաբար կամուսնացունեն իրենց 11 կամ 12 տարեկան դեռահաս զաւկըները։

Հազրէթի Էօմէր շինեց Պասրա 636 թուականին, և մասնաւոր փաշայութեան մը մայրաքաղաքն ըրաւ․ պարսիկներն ու տաճիկները փոխանակաւ նուաճելով իրարու ձեռքէ առին (1638), 1673 էն մինչև 1779 պարսկաց ձեռքն անցաւ․ վերջապէս 100 տարիէն աւելի է որ տաճկաց ձեռքն է և Պաղտատի փաշայէն կախումն ունի։ Հոս 4 օր միայն կեցանք և շատ մը հիւանդներ դարմանեցի․

Ապրիլ 9 չորեքշաբթի առտու ժամ 2, նստանք 6 նաւերու մէջ, զոր, մակընթացութեան ժամանակ ըլլալով, առուներու մէջ էն մինչև մեր օթևան ըրած ապարանին առջև բերած էին. Թիավարներն սկսան դերաններով կողմնակի եզերքներուն կրթընելով հրել ու ետ ետ քշել. սանկով Մէննէվիին առջևէն անցանք ու ժամը 3 ին Շատ—ըլ—արապի մէջ իջանք ուր մեծ նաւահանգիստ մը եղաւ: Մէննէվիին առջև գետին խորութիւնը 7 կանգուն էր. ընդհանրապէս գետին աջակողմը աւելի խոր է քան ձախակողմը: Նաւերը բացին առագաստները. սկսանք նաւել դէպ 'ի պարսկաց ծոցը. Պասրայէն վար գետը հետզհետէ կընդարձակի, մէկ եզրէն միւսը՝ մինչև կէս ժամ կը տևէ: Քիչ մը վար գետին ձախ կողմէն ճիւղ մը կը բաժնուի, որ բաւական շրջան մ'ընելէն վերջը՝ կուգայ դարձեալ կը միանայ գետին, վարի կողմերուն մէջ. որով նոյն տեղը փոքրիկ կղզի մը կը ձևանայ: Իրիկուան ժամը 9, գետին աջ կողմը Էզզէին ըսուած վրանաբնակ արաբայուոց գիւղն եղանք, ուր 50 ի չափ վրաններ կային: Այս գիւղէն ուղղակի դէմն էր էր Մուամմէրա ըսուած քաղաքը, որ այն ատեն պարսկաց իշխանութեան տակն էր ու ետքը Տաճկաստանի անցաւ: Մուամմէրային առջևէն դետ մը կանցնի: Պասրայէն մինչև Էզզէին 6 ժամ է. գետեզերքին վրայ ծայրէ 'ի ծայր 3 կամ 4 ժամ խորութեամբ անընդհատ արմաւենիի անտառներ կան: Հոս գիշեր մը կեցանք:

Ապրիլ 10 հինգշաբթի առտու ժամ 3 ին՝ մտանք նաւերն ու իրիկուան ժամ 12 ին եղանք գետին աջ կողմը ու գիշեր կեցանք. Ճամբան գետին աջ կողմէն ճիւղ մը կը բաժնուի, և քիչ մ'ալ վար ուրիշ ճիւղ մ'

ալ կը բաժնուի, որոնք կուգան դարձեալ կը միանան գետոյն վարի կողմերուն մէջ, որով մէջ տեղի ցամաքը կղզի մը կը ձեւանայ։ Էգզէյինէն մինչեւ հոս ալ արմաւենիի անտառները կը շարունակեն։ Գետին ձախ կողմը Մուամմէրայէն վար պարսկաց հող է։ Մուամմէրայէն մինչեւ 3 ժամ վար գետեզերքին վրայ արմաւենիի անտառներ կան. բայց անկէ վար բնաւ ծառ մը չէր տեսնուեր։

Ապրիլ 11 ուրբաթ առտու ժամ 12 ին՝ մտանք նաւերը. յաջող հովով մը 1 1/2 ժամու մէջ 4 ժամու չափ ճամբայ առնելով եկանք գետին աջ կողմը, ուրկէ ժամ մը վար է գետին բերանը՝ Պարսկաց ծոց անուանեալ տեղը։ Գետին ջուրն աւելի աղի է այս կողմերուն մէջ. վասն զի ծովին ջուրը մակընթացութեան ժամանակ գետին մէջ կուգայ կը խառնուի։ Կրկին մտանք նաւերուն մէջ գետին մինչեւ բերանը երթալու համար. բայց հազիւ կէս ժամու չափ նաւեցինք՝ սկսաւ կամաց կամաց հիւսիսային հով մը փչել, որ սաստիկ փոթորիկ հանելով գետն ալեկոծեց. մէկ կողմէն ալ ովկիանոսի խորոխտ ալիքները գետին հոսանացը դէմ յարձակելով կարգիլէին մեր յառաջ երթալը։ Թիավարներն ալ յոգնած ու վհատած էին. ուստի պարտաւորեցանք ետ դառնալ երթալ եկած տեղերնիս։ Քոռնայէն՝ նաեւ քիչ մ' ալ վերէն սկսելով՝ մինչեւ Պարսկաց ծոցը գետին ընթացքը դրեթէ ուղղակի է և բնաւ ոլորումներ չը ձեւացուներ։

Ապրիլ 12 շաբաթ առտու ժամ 12 ին մտանք նաւերը ետ դառնալու համար, բայց օդը յաջող չէր և սաստիկ ալէկոծութիւն կար. ուստի մեր ալեծածան նաւերը չէին կրնար յառաջ երթալ գետին հոսանացը դէմ.

վասն որոյ 60 ի չափ մերկամարմին `արաբացիներ ( Չէ-տէկճի ) սկսան քաշել նաւերը 14 ժամ շարունակ մինչև գիշերոյ ժամ 2, ցերեկուան անտանելի տաքին և գիշերոյ սաստիկ ցուրտին դիմանալով և առանց բան մ՚ ուտելու ։ Երբ գետեզերքին վրայ առուներ հանդիպէին՝ մէջէն լողալով կանցնէին, և տեղատուութեան ժամանակ ջուրը քաշուած ըլլալով գետեզերքին վրայ մինչև ծունկերնին տիղմերու մէջ ընկղմելով կը քալէին ։ այս եղանակաւ և միշտ գետին աջակողմի եզերքին կողմէն նաւելով անցանք Քէ-ֆը սալէր և Քէ-ֆը եահեա, և հասանք Քէ-ֆը խան, որ Պասրայի ու Պարսկաց ծոցին մէջ տեղն է, երկու կողմէն ալ 10 ական ժամ հեռի ։ Գիշերը հոս կեցանք ։

Ապրիլ 13 կիրակի առտու ժամ ½ մեկնեցանք նաւերը, ու յաջող հովով մը կրկին մտանք Պասրա իրիկուան ժամ 10 ին ։ Երեք օր կեցանք և ապրիլ 17 հինգշաբթի օր ժամ 7 ին մեկնելով Պասրայէն ու 4 ժամ նաւելով եկանք իրիկուան ժամ 11 ին Շաթ — էլ — արապ աջ կողմը Քէ-ֆը — ֆրէնկի ըսուած տեղը, որ Պասրայէն 2 ժամու չափ հեռի է ։ Հոս կը գտնուէր Անգղիոյ հիւպատոսին տունը դրօշակ բացած, որուն բոլորտիքն ալ մէկ քանի արաբներու փոքրիկ բնակարաններ կային ։

Ապրիլ 18 ուրբաթ առտու ժամ 12, նստանք նաւակները, և իրիկուան ժամ 12 ին Քօռնա եղնելով գիշեր կեցանք ։

Ապրիլ 19 շաբաթ առտու ժամ 11 ½ ին՝ նստանք աւակները, և այսօրուընէ ձգելով Տիգրիսի ճամբան, մրկինք գիւղին աջ կողմէն Եփրատի մէջ և 15 ժամ ընդհատ նաւեցինք ։ Գետին ձախ կողմի եզերքին

վրայ Քօռնայէն մինչեւ 5 ժամ վեր շարունակ արմաւե-նիի անտառներ կային . իսկ աջ կողմը միայն տեղ տեղ ։ 9 ժամ վեր աջ ու ձախ եզերքներուն վրայ իրարու մօտ անթիւ առուներ կային , քիչ „մ" ալ վեր Եփրատ՝ ծովի նման ծածկեր էր իր երկու կողմի ցած դաշտերը , ողողելով մէկ կողմէն մինչեւ Պասրա եւ միւս կողմէն մինչեւ Քօռնա ։ Այս ծովացեալ դաշտերուն մէջ տեղ տեղ կղզիի նման ցամաքներ կերեւային, տեղ տեղ ալ արմաւէ ծառեր ։ Ամառը այս ջուրերը մէկ մէկ քիչ քաշուելով ճախճախուտ ճահիճներ կը գոյանան , որ օդը կապականեն ։ Քօռնայէն 11 ժամ վեր գետին խորութիւնը հազիւ կանգունի մը չափ կար . մեր նաւակները յատակին մէջ խրեցան . այնու հետեւ անհնար եղաւ նաւել ։ Ուստի փոքրիկ նաւակներով (պելլեմ) մեզ առաջնորդող արաբացիները եկան մեր նաւակներուն բոլորտիքը , շատերն ալ իջնալով գետին մէջ՝ բռնեցին մեր նաւերն ու սկսան յառաջ մղել 4 ժամ շարունակ մինչեւ 'Մէչէր-չէֆ քալէսի դիմացը , ուր փոքրիկ ցամաքի մը վրայ ելնելով գիշեր կեցանք ։ Այս կողմերը Մէնթէֆիք անուանեալ Շէյխին իշխանութեան ներքեւ են. հոս տեսութեան եկաւ Պէլինամ անուն շէյխը ։

Ապրիլ 20 կիրակի առտու ժամ 12 , նստանք նաւերը Սուղուշուք երթալու համար որ 10 ժամ հեռի է . նոյն օրը իրիկուան իջանք քաղաքին մէկ քառորդ մնալով դաշտին մէջ մէկ առուի մը քով՝ 50 ի չափ մեծամեծ վրաններու տակ , զոր Մէնտէֆիք շէյխը պատրաստել տուած էր ։

Սուղուշուք՝ Եփրատի աջ կողմը գիւղաքաղաք մ՝ է ։ Ունի 400 տուն , 2000 բնակիչ արաբացի , հրեայ եւ 100 ի չափ հայ մէկ եկեղեցիով ։ Սրճարաններ , վաճառանոց մը , ոն ջաղաց մը ։ Պարտէզներ , արմաւի ծա-

ուէր։ Կը գտնուէին անթիւ ընտիր ձիեր և սրընթաց գեղեցիկ ճայիկներ․ Օդը բաւական առողջ է։ Գիւղին դէմ գետին ձախ կողմն ալ կան արաբացւոց հողաշէն տուներ, պարտէզներ, արմաւի ծառեր։

Գիշերը սաստիկ քամի մը տակնուվրայ ըրաւ վրանները, տեղատարափ անձրև մը ամենուն ոսկորներուն մէջ կանցնէր․ ամպերուն դոռումն ու կայծակներուն հարուածները ահու դողի մէջ կը ձգէր։ Կարծես թէ ոտքերնուս տակը ջրհեղեղ մը կը պատրաստուէր․ Առտուն սենեկապետը ոսկի թուր մը ու զարդարեալ մերարկու մը շնորհեց չէյխին, որ փոխադարձ ճայիկներ ընծայեց։

Ապրիլ 23 չորեքշաբթի ժամ 3, ճամբայ ելանք ձիերով (Նաւային ճանապարհորդութիւնը ձգեցինք), 7 ժամ չարունակ գետին աջ կողմէն յառաջ երթալով անցանք արմաւի անտառներու, գիւղերու և 9 ի չափ առուներու մէջէ․ վերջը իջանք գետին եզերքը ծառերու տակ վրաններու մէջ։

Ապրիլ 24 հինգշաբթի, 6 ժամ ճանապարհորդեցինք ու իջանք գետին աջակողմը վրաններու մէջ գիշեր կեցանք։ Այսօր 3 առու անցանք։

Ապրիլ 25 ուրբաթ առտու ժամ 12, ճամբայ ելանք և 6 ժամ երթալնուս վերջը՝ իջանք գետին աջ կողմը, որուն դիմացի կողմը գիւղ մը կար ծառաստանի մէջ։

Ապրիլ 26 շաբաթ օր ժամ 12, ճամբայ ելանք և 4 ժամ հեռի Սամավար ըսուած գեղին առջև իջանք և գիշերը վրաններու մէջ կեցանք․ Ճամբուն վրայ ո՛չ ծառ կար և ո՛չ առու։

*Եփրատի աջ կողմը արտաքացւոց գիւղ մ՚ է պարսպապատ ։ Ունի 250 տուն , 2000 բնակիչ․ վաճառանոց մը ուտելեաց․ Գիւղին մէջն ու բոլորտիքը պարտէզներ կային , թութի , նուռն , արմաւի , դեղձի , նարընջի , ծիրանի եւ այլն ծառերով ։ Գիւղին դիմացի կողմն ալ արմաւի անտառներ ու պարտէզներ ու քանի մ՚ ալ արտաքայւոց տնակներ կային ։ Հոս գետը նեղ է եւ քիչ մը խոր , մինչեւ հոս բերեր էին մեր նաւերը․ պարէնի մեծ նաւերը անկէ վեր չը կրցան երթալ ։*

*Շէյխերն ու Շահպէնտէրը այցելութեան եկան և 1000ի չափ ձիաւոր ու հետեւակ պահապան զօրք տուին ։*

*Ապրիլ 27 կիրակի առտու ժամ 10 , ճամբայ ելանք , և. 2 ժամ հեռի իջանք լայն ու խորունկ առուի մը եզերքին վրայ , ուրկէ մենք նաւակներով ու ձիերնիս լողալով անցանք դիմացի կողմը․ և գիշերը հոն անցուցինք վրաններու տակ ։*

*Ապրիլ 28 երկուշաբթի առտու ժամ 12 , ճամբայ ելանք , վերջին մնաս բարովն ըսելով Մէնտէֆիք շէյխին․ 2 ժամ անդին Եփրատի մէջէն անցնելով մտանք Շէյխ-վատիին իշխանութեան երկիրներուն մէջ , և քանի մը ժամ երթալնէս վերջը անցանք առուէ մը , որուն եզերքին վրայ գիշերը անցուցինք վրաններու տակ ։ Հոս քանի մը հազար զօրք գեղեցիկ զինախաղութիւն մ՚ ըրին ։*

*Ապրիլ 29 երեքշաբթի առտու ժամ 12 , ճամբայ ելանք և 5 ժամ հեռի առուի մը եզերքին վրայ գիշեր կեցանք վրաններու մէջ ։*

Ապրիլ 30 չորեքշաբթի առտու ժամ 12, ճամբայ ելանք և 7 ժամ երթալնէս վերջը եղէգնուտ ընդարձակ ճահիճի մը եզերքին վրայ կեցանք գիշերն ու հետեւեալ օրը մինչև իրիկուն՝ վրաններու մէջ։

Այսօր Մեշէտ Ալիի գայմագամը դիմաւորութեան եկաւ։

Մայիս 1 հինգշաբթի իրիկուան ժամ 12, 100 ի չափ թուրքմէններով անցանք ճահիճէն. Թիավարները եղէգներով կը մղէին նաւերն և շատ դժուարութիւն կը կրէին զանոնք քալեցունելու. չամբերուն մէջէն ու տիղմերուն վրայէն։ Ջուրը հազիւ կանգուն մը կար. Բոլոր գիշերը այս կերպով ճանապարհորդեցինք, ցերեկները սաստիկ տաքին պատճառաւ անհնար էր ճանապարհորդել։

Մայիս 2 ուրբաթ առտու ժամ 12 ին եկանք Մեշէտ Ալիին դրեթէ նաւահանգիստը, 1 ½ ժամ հեռի քաղաքէն։ Հոս է Մեսճիդ Քէ-ֆէն, ուխտատեղի տաճկաց։ ժամը 4 ին շքեղ հանդէսով մը մտանք Մեշէտ Ալի։

## ՄԵՇԷՏ ԱԼԻ ԿԱՄ ԻՄԱՄ ԱԼԻ

### 'ի հնումն Աղեքսանդրիա կամ Հիռա

Պաղտատի հարաւային կողմը՝ 133 քիլօմէթրօ հեռի պարսպաւոր գեղեցիկ քաղաք մ'է. Ունի 3000 տուն, 10000 բնակիչ, որ ըստ մեծի մասին շիի աղանդաւոր պարսիկներ են։ Նաեւ հրեայներ։ Զինուորանոց մը՝ քանի մը հարիւր զօրքով. հիւանդանոց մը, ամուր խաներ, հարուստ վաճառանոց մը ուր ամեն տեսակ ւան կը գտնուէր աժան գնով։ Մրգեղէնները շատ, հացը աժան. Տուները մեծ ու քարաշէն են։ Հոս է

տանկաց Մարգարէին փեսայ Ալիին գերեզմանը՝ հոյա-
կապ մզկիթի մը մէջ, ուր միշտ բազմաթիւ պարսիկ
ուխտաւորներ կը դիմեն ։ Այս մզկիթը շինուած է քա-
րայեալ խորանարդ աղիւսներով, ունի բարձր ու ոս-
կեզօծ գմբէթ մը, նոյնպէս ոսկեզօծ երկու մինարէ ներ.
նաև շրջանակի ընդարձակ բակ մը, ուր պարսիկները
տեսակ տեսակ բնական քարեր հոտէ, նէճէֆ, եէշէմ, ևլն. կը
ծախեն։ Բակին շուրջը երկկուղ բնակարաններ կան ուֆ-
տայէց համար. Մզկիթին ամեն պատերուն վրայ չինի քա-
րերով զարդարուած է, որոնց վրայ հոտէ թափուած
էր։ Քաղաքին մէջ ո՛չ պարտէզ կայ և ո՛չ ծառ. Ջուրն ա-
ղէկ չէ Օդն ալ շատ աղէկ չէ. վասն զի քաղաքին շըր-
ջակայներուն ընդարձակ ճահիճներ ու լիճեր կան ։ Պ..ր-
սիկները մեռելներնին իրենց այս սուրբ քաղաքը կը բե-
րեն թաղելու համար ։ Աղեքսանդր հիմնած է այս քա-
ղաքը, որուն անունովը կը կոչուէր երկար ժամանակ ։
Նաքը արաբացւոց ձեռքն անցնելով Հիռա անուանե-
ցին. և իրենց մէկ իշխանութեան մայրաքաղաքն ըրին.
առոնցմէ ալ քրիստոնէից ձեռքն անցաւ մինչև Քրիս-
տոսի 632 թուականը ։ Այն ատենէն տաճիկներն առին
և 1806 ին թէ և վահապիները նուաճեցին քաղաքը,
բայց վերջապէս բնակիչները յաջողեցան զանոնք փախ-
ցունելու, և անկէ ետքը գերեզմանին մեծ հարստու-
թիւնը փոխադրեցին իմամ՝ մուսա ։

Մայիս 4 կիրակի իրիկուան ժամ 10 ելանք, և գի-
շերը 6 ժամ ճամբայ ըրինք եղէգներու մէջէ անցնե-
լով. բուն ճանապարհէն խոտորեցանք ջուրի մօտ եր-
թալու համար, և գիշերուան ժամ 4 ին իջանք Եփրա-
տի ողողմամբը շինուած ճահիճի մը եզերքին վրայ, որ
կըսուի Հինտիէ ...։ Վրաններու տակ կեցանք մինչև
առաւօտ ։

Այս ջուրին լայնութիւնը մէկ ժամու չափ կար, որուն դիմացի եզերքին կողմը և բաւական հեռու փոքրիկ լեռ մը կամ բլուր մը կը տեսնուէր, վրան ալ կարծես թէ շէնք մը կար, զոր Եօլճի Նէմրուտ կանուանէին։ Այս գիշերային ճանապարհորդութիւննիս ջահերով խիստ զուարճալի եղաւ, ազատ արևուն տօչօրիչ ազդեցութենէն, որուն տեղ պաղ հովեր կը փչէին։ Ցերեկները տաքին սաստկութեանը դիմանալու համար վրաններ կը թրջէին ու անոնց բոլորտիքը խրամներ փորելով ջուր կը լեցունէին. մենք ալ լաթ մը թրջելով երեսնուս վրայ կը ծածկէինք։

Մայիս 5 երկուշաբթի իրիկուան ժամ 10, ճամբայ ելանք. կէս ժամ հեռու քարաշէն խան մը կար. գիշերուան 5 ին Մէշէտ Հիւսէինի կամ Քէրպէլայի մէջ 1 ժամ մնալով իջանք վրաններու մէջ գիշեր լուսցուցինք։

Մայիս 6 երեքշաբթի առաւօտ ժամ 12, ճամբայ ելանք շքեղ հանդէսով մը, և քիչ մը անդին արմաւենիներու մէջէ անցնելով մտանք Քէրպէլա, Իմամ Ալի գապուսի ըսուած դռնէն։

## ՄԷՇԷՏ ՀԻՒՍԷԻՆ ԿԱՄ ԻՄԱՄ ՀԻՒՍԷԻՆ, ԵՒ ԿԱՄ ՔԷՐՊԷԼԱ։

Պաղտատի արևմտեան հարաւային կողմը և անկէ 93 քիլօմէթրօ հեռու արաբացւոց դաշտին մէջ և Եփրատի մէկ առուին վրայ 6000 տունով՝ պարսպապատ քաղաք մ'է, Իմամ Ալիի կրկնապատիկ մեծութեամբ։ Ունի 14000 բնակիչ, որոնք ըստ մեծի մասին պարսիկներ են շիի կրօնքով, իսկ Սիւննի քիչ կայ. նաև վաճառականութեան պատճառաւ երթևեկող 30 ի չափ ալ հրեայ

կը գտնուին ։ Դժուար էր քրիստոնէից՝ ինչպէս նաև երբեմն տաճկաց հոս մտնել ու կալուածքի տէր ըլլալ ։ Տուները քարաշէն են և հոյակապ , բայց դուները փոքրիկ և տանեաց վրայ հող ։

Ունի զինուորանոց մը 1000 ի չափ զօրքով . ապարան մը , հիւանդանոց մը , մեծ վաճառանոց մը , ուր հնդկային ու պարսկական բերքեր կը ծախուին աժան գնով . մեծ խաներ , գեղեցիկ ու ընդարձակ բաղնիքներ , մզկիթներ ։ Հոս է Ալիին որդի իմամ Հիւսէինին գերեզմանը՝ նոյն անուն հոյակապ մզկիթին մէջ , ուր կուգան անթիւ պարսիկ ուխտաւորներ , որոնք մեռելնին ալ հոն կը բերեն կը թաղեն ։ Մզկիթն ունի հոյակապ գըմբեթ մը և երկու ճնուբէ ոսկեզօծեալ . նաև ընդարձակ բակ մը , որուն մէջ տեսակ տեսակ բնական քարերու վաճառականութիւն կընեն չինարներու տակ ։ Քաղաքէն դուրս շրջանակը ծառաստան է , արմաւի և ուրիշ տեսակ ծառերով . շատ մ՚ալ պարտէզներ կան՝ վարունգի , սեխի , բաթլըճանի , ևն. բերքերով լեցուն ։ Ծառաստանին ու պարտէզներուն միւս կողմն ալ շատ մը Բողլուջէ հաւըզաններ կան ։

Ջուրը Եփրատինն է որ մինչև քաղաք կուգար մեծ առուով մը ։ Տաքը սաստիկ է . օդը ծանր , որուն պատճառներն են արմաւի ծառերը , Բողլուջէ հաւըզաններուն պղտոյկը յատկացեալ ջրով լեցուն փոսերը , տուներուն ականները՝ որ փոսերու մէջ կը դիզուին , և պարսից մեռելներուն դիակները՝ որ երբեմն օրերով խաներուն մէջ կը մնացուին ։ Քաղաքին պարիսպը քանի մը դուռն ունի , և տեղ տեղ թնդանօթներ դրուած են ։ Հոս քանի մը օր կեցանք ։

Մայիս 9 ուրբաթ իրկուան ժամ 9 , ելանք քաղաքին Պաղտատ գաբուսը ըսուած դուռնէն , և առուին ձախ

կողմէն չքեղ հանդէսով գացինք 1 ժամ շարունակ՝ արմաւի անտառներու և պարտէզներու որմերուն մէջ տեղէն. վերջը քարաշէն կամուրջի մը վրայէն առուին աջ կողմն անցանք։ Քիչ մը անդին ճամբուն վրայ քարաշէն մեծ խան մը կար։ 5 ժամ հեռի քարաշէն կամուրջի մը վրայէ դարձեալ նոյն առուին ձախ կողմը անցանք. ասկէ ալ կէս ժամ հեռի ուրիշ քարաշէն խան մը կար, ուրկէ քառորդ մը անդին կը վազէ Եփրատ գետը, և որուն աջակողմի եզերքին վրայ իջանք գիշերուան ժամ 3 ին վրաններու տակ

Մայիս 10 շաբաթ առտու ժամ 11 ին, փայտաշէն կամուրջի մը վրայէ գետն անցնելով եկանք Մէ—ւէղ ըսուած գիւղը, որ 12 ժամ հեռի է Պաղտատէն. Պարսկաստանէն Քէրպէլա եկող ուխտաւորները քաղաքը մտնալէն օր մը յառաջ այս գիւղը օթևան կընեն, մեռելնին ալ հոս կիջեցընեն և հետևեալ օրը կամուրջէն անցնելով կը մտնեն քաղաքը, կամուրջին համար մասնաւոր տուրք մը վճարելով։ Գիւղէն ելանք ու Եփրատի ձախ կողմին վրայ կէս ժամ երթալով անցանք ուրիշ գիւղի մը քովէն. ասկէ ալ $1\frac{1}{2}$ ժամ անդին իջանք քարաշէն խան մը՝ որուն առջևէն առու մը կանցնէր. ուրկէ 2 ժամ հեռի իջանք ուրիշ քարաշէն խան մը, ուր ջրհոր մը կար՝ որուն մինչև խորը քարաշէն սանդուխք մը շինուած էր իջնալ ջուր հանելու համար. Ասկէ ալ $2\frac{1}{2}$ ժամ հեռի իջանք ուրիշ քարաշէն խան մը՝ ժամը 10 ին, որուն հեռաւորութիւնը Պաղտատէն 6 ժամ էր։ Ասկէ ալ 2 ժամ հեռի քայքայեալ խանի մը քովէն անցնելով եկանք կէս ժամու մէջ Տիգրիսի աջ կողմը, որուն եզերքն'ի վեր կէս ժամ երթալով անցանք առուէ մը. քիչ մ'ալ վեր ուրիշ առուէ մը, և վերջը ընդարձակ ջուրէ մը՝ հողաշէն կամուրջի մը վրայէն, ուրկէ Պաղտատ սկսաւ երևնալ։

Այս ջուրէն շատ հեռի չէր Պաղտատի արուարձանը ՝ որուն մէջէն անցանք, և կամուրջին վրայէն մտանք Պաղտատ այս երկրորդ անգամ և 25 օր կեցանք ։

1847 Յունիս 4 ըէճէպի 3 չորեքշաբթի իրկուան ժամ 10 ին՝ շքեղ հանդիսիւ մեկնեցանք Պաղտատէն . անցանք իմամ Ազամէն , և գիշերուան ժամ 8 ին իջանք Պաշ եէնկիճէէն վեր Շադին ձախ կողմը , որ 8 ժամու չափ հեռի էր Պաղտատէն ։

Յունիս 5 հինգշաբթի իրկուան ժամ 9 ճամբայ ելանք , և գիշերուան ժամ 1 ին իջանք Ահմէտ օղլու խանը ըսուած տեղին մօտ , որ 5 ժամ հեռի էր ելած տեղերնէս ։

Յունիս 6 ուրբաթ իրկուան ժամ 7½ ճամբայ ելանք Տէլլի Աբբաս երթալու համար , որ 9 ժամ հեռաւորութիւն ունի , ուր գիշերուան ժամ 4 ին հասանք ։ Ճամբան 6 ժամ հեռու տաճկաց ուխտատեղի մը կար , որ կըսուի Հոճէրի Ալի տաղը ։

Յունիս 7 շաբաթ իրկուան ժամ 8 , ճամբայ ելանք Քարա—Թէփէ երթալու համար , որ 10 ժամ հեռի է , ուր մտանք գիշերը ժամ 3 ին ։

Յունիս 8 կիրակի իրկուան ժամ 9 , հեծանք ձիերը Քիֆրի երթալու համար ; որ 7 ժամ հեռի է . հոս 100 ի չափ վրաններ պատրաստուած էին , որոնց տակը կեցանք մինչև յունիս 14 բոլոր հեծելազօրաց ու Հայտաւէրէ անուանեալ անկանոն զօրաց հետ , որ մեր պահպանութեանը համար հետերնիս ղրկուած էին Պաղտատի կուսակալին կողմէն ։

Յունիս 14 շաբաթ ժամ 9, ճամբայ ելանք ու Սիւլէյմանիի ճամբան բռնեցինք։ Գիւղին մէկ կողմէն միւսն անցնելով մտանք ընդարձակ դաշտանման ձորի մը մէջ, որուն մէջէն ջուր մը կանցնէր, և ամեն կողմէն բաւական բարձր լեռներով պատած էր. ունէր արտեր և ձմերուկի ու սեխի պարտէզներ։ Հոս դեղձի հովանաւոր անտառի մը մէջէ ալ անցնելով 6 ժամ յառաջ դացինք միշտ ձորերու մէջ ու գիշեր կեցանք. ու դաշտերը հեռացան մեր աչքէն՝ առջևէն։

Յունիս 15 կիրակի իրկուան ժամ 9, ճամբայ ելանք, և 3 ժամ շարունակ անբեր ու ապառաժուտ լեռներ ելլելով իջնելով՝ անցանք քրդաց գիւղի մը մէջէ՝ որուն առջևէն գետակ մը կանցնէր։ Այս գիւղին բնակիչները բացօթեայ արօտներն ելած էին և տուներնին ալ գոց էին։ Գետակին միւս կողմն ընդարձակ անդաստան մը կար, որուն մէջ կը տեսնուէր քանի մը հաստ ու բարձր ծառերով հովանաւոր վայր մը, ղոր գետակին մէկ ճիւղը միշտ կը թրջէր։ Այս գիւղէն քառորդ մը հեռի էր Խօշրանէյ Խանէ անուն քրդաց գիւղը, ուր իջանք ու գիշեր կեցանք. Այս գիւղը լեռներով շրջապատած ձորի մը շինուած է, որուն մօտէն ու լեռան ստորոտէն կանցնի վերոյիշեալ գետակը։ Ունի 100 ի չափ հիւղիկներ. ոչ ծառ կայ և ոչ բոյս։

Յունիս 16 երկուշաբթի ժամ 9, ճամբայ ելանք ու 4 ժամ շարունակ լեռներու վրայէ անցանք, որոնց դաշտանման ձորերուն մէջ գետակներու քով կային շատ մը քրդաց գիւղեր։ Վերջը ճամբուն վրայ Ճամրէ անուն քրդաց գիւղէ մը անցնելով՝ գիշերուան ժամ 1 ին իջանք ձորի մէջ Աէճէ փաշ լերին ստորոտը, ստուար ու բարձր

ծառերու ներքև ու գետակի մը եզերքին վրայ վրան֊ներու տակ, ուր առտու ըրինք ։ Այս ձորին մէկ կող֊մի լեռները Աքծէ տաղ և միւս կողմինը Ղարա տաղը֊ սուած լեռներուն գօտիներն էին ։

Յունիս 17 երեքշաբթի ժամ 9 ճամբայ ելանք, և 4 ժամ շարունակ լեռներ ելանք ու իջանք, որ հետզհե֊տէ կը բարձրանային ։ անցանք Նաւէյ Աթ տաղ ըսուած լե֊ռը, և իջանք Կէօք—Չէշմէ անուն ընդարձակ ձորին մէջ, ուր պատուական ջուր մը կար, և գիշերը կեցանք վը֊րաններու տակ ։

Յունիս 18 չորեքշաբթի ժամ 8 ճամբայ ելնելով՝ կէս ժամէն եկանք դէպ 'ի Ղարաճա տաղ ըսուած բարձր ու անառիկ լերին ստորոտը ։ Յիշեալ ընդարձակ ու դաշտանման ձորին մէջ փախթէ հիւսուած անթիւ բնակութիւններ կային քրդաց ։ ամեն տուն ունէր ձիեր, ոչխարներ, հաւեր, շուներ, որ ընտանիքներուն հետ խառնուած էին ։ Ամեն մէկ տան մէջ բազմաթիւ բնակութիւններ կային ։ այս քրդերը ամենառողջ մար֊դիկ ըլլալով իրենց թոռան թոռներուն հետ մէկ տեղ կապրէին ։ Մէջերնին ոչ նախանձ և ոչ խտրութիւն կար, ամենը իրար կը հոգային և իրար կը խնամէին ։ վերջա֊պէս, կարծես թէ ամենը մէկ մարմին էին ։ Երբ հասանք 'ի Ղարաճա տաղ, տեսանք որ հեռուէն աչքերնուս երևցած մացառները մեծամեծ ու անթիւ չոճի ծառերու անտառ֊ներ էին ։ Այս լեռն անցնելու համար միակ ճանապարհ մը կար, այն ալ շարունակ լեռան բոլորտիքը շրջագա֊յելով, զոր ծառերը բոլորովին գոցած էին, և Փրդա֊տանի կառավարիչ Ապտուլլահ փաշան քանի մը օր յա֊ռաջ խոչընդոտները բառնալով բանալ տուած էր ։ որով կարող եղանք 1 ժամու մէջ ելնել լեռան մինչև գագա֊

թը, ուր կար պարսպի մը աւերակ՝ որուն Քէօփրիւլիւ-օղլու անուն կամարը մինչև ցարդ կը կենայ. աստ տակէն անցնելով լեռան միւս կողմէն վար իջանք մինչ'ւ ստորոտը՝ որ 1 ժամ տևեց. չոճիի անտառները մինչև հոս կը շարունակէին։ Անկից լեռներու ու ձորերու մէջէն սկսանք յառաջ երթալ. ճանապարհը սարսափ ու զարհուրանք կը պատճառէր ամենուս. վասն զի տեղ տեղ այն աստիճան կը նեղնար՝ որ երկու կողմի պարսպաձև ու ապառաժուտ լեռներուն գագաթներն ու կողմնակի ցիցերը կարծես թէ իրարմէ նոր բաժնուած ու կրկին կուգային միանալ իրարու հետ, որ զմեզ կուլ տան. արևն անգամ չէր կրնար թափանցել հոս՝ որ փոքր ինչ մեղմացունէր ճանապարհորդին սարսափը։ Այս երկնաքերձ ու ապառաժուտ լեռներուն գագաթներէն մինչև ձորը խողովակներու նման լայն ծերպեր բացուած էին, որոնց մէջէն սահանաց նման անձրևի ջուրերը ահագին որոտմամբ կը հոսէին ու սեւ սարսափ կը ձգէին շուրջանակի։ Նոյն ձորին մէջ կամուրջէ մը անցնելով, կէս ժամ շարունակեցինք ճամբայնիս, ուր տեղ տեղ ծառեր և տեղ տեղ ալ ցորենի արտեր կային. մէկ ժամու չափ ալ բլրակներ ելանք ու իջանք, և գիշերը ժամ 1½ին հասանք Թիմուր գիւղին մօտ, ուր վրաններու տակ կեցանք։

Թիմուր գիւղ՝ արտերու, պարտէզներու ու ծառերու մէջ քրդաց գիւղ մ'է, 5 ժամ հեռի Սիւլէյմանիէն։ Ունի պատուական ջուր մը՝ որ ապառաժներէն կը բղխէր։ Հոս դիմաւորեց զմեզ Սիւլէյմանիի Աբտուլլահ փաշան։ Պաղտատէն Սիւլէյմանի երթալու բանուկ ճանապարհը այս չէր, բայց Սեննէկապետ Պէյը գահաւորակով (թահտըրավան) երթալուն համար այս ճամբան աւելի յարմար դատուած էր։

Յունիս 19 հինգշաբթի իրիկուան ժամ 9, ճամբայ

ելանք եւ քիչ մը յառաջ երթալէ ետքը անտառախիտ լերան մը գագաթն ելնելով՝ դարձանք միւս կողմը, ուրկէ կերեւար առջեւնիս ընդարձակ դաշտ մը, որուն մէջ կը տեսնուէր Սուլէյմանի քաղաքը՝ լեռնէն 2 ժամու չափ հեռաւորութեամբ, եւ հորիզոնին վրայ ալ երկնաբերձ լեռներ, որ կը զատէին Տաճկաստանը պարսից հողերէն։ Նոյն դաշտը իջնալով կերթայինք դէպ 'ի քաղաքը՝ մշակեալ հողերու ու ցորենի արտերու մէջէն անցնելով։ Դաշտին մէջ ամեն կողմէն վտակներ կը հոսէին ու ցիր ու ցան քրդաց գիւղեր շինուած էին։ Վերջապէս Սուլէյմանիին 1 ժամ մնալով իջանք ծառուտ վայրի մը վրայ վրաններու տակ ու գիշեր կեցանք։

Յունիս 20 ուրբաթ ժամ 8 ճամբայ ելանք․ առջեւնիս կերթային հազարաւոր հետեւակ ու ձիաւոր զօրքեր՝ որոնց գլուխն էր քաղաքին կառավարիչ Ապտուլլահ փաշան, եւ մինչեւ քաղաքը՝ անթիւ ձիաւոր [illegible] ու հրացանակիր [illegible] բռնուած զինուորներ երկու կողմէն բարեւի կեցած էին։ Այսպիսի շքեղ հանդէսով ժամը 9 ին մտանք քաղաքը եւ փաշային պալատն ելանք։

## ՍՈՒԼԷՅՄԱՆԻ։

Ամեն կողմէն 1 ժամ հեռի, շուրջանակի բարձր լեռներով պատած ու դաշտի մէջ շինուած քրդաց քաղաք մ՚ է Պաղտատի իշխանութեան ներքեւ։ Ունի 2500 ի չափ տուն, 15000 ի չափ բնակիչ, որոնցմէ 14500 քիւրտ, 150 հրեայ, 150 քիլտանի եւ 100 ալ պարսիկ են։ Քանի մը մզկիթ, 4 մութ բաղնիքներ որոնց մէջ մէկ մէկ աւազան կայ, ուր կը մտնեն լուացուելու համար։ Քանի մի ալ խան։ Վաճառանոց մը, ուր կը գտնուին զա-

նաղան՝ արհեստաւորներ, ոսկերիչ, Նալպէնտճի, տէփար, կօշկակար, դերձակ, սափրիչ, զինագործ, ձուլագործ (դէօգմէճի), Համետաքսագործ (գազազ), եօրղանճի, ծխավաճառ, մրգավաճառ, Հնավաճառ (էսկիճի), վաճառական, ևլն ևլն։ Այս վաճառանոցը՝ որուն վրայ տերևներով գոցուած է, այնքան ցած էր՝ որ բարձրահասակ մարդիկ գլուխնին ծռելով պիտի անցնէին։ Երկու զինուորանոց, որոնց մէկուն մէջ կար 3000 ի չափ հետևակ քուրդ զօրք և միւսին մէջ 1000 ի չափ․ այս երքնին մէջ էր փաշային ապարանքը․ Տուներն առհասարակ գետնի վրայ միակուղ ու աղիւսակերտ շինուած էին, տանիքները հողով գոցուած․ ամեն տուն ծաղկազարդ պարտէզ ունի և իրարմէ հեռի է, որով քաղաքը շատ ընդարձակ կերևայ և որուն բոլորտիքը հազիւ երկու ժամու մէջ կը շրջագայուի։ Ջուրը առատ՝ անուշ ու պաղուկ է, թէպէտ և հորի ջուր․ ուր որ հոր բանան՝ անպատճառ ջուր կելնէ․ ուստի քանի մը հոր քովէ քով բացեր, իրարու հետ հաղորդեր և գետնին տակէն ճամբայ մը շինելով ու քիչ մը անդին նոյն հորերուն ջուրը դուրս բղխեցնելով արուեստական վտակ մը շինած են, որ միշտ կը վազէ և քաղաքին զանազան կողմերուն մէջ ոլորելով կանցնի կերթայ։ Մերձակայ վայրերէն ու լեռներէն սառած ձիւն կը բերեն քաղաքը ու ջուրին կը խառնեն։ Քաղաքացւոց սովորութիւն եղած է սառով խառնուած ռաքըն խմել․ նոյնպէս իրարու այցելութե գացած ժամանակ ձիւնախառն ռաքըն կը հրամցունեն, և սրճարաններու մէջն ալ նոյնը կը գործածեն խահվէի տեղ։ Օդն աղէկ է, սաստկաշունչ քամիներ կը փչեն, որ գետնին փոշիները ժողվելով քաղքին վրայ կը բերեն ու անձրևի պէս տուներու մէջ կը լեցընեն․ սանկ սաստկաշունչ քամիներու ատեն՝ բնակիչները փողոցներէն փախչելով տուներնուն մէջ

կը փակուին։ Քաղաքացիք կոշտ են բայց հիւրասէր։ Երկի֊
րը բարեբեր ըլլալուն՝ ամեն բան առատ ու աժան էր։
Քաղաքէս մեկնելէն յառաջ, կառավարիչ փաշան՝ իր հրա֊
մանատարութեան տակ գտնուած թէ՛ կանոնաւոր և թէ՛ ան֊
կանոն զօրաց յառաջադիմութիւնը ցոյց տալու համար
զինախաղութիւն մ'ընել տուաւ որ 6 ժամ տևեց։

Յուլիս 7 երկուշաբթի իրիկուան ժամ 9, չքեղ
հանդէսով քաղաքէն ելանք 6 ժամ հեռի լեռան մը
ստորոտն ծառուտ և սպառաժուտ վայրի մը վրայ ի֊
ջանք գիշերուան ժամ 4 ին. այս տեղ պատուական ջուր
մը կը բղխէր և առջևն ալ աւազան մը շինուած էր։
Քաղաքէն մինչև հոս երկու լերանց գօտիներու մէջ մէկ
ժամէն աւելի ընդարձակութիւն ունեցող դաշտային ու
քարուտ ճամբայ մ'էր, ուր ցորենի արտեր [illegible]կային,
տեղ տեղ ալ ջուրեր կը բղխէին։

Յուլիս 8 երեքշաբթի իրիկուան ժամ 9, ճամբայ
ելանք և վերոյիշեալ լերանց գօտիներու մէջ տեղի
նոյն դաշտային ճանապարհը 4 ժամու չափ շարունա֊
կելնէս վերջը՝ իջանք մշակեալ տեղ մը, ուր պատուա֊
կան ջուր մը կար և աւազան մը՝ ծառերու տակ։ Ար֊
տեր ու այգիներ ալ պակաս չէին։ Այս տեղէն կէս
ժամ հեռի ապառաժուտ ցցուած և սրածայր լեռներ
կը տեսնուէին։

Յուլիս 9 չորեքշաբթի իրիկուան ժամ 8, ճամբայ
ելնելով՝ նախ անցանք ձորերու մէջէ, որ այգիներով
ու շոճի ծառերով զարդարուած էին և փոքրիկ գիւ֊
ղեր կը գտնուէին։ Վերջը արագասահ վտակէ մը՝ որ
բաւական լայնարձակ էր ու 1 ½ կանգուն խորութիւն
ունէր. ասկէ [illegible]անդին բլուր մը դառնալով [illegible]կրկին մը֊

տանք ձորերու մէջ, և յառաջ երթալով գիշերուան ժամ 2ին իջանք լեղի ջուրի մը գլուխը։

Յուլիս 10 հինգշաբթի իրիկուան ժամ 8, ճամբայ ելանք Քէօյ — Սանճաք երթալու համար, որ 5 ժամ հեռի էր, և նոյն օրը գիշերուան ժամ 1ին մտանք. այսօրուան ճամբանիս նախ՝ մէկ ժամու չափ շարունակ ձորերու մէջէ էր, ուր կը գտնուէին գիւղեր, արտեր և այգիներ. ետքը դարձանք անտառուտ բարձր լեռ մը՝ որ 2 ժամէն աւելի տևեց. վերջապէս մտանք ընդարձակ դաշտի մը մէջ՝ որուն հորիզոնին վրայ լեռներ կը տեսնուէին։ Այս դաշտը թէպէտ քարուտ էր, բայց ամեն կողմ մշակուած էր ցորենի արտերով։

## ՔԷՕՅ — ՍԱՆՃԱՔ։

Դաշտին ծայրը բարձր տեղի մը վրայ շինուած 1000 տնով քրդաց գիւղ մ'է, ուր քանի մը տուն հրեայ ալ կը գտնուի. Գիւղին մէկ կողմը քայքայեալ պարիսպ մը կայ, և 5 վայրկեան հեռի բարձր տեղի մը վրայ նոր բերդ մը։ Բնակիչները շատ կոշտ են։ Օդը ծանր է, ջուրը գէշ։ Գիւղին թէ՛ ներսը և թէ՛ շրջակայքը կը գտնուին բարեբեր այգիներ և ծառաւէտ պարտէզներ։ Ունի մեծ մզկիթ մը, բաղնիք մը, խան մը, վաճառանոց մը՝ ուր կը ծախէին սովորաբար գործածելիք չնչին բաներ։ Խանութները դուռն չունէին, և իրարմէ ալ զատուած չըլլալով՝ մէջէ մէջ կանցնուէր. վասն որոյ ամեն իրիկուն կը պարտաւորէին մէջի եղած բաները պարպել ու տուները տանիլ։ Քանի մը հարիւր զինուոր կար։ Տուները Սիւլէյմանիի տուներէն ամուր ու աղէկ շինուած էին։ Բնակիչներն առհասարակ ամառները տանեաց վրայ կը պառկին, տեսակ մը

մանճակալի նման շինուած անկողնոց մէջ, վասն զի տուներուն մէջ գիշերը շատ տաք կընէ և կարիճ ալ կը գտնուի։ Հոս Երևելի հարուստ անձ մը կար, Մօլլա Պէքիր անուն, որուն համար կըսէին թէ իւր հարստութեան չափը չըգիտէ։

Յուլիս 14 երկուշաբթի իրիկուան ժամ 8 ճամբայ ելանք։ Նախ 2 ժամու չափ անցանք ձորերու մէջէ, ուր ամեն տեղ արտեր ու այգիներ պակաս չէին եւ քըրդաց գիւղեր ալ կային։ Ետքը մէկ ժամու չափ ալ դարձանք բարձր լեռ մը, անկէ ալ անդին ելանք ուրիշ լերան մը գագաթը, ու իջանք միւս երեսն 'ի վայր՝ անցնելով քրդաց գիւղի մը մէջէ, որուն ծայրը մինչեւ լերան ստորոտն ու ձորին մէջը կը հասնէր։ Այս ձորին մէջէն ու լերան ստորոտէն ապառաժ նեղ ճամբաներու վրայէ մէկ ժամու չափ յառաջ գացինք մեծ դժուարութեամբ, եւ իջանք ծառազարդ ու անուշ ջրով տեղ մը, գիշեր կենալու համար։ Այս ձորն ալ մշակեալ էր, ունէր պարտէզներ, տեղ տեղ ալ ծխախոտի արտեր։

Յուլիս 15 երեքշաբթի, ճամբայ ելանք Պալասան գիւղը երթալու համար, որ 4 ժամ հեռի էր։ Նախ անցանք դաշտի մը մէջէ ու մտանք ձորի մը մէջ, ուր կային արտեր ու քրդաց գիւղեր․ վերջը դարձանք բարձր լեռ մը, անկէ ալ իջանք ուրիշ ձոր մը անցնելով Հօշափ անուն քրդաց գիւղին քովէն, ուրկէ մէկ ժամ հեռի լերան ստորոտն իջանք Պալասան գիւղին քով, ու երկու գիշեր կեցանք։

Այս գիւղը լեռան զառ 'ի վայրին վրայ շինուած ու մինչև ստորոտը կը հասնէր․ ունէր այգիներ, բարեբեր պարտէզներ, պտղաւէտ և հովանաւոր ծառեր․

օդն ալ շատ պատուական էր ։

Յուլիս 17 հինգշաբթի, ճամբայ ելանք, 4 ժամ շարունակ անցնելով ընդարձակ ձորերու մէջէ, ուր կային գիւղեր, արտեր, այգիներ, անտառներ. անուշ ու յստակ ջուրեր. իջանք ծառուտ տեղ մը անուշ ջուրի մը գլուխ՝ գիշեր կենալու համար. Այս տեղէն կէս ժամ հեռի կերեւար Պէճան — Տաղը ըսուած բարձր ու դժուարամատոյց լեռը ։

Յուլիս 18 ուրբաթ առտու ժամ 10, ճամբայ ելանք Բէյվանտըզ մտնելու համար, որ 5 ժամ հեռի էր. Նոյն օրը ժամ 8ին մտանք մեծ հանդէսով. Նախ կէս ժամու չափ ձորերու մէջէ երթալով հասանք Բէճանտաղ կամ Պէճան — Տաղը ըսուած լերան ստորոտը, և հազիւ 1 1/2 ժամու մէջ ելանք անոր գագաթը ։ Այս ապառաժուտ լեռը չոճի ծառերով ծածկուած պարսպի պէս բարձրացած էր. տեղ տեղ յստակ ու անուշ ջուր կը բղխէր։ գագաթին մօտ փոքրիկ հարթ տեղի մը վրայ մարտկոց մը կար՝ որուն մէջ զօրք կսպասէր.

Դարձանք լեռան գագաթն ու սկսանք մեծ դըժուարութեամբ ու ահու դողով վար իջնել ապառաժուտ նեղ ճամբու մը վրայէ, որ 2 ժամու չափ տեւեց ։ Այս լերան ստորոտէն յստակ ու առատ ջուր մը կը բըղխէր՝ որ Բէյվանտըզի քաղաքը կը յագեցընէր ։ Անկէ կէս ժամ ալ յառաջ երթալով՝ ելանք բլրի մը վրայ՝ ուրկէ կէս ժամ հեռի էր Բէյվանտըզ ։

Այս քաղաքին մօտ տեսանք բարեբեր պարտէզներ, որոնց մէջ տերեւներէ շինուած շատ մը խրճիթներ կային ։ Այս տեղը Քարաթէ կանուանի ։

# ՐԷՎԱՆՏԸԶ ։

Զապ — Սու գետին մէկ վտակին եզերքը բարձրաւանդակի մը վրայ շինուած 1600 տունով քրդաց գիւղաքաղաք մ'է պարսպապատ ։ Ունի 6000 բնակիչ քիւրտ, և մէկ երկու հարիւր Հրեայ ։ Երկու թաղի բաժնուած է, վերին և ստորին, որ իրարմէ փոքրիկ միջոցաւ մը զատուած են ։ Բնաւ հարթ տեղ մը չըկայ, ամեն տեղ զառ 'ի վայր է ։ Պարիսպը՝ միայն լեռանը հիւսիսային կամ Բարէլթի կողմը շինուած է, ուրկէ մտանք գիւղը · իսկ ստորոտը շուրջանակի խրամի նման բնական խորութիւն մը կայ 10 կամ 15 կանգուն, որուն մէջէն կը վազէ Զապ—Սու գետին մէկ վտակը՝ որուն վրայ երկու կամուրջներ շինուած են՝ դիմացի և քովի լեռները անցնելու համար · կամուրջներուն գիւղի կողմի ծայրերը մէկ մէկ դուռն շինուած է ։

Գիւղին լեռն ուղղակի բարձրացած ըլլալուն համար՝ տուները իրարու վրայ հեծածի պէս կերևային · Տուները աղիւսակերտ են · ձեղունները ցած, տանիքները հողով ծեփած ։ Կայ փոքրիկ վաճառանոց մը, փոքրիկ բաղնիք մը, իսկ և ոչ մէկ ծառ մը ։ Ջուրը վտակին ջուրն է և աղէկ · այս կողմերը միշտ ձիւն դըտնուելուն համար՝ բնակիչներն իրենց խմելու ջուրերուն մէջ ձիւն կը խառնեն ։ Օդը ծանր է և ամառը շատ տաք · թէպէտ գիւղը լեռան վրայ է, բայց շուրջանակի բարձրաբերձ պարաւոր լեռներով պաշարուած ըլլալուն համար՝ կարծես թէ խոր վիրապն ես · այս պարաւոր լեռները՝ որ տաճկաց հողը Պարսկաստանէն կը զատեն, 'ի հնումն Զակրոս լերինք կը կոչուէին ։ Բնակիչներն ամառնային տաք եղանակին մէջ տանեաց վրայ մահճակալի նման շինուած անկողիններու մէջ կը

պառկին, թէ և տանիքները լ'րարու մէջ կը նային վերէն 'ի վար. չատերն ալ Քարաթէ կերթան օդափոխութեան։ Բնակիչները կոշտ են. կանայք նուաճեհրամ չունին, ամենն ալ անկիրթ ու մոլի են. արք և կանայք մի և նոյն գետի մէջ կը լուացուին իրարմէ քիչ հեռի։ Կարիճ չատ կայ։ Միսն ու հացն աժան էր. առատ ալ մրգեղէն կայ։ Մէկ քանի հարիւր զօրք կար, որ գիւղին զանազան փողոցներուն մէջ մասնաւոր տուներու բաժնուած էին։ Գիւղին արևելեան կողմը բարձր լեռ մը կայ՝ որ մէկ ժամ հեռի է. հիւսիսային կողմը Քիւստան անուն լեռը՝ որ երեք ժամ հեռի է. արևմտեան հիւսիսային կողմը բերդը որ Իչ—քալէ կըսուի. ուղղակի արևմտեան հիւսիսային կողմը Պալաք անուն լեռը. հարաւային կողմը Քիւրէկ—տաղը ըսուած լեռը. արևմտեան կողմը Պիճան—տաղը ըսուած լեռը, և արևելեան հարաւային կողմը Հէնաէրէն լեռը՝ ժամ մը հեռի. այս լեռը Ճինտիեան ըսուած տեղին վրայ բարձրացած է. ասոր ստորոտը խորունկ ջրհոր մը կայ, ուրկէ առատ ու պատուական ջուր մը կը բղխէ, որ Ճինտիեանէն անցնելով կերթայ գետը կը խառնուի. այս հորին ջուրը ցերէկէն մինչև կէս գիշեր կը բղխի, բայց կէս գիշերէն մինչև ցերէկ կը դադրի և ձմեռը բոլորովին կը կտրի ու հորն ալ կը ցամքի։ Ճինտիեան չատ գեղեցիկ ու զմայլելի ծառաղարդ տեղ մ'է. հոն կային այգիներ, պարտէզներ, ցորենի ու ծխախոտի արտեր, ուրկէ կանցնի գետը։ Այս զուարճալի վայրերուն մէջ քանի մը օր ժամանակ անցուցինք։

Յուլիս 21 երկուշաբթի ժամ 9, չքեղ հանդէսով ճամբայ ելանք Քեանօթման երթալու համար, որ 6 ժամ հեռի է։ Նախ ելանք Քիւրէկ—տաղը ըսուած դժուարամատոյց լեռան գագաթը՝ որ երկու ժամ տե-

ւեց ․ անկէ սկսանք իջնալ լեռան միւս կողմն 'ի վար մինչև ստորոտը՝ ճիշդ երկու ժամու մէջ ․ վերջը երկու ժամ ալ ձորերու մէջէ անցնելով իջանք ծառոտ դաշտավայրի մը վրայ, ուրկէ վտակ մը կանցնէր և որուն եզերքին վրայ ջաղացք մը շինուած էր ․

Յուլիս 22 երեքշաբթի իրիկուան ժամ 9 ճամբայ ելանք, 5 ժամ շարունակ ձորերու մէջէ անցնելով իջանք Զապ — Սու վտակին եզերքին վրայ ու գիշեր կեցանք ։

Յուլիս 23 չորեքշաբթի իրիկուան ժամ 9 ժամբայ ելանք և 5 ժամ հեռի Եահուտի — քէօյի ըսուած հրէից գիւղն իջանք, որ 20 վայրկեանի չափ հեռի էր Զապ — Սու վտակէն ։

Յուլիս 24 հինգշաբթի իրիկուան ժամ 8 ճամբայ ելանք, 8 ժամ շարունակ լեռներ ու ձորեր անցնելով իջանք դաշտի մը մէջ քրդաց գիւղ մը, ուրկէ ջուր մը կանցնէր ․

Յուլիս 25 ուրբաթ իրկուան ժամ 8 ճամբայ ելանք Պարթուլլահ կամ կեավուր — քէօյ ըսուած գիւղն երթալու համար, որ 8 ժամ հեռի էր, և նոյն օրը մտանք ․ այս գիւղը Մուսուլէն 4 ժամ հեռի է ․ ասկէ արագահոս ջուր մը կանցնի՝ որուն վրայ ջրաղացներ շինուած էին ։

Յուլիս 26 շաբաթ առտու ժամ մէկ ճամբայ ելանք և ժամ 6 ին շքեղ հանդէսով մտանք Մուսուլ, ուր այս անգամ 10 օր կեցանք ․

Օգոստոս 4 (ռամազան 5) երկուշաբթի ժամ 8 մեծ հանդէսով մեկնեցանք քաղաքէն . Ճէյրէէ ճամբան բռնելով զարկինք դաշտային ճամբայ մը . 3 ժամ հեռի ճամբուն վրայ հանդիպեցանք Թէբրէֆ անուն քիւրտանիներու գիւղը , որ 1000ի չափ քարաշէն մեծ տուներ ունէր , և գործածած ջուրերնին հորի ջուր էր ։ Անկէ 3 քառորդ հեռի է Պաթմըն անուն քիւրտանիներու գիւղը ։ Թէբրէֆէն 1½ ժամ ալ երթալով իջանք Թիլլաքօբ անուն քիւրտանիներու աւերակ գիւղը , ուր 150 տուն միայն մնացեր էր ։

Օգոստոս 5 երեքշաբթի ճամբայ ելանք , և 6 ժամ դաշտային ճամբայէ մը երթալով իջանք աւերակ գիւղ մը ու գիշեր կեցանք ։ Այս դաշտին մէջ բազմաթիւ գիւղեր կային՝ մէկ քանին քայքայուած , տեղ տեղ ալ ծառեր , շատ մ’ալ վտակներ կանցնէին ։

Օգոստոսի 6 չորեքշաբթի , 7 ժամ ճամբայ երթալով իջանք քրդաց գիւղ մը , ուր անթիւ սօսիի ծառեր կային ։

Օգոստոս 7 հինգշաբթի , 6 ժամ ճամբայ երթալով անցանք մերթ դաշտեր և մերթ բլուրներ . վերջը իջանք դաշտի մէջ Եէզիտիներու գիւղ մը , որուն առջևէն առատ ջուր մը կանցնէր . ճամբան շատ տեղ գիւղեր կար , ու վտակներ կանցնէին ։

Օգոստոս 8 ուրբաթ առտու ժամ 8 ճամբայ, ելանք Ճիզրէ երթալու համար, որ 10 ժամ հեռի է, և նոյն օրը ժամը 5ին մտանք ։ Ճամբան շատ գիւղեր կային, և երկու կողմերնիս անընդհատ ցորենի արտեր էին . քանի մը ջուրերու վրայէ անցանք . նոյնպէս անցանք Պաթ-

ման ջուրը ․ և Ճիղրէի մօտ դիմաւորեց զմեզ էմին փաշան, որ մէկ գունդ մը զօրքով կսպասէր քաղաքը ․ մեծ հանդէսով անցանք կամուրջն ու մտանք քաղաքը ։ Զօրքը՝ քաղաքին շուրջը և 10 վայրկեան հեռի վրաններու մէջ էին, և մէկ մասն ալ պարիսպներուն վրայ ու քաղաքին մասնաւոր տուներու մէջ ։

Օգոստոս 9 շաբաթ ճամբայ ելանք, Տէրկիւլի դէմը գտնուած լեռն երթալու համար, որ $4^1/_2$ ժամ հեռի է, ուր տէրութեան բանակը կը կենար ։ Ինչպէս որ յառաջագոյն գրած եմ, քանի մ'ամիս յառաջ տէրութիւնը ապարապետ Օսման փաշայի հրամանատարութեանները քև՝ Քրդաստանի վրայ բանակ ղրկելով պատերազմ բացեր էր, և կուզէր ձերբակալել քրդաց գլխաւոր և անյաղթելի ապստամբապետ Պետրհան պէյն ու իրեններմանները, որոնց ամենն ալ պատերազմին սաստկութեանը չը դիմանալով արդէն անձնատուր եղած էին, և ընդհանուր Քրդաստան հնազանդութեան մտած էր քիչ ատուր մէջ ․ Նոյն օրը անցանք մանր բլուրներ, ընդարձակ ու առատաջուր ձորեր ․ նաև դարձանք մէկ ձոր մ'որուն երկու կողմը միակտուր ապառաժէ բարձր լեռներ կային, որոնց կէս մէջքին վրայ դէմ առ դէմ բերդեր շինուած էին. վերջը ելանք մէկ բարձր լեռ մը, որուն գագաթին կողմը բաւական ընդարձակ տեղէ մը մը յստակ ու առատ ջուր մը կը բղխէր ․ այս լեռն իջնալով՝ անկէ ալ ելանք ուրիշ անտառոտ լեռան մը վրայ, որուն զառ 'ի վայրին վրայ հաստատուած էր բանակը 500ի չափ վրաններու տակ ․ այս լեռան չատ կողմերէն առատ ու յստակ ջուրեր կը բղխէին ․ հոս իջանք մեծ հանդէսով ու գիշեր կեցանք ։ Այս լեռան արևելեան կողմն է ძეღელე—ძე–ტე կամ ძე–ტეო ըսուած անաւուրկ ապառաժուտ ձիւնապատ բարձր լեռը, որուն վր-

րայ շինուած էր Պետրհան պէյին բերդը, որ պատե֊
րազմին ատեն ամրակոծութենէ կործաներ էր։

Քրդերն աւանդութեամբ կը կարծեն՝ թէ Նոյի տա֊
պանը այս լեռան վրայ իջած է։ Ճիզրէէն մինչև հոս
լեռներուն վրայ ու ձորերուն մէջ քրդաց, քիլտանցւոց
ու Հայոց անթիւ գիւղեր կային։

Օգոստոս 11 երկուշաբթի ժամ 3, բանակով հան֊
դերձ ճամբայ ելանք Ավրան գիւղն երթալու համար,
որ 5 ժամ հեռի է, և նոյն օրը գիշերուան ժամ $1^{1}/_{2}$ ին
հասանք. Նախ անցանք քարոտ ու լեռնային ճամբանե֊
րէ, ուր բազմաթիւ գիւղեր ու պատուական ջուրեր
կային. վերջը թաւալեցինք լեռ մը՝ որ $2^{1}/_{2}$ ժամ տևեց։
Ավրան լեռան վրայ շինուած քրդաց գիւղ մ'է գեղե֊
ցիկ պարտէզներով ու այգիներով. ունի անուշ ու պաղ
ջուր մը։ Յաջորդ օրն ալ հոս անցուցինք՝ որ բանակին
ետ մնացող զօրքերը գան ժողովին.

Օգոստոս 13 չորեքշաբթի ճամբայ ելանք և 5 ժամ
հեռի դաշտի մէջ շինուած Թիլ անուն քրդաց ու Հայոց
գիւղն իջանք, որ պատուական ջուր մ'ունէր։ Ճամ֊
բան շատ գիւղեր կային, և ընտիր ցորենի արտեր ու
յստակ ջուրեր պակաս չէին։

Օգոստոս 14 հինգշաբթի ճամբայ ելանք, 9 ժամ հե֊
ռի Մութուլթ գիւղն երթալու համար։ Անցանք ձորերու
մէջէ, դարձանք լեռներ, ուր գիւղեր, ջուրեր, ար֊
տեր ու այգիներ կը գտնուէին. վերջը երբ գիւղին մօ֊
տեցանք, տեսանք լեռան վրայէն Շադը, որուն մէջ
կը թափէր Պօշքոն——••• ըսուած ընդարձակ արագահոս
գետակը։ Այս գետերուն խառնուած տեղը հրուան֊
դանի մը վրայ Թիլ անուն քրդաց գիւղ մը կայ. Մու֊

Թութ գիւղը Պօհրան—սուին ձախ կողմն է ջուրէն քառորդ մը հեռի դաշտավայրի մը վրայ ․ Գիւղին մէջ ուրիշ ջուր մ'ալ կար՝ որ բնակիչները խմելու կը գործածեն ։

Օգոստոս 15 ուրբաթ ճամբայ ելանք, 5 ժամ հեռի Սղերդ երթալու համար ։ Թութէն կէս ժամ հեռի՝ Պօհթան ջուրին մէջէն աջ կողմը անցանք, և 3 ժամ անոր եզերքէն չը հեռանալով դաշտավայրերու վրայէ յառաջ գացինք, ու լեռ մ'անցնելով մտանք ընդարձակ դաշտի մը մէջ, որ ցորենի արտերով ու այգիներով ծածկած էր ․ աս դաշտին մէջ ո՛չ գետ կար և ո՛չ վտակ, միայն հորեր փորուած էին պէտք եղած ջուրը հոգալու համար ․

## ՍՂԵՐԴ ․

Լեռան մը վրայ շինուած ամուր գիւղաքաղաք մ'է ․ ունի 2500 քարաշէն հոյակապ տուներ, որոնց 1800 ը քրդաց է, մնացածը հայ, ասորի, քիլտանի քրիստոնէից ։ Ամրակառոյց մեծամեծ ապարաններ, մզկիթներ, եկեղեցիներ, մեծ վաճառանոց մ'ուր ամեն բան կը գտնուէր ․ Այս կողմերը շատ բարեբեր են ․ պատուական մեղր, մոմ, կարագ, սպիտակ նաւթ և ամեն տեսակ մրգեղէններ, թուզ, նուռ, ընկոյզ, առատ խաղող՝ մանաւանդ շաֆի—խուշխուշ բուսած, ձէթ, փշատ, ևլն ։ Օդը մաքուր ու առողջ է, ջուրը քիչ ։ Բնակիչները առ հասարակ վայելչադէմ ու հաստաբազուկ են ։

Մենք և բանակին աստիճանաւոր պաշտօնատէրները մասնաւոր տուներու մէջ իջանք, և զօրքը վրաններու տակ ։ Օսման փաշան իսկոյն ձեռք անցուց գիւղաքաղաքիս եօթը գլխաւոր ապստամբ քրդերը, և շղթա-

յակայ ըրաւ առանց ունկն դնելու ոչ կանանց պաղատանացը և ոչ տղայոց ողբոց աղաղակին, և հրաման ըրաւ որ հետ բերուին .

Օգոստոս 16 շաբաթ օր ճամբայ ելանք 6 ժամ հեռի Մնար գիւղն երթալու համար . Նախ ժամ մը դաշտային ճամբու մէջէ երթալով՝ լեռնէ մը վար իջանք , և կամուրջի մը վրայէ անցնելով՝ Գեղեր գիւղը մտանք . վերջը դարձեալ դաշտավայրի մէջէ երթալով՝ ելանք լերան վրայ ու մտանք Մնար գիւղը , որ այգիներու ու անթիւ ծառերու մէջ դրախտանման գիւղ մ' էր . բանակն ալ զետեղեցաւ վրաններու տակ այգիներու մէջ :

Օգոստոս 17 կիւրակի օր ճամբայ ելանք , եւ եօթն ժամ հեռի Պ.Ի.Ն.Լ.Է.Լ —••• ըսուած գետակին եզերքը իջեւան ըրինք : Նախ՝ 2—3 ժամ շարունակ լեռներու կէտ մէջքին վրայ գտնուած նեղ ճամբաներու վրայէ իրարու ետեւ երթալով իջանք այգիներու մէջ գեղեցիկ տեղ մը՝ ուր քիչ մը հանգիստ ըրինք . վերջը 4 ժամ ալ երթալով, իջանք Պ.Ի.Ն.Լ.Է.Լ —••• ըսուած գետակին եզերքին վրայ , ուր ոչ ծառ կար և ոչ տուն. հոս գիշերը կեցանք վրաններու տակ :

Օգոստոս 18 երկուշաբթի ճամբայ ելանք 6 ժամ հեռի Պիթլիզ երթալու համար , և նոյն օրը իրիկուան մտանք : Ճամբան մինչև Պիթլիզի մէկ ժամ մնալով գրեթէ դաշտային էր , և մենք միշտ Պիթլիզի գետին եզերքէն չը հեռանալով կերթայինք . բայց վերջը ելանք լեռ մը , որուն ապառաժուտ գագաթին կողմը դուռն նման փորուած ծակէ մը մէջէ անցնելով մտանք Պիթլիզ : Քաղաքին մօտ երկիրը մշակեալ էր. արտեր, այգիներ ու անհամար ծառեր կային և. շատ մ'ալ առուակներ՝

որ Պիթլիզի գետը կը թափէին ։

## ԲԱՂԷՇ (ՊԻԹԼԻԶ)

Ձորերու մէջ ու լեռներու վրայ շինուած 4300 տունով բերդաքաղաք մ'է, ամեն կողմէն բազմաթիւ ձորերով ու դժուարամատոյց լեռներով պատած ։ Արեւելեան կողմէն սահմանակից ունի Խլաթ ու Դատուան, ուրկէ 5 ժամու չափ հեռի է ․ արեւմտեան կողմէն Մուշ, ուրկէ 12 ժամու չափ հեռի ․ և հիւսիսէն Մանազկերտ քաղաքը ։ Ունի 25600 ի չափ բնակիչ, որոնց 20000 ը, քիւրտ ու մահմէտական են, 5000 ը հայ, 600 ի չափ ալ եագուպի ու ասորի ։ 100 տարիի մօտ առաջ 25000 ի չափ տուն կար, և 100000 է աւելի բնակիչ ․ բայց անդադար խռովութեանց, անտանելի հարստահարութեանց և անխնայ սովերու չը կրնալ դիմանալով ցրուեր են ։

Բաղէշ՝ ի հնումն Տուրուբերան նահանգին մայրաքաղաքն էր ։ Տուրուբերան նահանգը՝ — ռամկօրէն Տարբերունի — Մեծին Հայոց 15 նահանգներէն մէկն էր, որուն սահմանակից էր արեւելեան կողմէն Վասպուրական նահանգը ․ արեւմուտքէն Չորրորդ Հայք ․ հիւսիսէն Բարձր Հայք ու Արարատ ․ հարաւէն Աղձնեաց և Մոկաց նահանգները ։ Այս Տուրուբերան նահանգն ալ 16 գաւառներու բաժնուած էր, որոնց մէկն էր Բզնունեանց (1) գաւառը ․ Բաղէշ քաղաքը այս

(1) Այս գաւառին ի՛նչ սկզբամբ Բզնունիք՝ ըսուելուն պատճառը՝ Խորենացւոյն պատմութենէն կը սորվինք, որ Հայկայ Մանաւազ որդւոյն ժառանգն եղող Բազ նահապետը՝ Վանայ ծովուն արեւմտեան հիւսիսային կողմի եզերքը ի-

Բզնունեանց գաւառին մէջ է, ինչպէս նաև Արճկէ, Խլաթ, Հիզան քաղաքները. բայց ազգային աշխարհագիրներէն ոմանք կը պնդեն թէ 'ի հնումն Բաղէշ Տուրուբերան նահանգին մէջ չէր գտնուեր, այլ Աղձնեայ նահանգին մէջ կը համարուէր, որուն մէջն էր Սալնոյ ձոր անուն գաւառը. այս պատճառաւ էր որ Բաղէշի հայերը մինչեւ հիմայ Սալնոյ ձոր կանուանեն քաղաքին տեղը։ Բաղէշ քաղաքը՝ որ ձորերու մէջ ու լեռներու վրայ շինուած ըլլալը արդէն ծանուցինք, ունի չորս ձոր. արեւելեան, արեւմտեան, հիւսիսային եւ հարաւային. առջի երեքին մէջէն կը վազեն մշտահոս երեք վտակներ, որոնք երթալով դէպ 'ի հարաւային կողմի ձորին մէջ կը միանան։ Այս երեք վտակները իրարու հետ չը միացած զատ զատ անուն կը կրեն իրենց անցած նշանաւոր տեղերուն անուններն առնելով, եւ կըսուէին Ածղա ջուր, Օռեխա ջուր, Խոջերա կամ Խոսրով ջուր. այս վերջինը Ամիտօլ վանքին առջեւէն անցնե-

րեն բնակութեան տեղ ընտրելով, իր անունովը Բզնունիք անուանած է թէ՛ ծովը եւ թէ՛ գաւառը. «յետ որոյ կեցեալ (Հայկայ) եւ այլ եւս ամս ոչ սակաւս մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազն Արմենակայ որդւոյ իւրոյ։ Իսկ նորա թողեալ երկուս յեղբարց իւրոց զԽոռ եւ զՄանաւազ ամենայն աղխիւն իւրեանց 'ի կոչեցեալն Հարք, եւ զորդի Մանաւազայ զԲաղ ..... յարեւմտից հիւսիսոյ ծովուն աղւոյ եւ զգաւառն եւ զծովն անուանէ իւրով անուամբն։ Եւ 'ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւնս (նախարարութիւնս) Մանաւազեան եւ զԲզնունեանց»։ (Խորեն. Գիրք ..)։

Վանայ ծովուն արեւմտեան հիւսիսային կողմը 3900 տարիէ չափ առաջ շինուած այս Բաղ անուն գիւղը մինչեւ իմա կը կենայ. թէպէտ գիւղին հայ բնակիչները ժամանակաւ քրդաց հարստահարութիւններէն բռնադատուելով ձգեր

լուն համար, քրդերը վանքին անունովը Ա. Մըրթօլ—լույը կանուանեն ։ Իսկ միանալնուն տեղը ընդհանրապէս կը կոչուին Բաղէշու ջուր, Աղ—Պ:Ն:Լ:Ն:, որ կը թափի Տիգրիս գետին մէջ ։

Քաղաքիս տուներն այս երեք ձորերուն մէջէն անցնող վտակներուն եզերքէն սկսելով հետզհետէ դէպ 'ի վեր կարգ կարգ բարձրանալով լերանց զառ 'ի վայրին վրայ տարածուած են, որոնք ըստ մեծի մասին իրարմէ հեռի են եւ ծառաղարդ պարտէզներու ու արտերու մէջ զուարճալի դիրք մ' ունին ։ Այս տուներն ու հասարակաց շէնքերն ամենն ալ մէկ տանաչափ խորանարդ կակուղ ընդհանրապէս մոխրագոյն սրբատաշ եւ տեղ տեղ ալ դոյնզդոյն քարերով շինուած են․ կան մեծամեծ ապարաններ ու կամարակապ շինուածքներ․ Բերդը երեք ձորերուն ճիշդ կեդրոնը՝ հիւսիսէն դէպ 'ի հարաւ երկնցած քարանձաւի մը վրայ շինուած է ։ Ունի հարաւային կողմը կամարակապ աւերակ դուռ մը, որուն վրայ արաբերէն մեծ գրերով արձանագրութիւն

ուրիշ գիւղերու մէջ ցրուեր են, բայց տեղւոյն քիւրտ բնակիչները գիւղին անունը միշտ անփոփոխ պահած են մինչեւ հիմայ ։

Պատմութիւնը չաւանդեր թէ Բաղ ուրիշ ի՛նչ քաղաքներ շինած է․ Բաղէշ, Խլաթ, Արճկէ, Հիզան քաղաքները թէ եւ բազմաթիւ դարերէ 'ի վեր շինուած ըլլալնին մեր ազգային պատմչաց յիշատակութիւններէն ու նկարագրութիւններէն յայտնի կերեւին, բայց չը գիտցուիր թէ Բաղ նահապե՞տը շինած է թէ իր յաջորդ նախարարները կամ թագաւորները․ ուստի այս քաղաքներուն անունները ի՛նչ ըսել կըզգեամբ, ա՞յլ թով եւ ո՞ր շինողին անունովը կոչուած ըլլալնին յայտնի չէ, եւ շատերու անուան ստուգաբանութենէն ալ որոշ իմաստ մը չառնուիր ։

մը կայ, որ սոյն բերդը Ցաճկաց 902 թուականին սուլթաններէն մէկուն շինածն ըլլալը կը յայտնէ. բայց կերևի՝ որ նոյն թուականին մէկ սուլթան մը նորոգած է միայն զանի. վասն զի բերդին արևելեան վարի կողմն ու իր տակը պատին կից շինուած խոհարարի խանութի մը մէջ քառակուսի կակուղ քարերուն վրայ մաշած ու աւրուած գրեթէ անվերծանելի գրերով լատիներէն հնագոյն արձանագրութիւն մը կայ, և մանաւանդ առաքելաշէն վանքերուն յիշատակարաններն ու աւանդութիւնները յայտնի ցոյց կուտան՝ որ Բաղէշ 1865 տարիի չափ և անկէ ալ շատ առաջ Հայոց ճոխ ու բազմամարդ քաղաքներուն մէկն եղած է, և Հայոց իշխանութեան կործանման ժամանակներուն մէջ աս ալ՝ միւս քաղաքներուն պէս իր ճոխութենէն ու հայ բնակչաց բազմութենէն մերկացեր է։ Ահա ասոնց ամէնը կը հաստատեն որ թէ՛ քաղաքն ու թէ՛ բերդը շատ հին ժամանակներու մէջ շինուած են։ Քարանձաւին ամէն կողմի երեսները խորտուբորտ է և վերէն 'ի վար ուղղահայեաց դիրք մ'ունի, այս պատճառաւ բերդէն մինչև վար դէպ 'ի դուռը՝ շրջապտոյտ ճամբայ մը շինուած է, վրան քարաշէն բարձր կամարով ծածկած. Հիմա այս բերդը աւրուած, լքեալ ու ամայի մնացած է. դռնէն սկսելով բերդին ամէն կողմերուն վրայ բազմաթիւ աւերակաց կոյտեր կը ներկայանան. տեղ տեղ ալ կիսակործան շէնքեր այլ և այլ ձևերով կը տեսնուին. միայն քանի մը հին տուներ կան տաճկաց և մէկ փոքրիկ մզկիթ մը։ Ասկէ 30—40 տարի առաջ այս քաղաքին երբեմն երկար ժամանակ տիրող պարսից խաներուն ապարաններն ալ կան եղեր, որոնց հետքն անգամ հիմայ չէ մնացած։ Բերդին մէջ աղբիւր չը կայ, միայն քանի մը տուներու մէջ ջրամբարներ շինուած են։

Քարանձաւին բնական եռանկիւնաձև դիրքին վրայ խորանարդ մանր քարերով պատեր շինուած են, որոնց կարգին մէջ տեղ տեղ աւերակաց կամարները կան․ ասոնց ալ շատ տեղերը փլած, մնացածներն ալ բոլորովին խարխլած են։ Կամարներուն այս խարխուլ վիճակը շատ վտանգաւոր է քաղաքին բնակիչներուն, վասն զի թեթև երկրաշարժ մ'անգամ կրնայ պատճառ ըլլալ այն ահագին բարձրութենէն քաղաքին վրայ կուտելու անոնց անթիւ քարերը։ Նաև երթևեկութեան ճանապարհը՝ բերդին հարաւային արևելեան կողմին ճիշդ տակէն և պատերուն ուղղակի ներքևէն ըլլալուն համար, մասնաւոր վտանգներ ալ պակաս չեն ըլլար․ վասն զի երբեմն երբեմն մէկ քանի քար բրդելով վար կը թափին ու շատ անգամ անցորդաց վնաս կը պատճառեն։ Ուստի կառավարութեան կը մնայ 'ի գործ դնել այն ամեն միջոցներն՝ որ անհրաժեշտ են այս ծանըր ու աղէտալի վտանգներուն առջևն առնելու համար։ Բերդին հիւսիսային ծայրէն քիչ մը հեռի բլուր մը կայ, որուն վրայ աշտարակաձև քառակուսի քարէ շէնք մը կը գտնուի, որ բերդին բարձրութենէն քիչ մը ցած է։

Քաղաքին ականատես ծերերը կը պատմեն որ 70 տարիի չափ առաջ այս շէնքին վերի ծայրէն դէպ 'ի բերդին գագաթին մօտերուն վրայ կամար մը ձգուած էր, որուն վրայէն դէպ 'ի բերդը ջուր բերելու համար քարաշէն խողովակներու մէջ անցուցած հողէ թրծուած խողովակներ շինուած էին․ այս ջուրը բերդին հիւսիսային կողմի լերան աղբիւրէն կուգար և երեք մասի բաժնուած էր․ մէկ մասը բերդին մէջ, երկրորդը քաղաքին հիւսիսային կողմը գտնուած Կարմրակ եկեղեցւոյն բակին մէջ, և երրորդն ալ նոյն իսկ սոյն հիւսիսային լերան միջավայրին վրայ կէտ — Մեյդան.

ըսուած տեղւոյն մզկիթին բակին մէջ կերթար • բայց հիմայ այս ճամբաները բոլորովին խանգարուած ու աւրուած են, վերոյիշեալ կամարն ալ փլած է, և միայն բերդին արևմտեան կողմի պարսպին վրայ խողովակներուն մնացորդները տեղ տեղ կը գտնուին ։ Բերդին թէ՛ արևելեան և թէ՛ արևմտեան յատակի կողմերը մէկ մէկ խոռոչներ կան, ուրկէ դէպ 'ի վեր՝ բերդը տանող քարէ աստիճաններով ծածուկ նեղ ճանապարհներ փորուած են ։ Կըսեն՝ որ բերդին մէջ դետնափոր ծածուկ ճանապարհ մը կար, որ քաղաքին հարաւային կողմը վտակին վրայ շինուած Գօչխէնց անուն կամուրջին քովը կը հանէ եղեր • այս ճամբուն երկայնութիւնը մէկ մղոնէն աւելի է • հիմայ այս դռներն ալ չեն տեսնուիր ։ Բերդին բոլորտիքը՝ կէս ժամ կը տեւէ ։ Քաղաքը պարսպապատ չէ • բայց գլխաւոր փողոցներուն բերանը դռներ ունի, որ են • 1° վան—գափուսը։ 2° Շէլթիճիլէր—գափուսը ։ 3° Սրապ—չարսու—գափուսը ։ 4° Ամիրա—չարսու—գափուսը • որուն Հայերը Ամիրա—չարշըսի դուռն կըսեն ։ 5° Մէյվահանէ—գափուսը • Օդուն գափուսը անունով դուռ մ'ալ կայ, որ շատ չէր գործածուիր • ասոր Հայերը փայտան դուռ կըսեն։

Բաղէշ ունի մեծամեծ մզկիթներ • Էմիր—Շէմսէտտին, Ճամիի—Աթիք, Գըզըլ—Մէսճիտ, Մէսճիտի—Խաթուն և Շէրիֆէ • այս վերջինը աւելի մեծագործ է, որուն գմբեթը կիսագնդի ձևով է, ուրիշ մզկիթներէն՝ոմանց գմբեթը սրածայր է ։

Չորս քարաշէն Հայոց եկեղեցիներ • 1° Կարմրակ Ս. Նշան, որ Ս. Կիրակոս ալ կըսուի • վեց սիւներու վրայ հաստատուած գմբեթաւոր եկեղեցի մ'է, կակուղ սըրբատաշ քառակուսի քարերով շինուած • ասոր մէջ պահուած է Կենաց փայտի մասունք մը՝ որուն խաչին վըրայ կարմիր գունով գոհար մը կայ, այս պատճառաւ

եկեղեցին ալ Կօշմէօլ բռնուած է։ 2°. Ս. Սարգիս. սորա ա-ւագ սեղանոյն տակէն առատ ու անուշ ջուր մը կը բղխէ, որ ստորերկրեայ ջրմուղներով քաղաքին զանազան կող-մերուն մէջ կը բաժնուի. քաղաքացւոց շատերը այս ջուրը կը գործածեն ։ 3°. Հինգ խորան եկեղեցի ։ 4°. Ս. Գէորգ եկեղեցի ։

Ամրտօլու անուն վանք մը, կամ Ամրդւոյ Ս. Յով-հաննու վանք. որուն մէջ է առաջնորդարանը, և ու-նի եկեղեցի մը ։ Աւանդութիւն մը կայ՝ թէ Ամիր և Տօլ անունով երկու եղբայրներ կային, որ այս վանքն ու եկեղեցին նորոգած են. այս պատճառաւ անոնց անուամբը Ամրտօլու վանք կոչուած է. բայց ըստ մեզ կերևի որ այս բառը՝ Ամրտէ բառին աղաւաղութիւնն է։

Քարաշէն և տեղ տեղ ալ փայտաշէն բարձր կամա-րով ծածկած մեծ շուկայ մը, որ երեք ձորոց կեդրո-նը շինուած է բերդին կից ։ Հիւսիսային ձորին մէջէն վազող վտակը այս շուկային մէջէն կանցնի, որուն վը-րայ տեղ տեղ կամուրջներ շինուած են ։

Մասվաճառներուն և մանրավաճառներուն շուկանե-րը լայն, բարձրակամար և աւելի կանոնաւոր շինուած են։

Քանի մը մեծ ու փոքր քարաշէն խաներ. Եէնի խան, Նոր խան և այլն ։

Երեք մեծ քարաշէն բաղնիքներ. Խան—համամը, Խը-նի—համամը, Փաշա—համամը։ Մէտրէսէներ, քրիստոնէից նա-խակրթական դպրոցներ ։

Բաղէշի արևելեան կողմը գտնուած բարձր լերան գագաթին վրայ քառակուսի դիրքով կիսակործան կա-մարակապ շէնք մը կայ՝ որ քաղաքին տիրող պարսից խաներուն ժամանակէն մնացեր է, որ մինչև հիմա Տէր-տիլէն (1) կըսուի. այս տեղէն կերևայ քաղաքին ամեն

(1) Այս պարսկերէն բառը՝ հայերէն դիտարան կը նշա-

կողմը · նաև Բուհլու ըսուած հովտին մէկ մասը · Ս. Գէ-որգ եկեղեցին այս լերան ստորոտը շինուած ըլլալուն՝ լերան անունն ալ Ս. Գէորգ լեռ դրած են · այս լեռը գիր գրելու գործածուած սև կարէ տախտակին հան քէն գոյացած է ։ Սոյն լերան առջևը բարձր բլուր մը կայ՝ որուն գագաթին վրայ բերդանման շէնքի մը աւե-րակը կայ՝ որ երեսուն տարիի մը չափ առաջ քաղաքիս տիրող Շէրիֆ Պէյին ապարանն էր ։

Քաղաքացիք կը պատմեն՝ թէ երբեմն ձմեռն սո-վորականէն աւելի ձիւն եկած ըլլալով՝ մեկէն 'ի մէկ ուսին (1) բրդեր ու տակը գտնուած Ծողուխոր անուն թաղին քանի մը տուները կործաներ ծածկեր ու մէջի բնակիչները սպաններ է ։

Առաջները շատ արհեստաւորներ կը գտնուէին, մանաւանդ կտաւագործ կամ ջուլհակ · բայց վերջերը ցրուեր են, և հիմայ կը գտնուին միայն ոսկերիչ, դեր-ձակ, երկաթագործ, կօշկակար, խաղախորդ, ջիւթճի, ներկարար, և 100 ի չափ ալ կտաւագործ, որոնց շա-տին գործարաններուն կտաւը Ամերիկայինէն վար չը մնար ։ կարմիր ներկով ներկուած պատուական կտաւ մը կը շինեն, որ բոլոր Քրդաստանի մէջ կը գործածուի ։ Այս կտաւը շատ գերազանց ու կենդանի գոյն մ'ունի, որ կարմիր թաւիշէն չի տարբերիր և կըսուի Տիլէ ։

Քաղաքին բերքերն են՝ մեղր, գղթոր, խէժ, ծը-խախոտ, լոշտակ, խաղող, դինի (խանտրտիկ կըսեն),

նակէ · որովհետև հոս տեղ միշտ պահապաններ կը կենան եղեր հեռուէն՝ եկող թշնամեաց գալուստը դիտելով հսկե-լու համար ։

(1) Ձմեռ ատեն լեռներուն վերի կողմերուն վրայ ժողո-վուած ձիւնակոյտ ։

օղի, ռուպ, նուռ, թութ, թուզ, խնձոր, տանձ, սեխ, ձմերուկ և ուրիշ տեսակ տեսակ պտուղներ. Նոյնպէս խաւրծիլ բոյսը, որ ինքնին կը բուսնի գարնան ժամանակ լեռներուն վրայ մանաւանդ Վանայ կողմերն ու Վարագայ լերան վրայ. քաղաքացիք կառնեն ասոր զովացուցիչ հիւթն, և ջրոյ հետ խառնելով կը խմեն. Ռավէնտ ըսուածն ալ ասոր արմատն է, բայց ժողվելու հոգ չեն տանիր: Քաղաքին օդն առողջ է, բայց բանակին զօրաց մէջ ջերմը կը տիրէր. Ջուրն ալ առատ է. վտակներուն ջուրերէն զատ գրեթէ ամեն տան մէջ անուշ ջուրի աղբիւրներ կան, որոնց գլխաւորներն են Լօլօլ, Ռաշօ, Շէրիֆ խանի և Մաթաշ աղայի աղբիւրները, Սեֆէր պեկենց ակները, ևլն. ևլն: Վանայ լճին մէջ գտնուած Տառեխ ձկան տեսակին նման ձուկ մ'ալ Բաղէշի վտակներուն մէջ կը գտնուի, մանաւանդ գարնան ժամանակ:

Բաղէշ գայմագամութեան վիճակ մ'է հիմա. այս վիճակը լեռնային է՝ ուր կը գտնուին ընկուզի, տանձի ձիթենիի ու կաղնոյ անհատնում անտառներ. ունի նաև պարարտ արօտով ծածկուած ընդարձակ ձորավայրեր, այգիներ: Կը բուսնին տեսակ տեսակ խոտեր, բոյսեր, ծաղիկներ, որոնց մէջ յիշելու արժանի են նարկիզ և մանուշակը՝ որ առատ ու ընտիր մեղր կուտան: Կը գտնուին եղջերու, աղուէս, այծեամն, այծ, վայրի ոչխար, վարազ, եղն, սպիտակ արջ, սատրակ, կաքաւ, լոր, մաշկաթև, սոխակ, սարեակ, վնասակար օձեր, և այլն: Կան կարմիր, սև ու սպիտակ մարմարիոնի և ծծմբի առատ հանքեր: Ունի 80 ի չափ գիւղեր:

Ծապռկոր գիւղ. Բաղէշէն կէս ժամ հեռի ու անոր արևելեան հիւսիսային կողմը, հիմա աւերակ է, ուր կայ միայն քաղցրահամ աղբիւր մը: Ամպ գիւղ. քաղաքէն մէկուկէս ժամ հեռի և անոր հարաւային կողմը:

Պօռ գիւղ. քաղաքէն երկու ժամ հեռի ու անոր արեւելեան հիւսիսային կողմը ձորի մէջ։ Խուլթիկ գիւղ. վիճակիս ամենէն մեծ ու երեւելի գիւղն է՝ որ ունի 400 տուն ։ Թահվայ ըսուած տեղը՝ քաղաքին հիւսիսային կողմը կինայ, որ դէպ 'ի արեւմուտ Մուշի դաշտին կողմը երկնցած ձորահովիտ մ'է, և կարաւանի ճամբայ է. բայց ձմեռը ասոր մէջ սաստիկ փուք ըներուն պատճառաւ տեղ տեղ քարաշէն մեծամեծ իջևաններ շինած են, որոնց մէջ երեւելի է Սլամելեք ըսուած իջեւանը. բայց հիմայ ասոնց շատը աւերակ ու ամայի մնացած են ։

Քաղաքին մօտերը երեք քարաշէն հին վանքեր կան իրենց եկեղեցիներովը որք են. 1°. Խնդրակատար Ս. Աստուածածնայ վանք. քաղաքէն կէս ժամու չափ հեռի ու անոր հարաւային կողմը ձորի մէջ. Թադէոս Առաքեալ հիմնադրած է, և մինչև հիմայ շատ նորոգութիւններ կրած։ 2°. Աւեխու Ս. Աստուածածնայ վանք. քաղաքէն քառորդի մը չափ հեռի և անոր արեւելեան հարաւային կողմը լերան ստորոտը ձորի մէջ, որուն առջևէն կանցնի գետակ մը. այս ալ Թադէոս Առաքելոյն հիմնադրածն է, բայց մինչև հիմայ շատ անգամ նորոգութիւններ եղած են։ Այս վանքին հարաւային արևելեան կողմը մէկ երկու վայրկեան հեռի լերան զառ 'ի վայրին վրայ երկու հատ իրարու քով շինուած կամարակապ փոքրիկ շէնքեր կան, որք մշտահոս աղբիւրներ են ։ Վանքին մէջ ալ առատ ու մշտահոս քաղցրահամ աղբիւր մը կայ, որուն ջուրը գետակէն բերուած է. 3°.Գոմաց Ս. Աստուածածնի վանք կամ Տատրակաբնակ(1) Աստուածածին. քաղաքէն կէս ժամ հեռի և անոր

(1) Վասն զի շատ աղաւնիներ կը յաճախեն հոս ։

արևմտեան կողմը ձորի մէջ, ուրկէ հինգ վայրկեան հե-ռի է Գոմս անուն փոքրիկ գիւղը։ Այս վանքին մէջ ալ մըշ-տահոս քաղցրահամ աղբիւր մը կայ։ Ասոնցմէ զատ՝ վիճակիս մէջ կը գտնուին նաև քարաշէն եկեղեցիներու ու մատուռներու աւերակներ։

Հինգ օր նստանք այս քաղաքը՝ ուր էր նաև սպա-րապետը իր բանակովը մէկտեղ։

Օգոստոս 24 կիրակի օր մեկնեցանք քաղաքէն Ախ-լաթ երթալու համար, որ 12 ժամ հեռի է, և մինչև հոն ճամբուն վրայ կային փափշեն, Կամախ, Պօռ, Զուար, Դատվան, Զըխոր, Շամիրամ, Կծուակ, Ծղակ, Գեղուտ, Կարունջ և Քըլխուս անուն գիւղերը.

Շքեղ հանդէսով քաղաքին մէկ ծայրէն մէկալը ան-ցանք, որն որ կէս ժամ տևեց, և խկոյն մտանք Թահ-վայի ձորահովիտը. այն դաշտանման ընդարձակ և ջր-բարբուղխ ձորերուն մէջ 2 ժամ շարունակ մարգագե-տիններու վրայէ երթալով՝ ուր քրդաց ու հայոց գիւ-ղեր պակաս չէին, հասանք Ալոմէյ (հայերէն Ալոմէնց) անուն քարաշէն մեծ խանը, որ Մուշի ու Ախլաթի ճամբուն վրայ էր. ուրկէ բռնեցինք Ախլաթի ճամբան և 2 ժամ շարունակ երթալով ընդարձակ դաշտի մը մէ-ջէ, ուր մէկ ծառ մը անգամ չըկար. անցանք Գէչօ— անուն բարձրաբերձ լերան արևելեան կողմէն, որուն ստորոտն էր Զըխոր և Շամիրամ գիւղերը, և իջանք ձորավայրի մէջ վանայ լճին արևմտեան ծայրը դէպ 'ի Դատվան գիւղը. դեռ գիւղը չըմտած և անոր արև-մտեան կողմը տեսանք բարձր լեռ մը, Ճէպէլ—Նէմրութ, հայերէն Նեբրովթայ լեառն ըսուած հրաբուղխ լեառը, որ Գրգուռ ըսուած պարաւոր լեռներուն բարձրագոյ-նըն է. այս լերան գլուխը անուշ ջուրի բաժակ մը կայ՝ որ Մուշի մեղրագետին շտեմարանն ու առաջին ակն է.

բաժակին եզերքներուն վրայ հանքային տաք ջուրերու ակեր կան և լերան հիւսիսային կողմէն ալ երկաթային նիւթ մը բղխելով դիզուեր ու լերան պէս բարձրացեր է ։ Այս լեռը չիջեալ հրաբուղխ մ'է . կըսեն թէ 1441 ին այս լեռը յանկարծ ամպի որոտման պէս գոռացեր ու ճեղքուեր է . այս ահագին պատառուածքէն ամպանման թանձր ու գարշահոտ ծխով հուր ու բոց ցոլացեր ու ահագին շառաչմամբ ու որոտմամբ մեծամեծ քարեր դէպ 'ի երկինք նետուեր են . այս հրաբուղխին երբ մարած ըլլալը չըգիտցուիր ։ Լերան ստորոտը քարաշէն խաներ կային ։

Տեսանք նաև Դատվանի մօտ ձորավայրին մէջ 30 կամ 40 ի չափ ալ ուղտաձև այլանդակ լեռնանման քարեր , որ ըշտուր տաշըր , Նեմրութ փեհլիւէնի կըսուին ։ Աւանդութիւն մը կայ՝ թէ ասոնք Նեբրովթի ուղտերն էին՝ որ Աստուծոյ բարկութեամբը քար դարձած են . բայց ոմանք ալ սատանայի գերեզման կըսեն ։

Հասանք Դատվան՝ որ Վանայ ծովուն արևմտեան կողմն է , ուրկէ քանի մը ժամ հեռի էր Ուրտատ անուն գիւղը ։

Դատվան Հայոց գիւղ մ'է 60 տունով , ունի լերան վրայ բերդ մը , նաւահանգիստ մը , անուշ ջուր , արտեր ու պարտէզներ ։ Քիչ մը հանգիստ ընելնէս վերջը ելանք գիւղէն և Վանայ ծովին գրեթէ միշտ եզերքի կողմէն մէկ ժամու չափ երթալով մտանք դաշտի մէջ Կարմունջ ( կամուրջ ) գիւղը . այս ճամբան ո՛չ ծառ կար և ո՛չ ջուր ։

Կարմունջ Հայոց գիւղ մ'է , ունի 100 տուն , եկեղեցի , ուրկէ ջուր մը կանցնէր . հոս ծառ չըկար ։

Անկէ ալ ելնելով անցանք լեռ մը ու մտանք Ախլադի Թաղերուն մէջ , որ իրարմէ կէս ժամ հեռի 7 թաղ էին , և որոնց անունները Պիթլիսի կողմէն սկսեալ հե-

տեւեալներն են . 1. Քըրքլար . 2. Թահտը — Սիւլէյման . 3. Հարապաղայ հայու թաղ՝ ուր վանք մ՚ալ կայ . 4. Իքի — քուպպէլի կամ Սխլադ . 5. Էրքիզան . 6. Թունուզ . 7. Սօռ ։ Իջանք Իւէ — կուպպէլէ կամ Աէլոզ բոլուած թաղը մէկ քանի օր կենալու համար ։ Այս թաղերը պտղաբեր անտառներու մէջ շինուած են, տուները իրարմէ հեռի . բնակիչները քիւրտ են .

## Խ Լ Ա Դ կամ Ա Խ Լ Ա Դ ։

Վանէն հինգ օրի չափ հեռի, լճին հիւսիսային արեւմտեան ծայրն ու անկէ քառորդ մը հեռի, լերան ստորոտը և դէպ 'ի լիճը խոնարհած սարահարթի վրայ, պտղաբեր անտառներու ու այգիներու մէջ շինուած քըղաց գիւղ մ'է 150 տունով, որ 'ի հնումն Վասպուրական աշխարհին Բզնունեաց գաւառին մայրաքաղաքն էր . Օդը բարեխառն է, հողը բարեբեր . ունի հարուստ պարտէզներ, այգիներ ու արտեր . Անտառը կը բաղկանար թութի, ընկուզի, կեռասի, բալի, սերկեւիլի, դեղձի, ծիրանի, սալորի, տանձի, խնձորի եւն ծառերէ, որոնք իրարու մօտ ըլլալով՝ ճիւղերնին իրարու մէջ փաթթուած երկինքը կը ծածկէին . իրենց բարձրութիւնն ու արմատներնուն ստուարութիւնը՝ անտառին հնութիւնը կը նշանակէին . անտառէն քիչ հեռի առապարներէն բղխած անուշ ու պայծառ ակերուն հազար ու մէկ առուակները օձապտոյտ կը սողոսկէին լռիկ մնջիկ անտառին մէջ, որուն գետինը թըրջելով դալարացուցած էին ։ Այս բիւրազուարճ ու հովանաւոր անտառին մէջ բնակիչները զուարճալի կեանք մը կանցունէին, մանաւանդ գարնան մէջ, երբ պտղատու ծառերը կանաչ տերեւներով կը զարդարէին ու քաղցրաձայն թռչնոց դայլայլիկին կը խառնուէր ականակիտ

տուուակներուն կարկաչը՝ որոնք անտառին մարգագետնին վրայէն կանցնին խոխոջելով ու լոյս և զով արձակելով հողին վրայ ու օդին մէջ, երբ ծաղկալից ու դալարագեղ մարգաստանը անուշ անուշ հոտեր կը բուրէ, երբ արևուն ոսկի ճառագայթները տերևախիտ անտառին ճեղքերուն մէջէն սպրդելով անոր կամարներուն վրայ ալէծուփ ծիածաններ կը ձևացունեն ։ Հոն՝ ճանապարհորդը ինքզինք փափկութեան դրախտին մէջ կը կարծէ. մանաւանդ՝ երբ անջրդի ու ամայի անապատներուն մէջ դեգերելով՝ տօթակէզ արևուն ջերմաջերմ շառաւիղներէն տոչորած՝ իր ծարաւն յագեցունելու համար կաթիլ մը ջուր գտնելէն յուսահատ՝ յանկարծ ինքզինքը այս վայրերուն մէջ կը գտնէ. հոն վտարանդի թափառիկ հայ ճանապարհորդն իսկոյն հոգի կ'առնէ ու կզգայ թէ այն քալած ու շուրջ եկած տեղերը իր նախնեաց հողերն են, և կարծես թէ կը տեսնէ իր հարանց արիւնը՝ որով այն հողը թաթաւեալ է և նախնի պատերազմաց փոշին զինքը շուրջ կը պատէ. հոն՝ երկինքը, օդը, ծովը, լեռներն ու ձորերը արձագանք կուտան իր նախահարց բարբառին. և ափսո՜ս, ո՛ր կողմն որ դարձընէ աչուին, ամեն կողմն կը տեսնէ գահերը թափուր, դաւաղանները կոտրատած, դրօշակները պատռտած, պալատները քայքայած, կոթողներն ու աշտարակները յերկիր թաւալած, բերդերըն ու պարիսպները հիմնայատակ, ամրութիւնները փլած, տաճարները կործանած, մենաստաններն ու եկեղեցիները լքեալ և միայն ընդհանուր արձագանք մը ընդհանուր ողբոց աղաղակներու՝ որ այն ընդարձակ գերեզմաններէն 'ի վեր կելնեն...... ու այն աւերակաց մէջ իր սիրտն ալ աւերակ դարձած ձեռն 'ի ծնօտին կը նստի հոն, ինքն ալ լալ ու ողբալ անոնց հետ.....

Ախլաթի մէջ ու մօտերը կան քարաշէն սիւնազարդ գմբեթաւոր հոյակապ շիրիմներ (Թիւրպէ). Աք գօյուն և Գարա գօյուն [ֆառէխլուհլար Բէօրտիւէլէ, Քէշիշ Բէօրտէխէլ] եւն ա- նուններով, ուր կը հանգչին Ծոհէ Ալին ըսուած թիւրք թագաւորաց ոսկորները արկղներու (թապուտ) մէջ, ո- րոնց մէջ զմռսեալ մարմիններ ալ կը գտնուին. կան նաև մահմէտականաց բազմաթիւ գերեզմաններ ու մա- հարձաններ կարմիր ու սպիտակ մեծ քարերով։ Մի- ջին դարու մէջ շատ փառաւոր քաղաք մ'էր այս քա- ղաքը. Այս կողմերուն մէջ երկու տեսակ ցորեն կըլլայ՝ որ անհամեմատ է մեծութեամբն ու քաղցր համովը. 120 տիրհէմ կշռող պատուական խնձոր. երկու տեսակ տանձ, որուն մէկ տեսակը ձմեռը կը դիմանայ և միւ- սը՝ որ Նօնիւզ արմուտ կըսուի, տասն օրէն աւելի չըդի- մանար. այս երկրինը շատ ջրոտ ու կակուղ է և Վօր- դաջուրի պատուական համ մ'ունի, որ ծծելով կու- տեն։

Ախլաթի առջև լճին եզերքին վրայ պարսպապատ և բերդաւոր աւերակ գիւղ մը կայ 200 ի չափ տանիք- ները փլած տուներով, որոնց մէջ կը տեսնուէր նաև մէկ Ջինուէ ով քայքայեալ մզկիթ մը։ Այս գիւղին խար- խլած պարիսպն ու բերդը և տուները քառակուսի սև քարերով շինուած էին։

Քիչ մ'ալ խօսինք Հայաստանի ծովուն վրայ։

## ՎԱՆԱՅ ԼԻՃ ԿԱՄ ԾՈՎ։

Հայաստանի՝ նաև արևմտեան Ասիոյ ամենէն ըն- դարձակ լիճն է, ամեն կողմէն բարձրակատար լեռնե- րով պատած, որ 'ի հնումն Բզնունեանց ծով կանուա- նէր, և Վասպուրական, Տուրուբերան ու Աղձնեաց աշ- խարհներուն մէջ կիյնար։ Երկայնութիւնը՝ արևելքէն

դէպ 'ի արեւմուտք 80 մղոն է, եւ լայնութիւնը՝ 40. ունի 1200 քառակուսի մղոն տարածութիւն, եւ շատ խորայատակ է։ Ջուրը խիստ աղի է եւ բորակոտ. ուստի բնակիչները անոր եզերքներուն վրայ փոսեր բացած են, ուր ամառը անոր ջուրէն կը լեցնեն որ 15 — 20 օրուան մէջ արեւուն տաքէն ցամքելով կը պնդանայ եւ պատուական ճերմակ բորակ մը կը գոյանայ։ Այս լճին մէջ կը թափին 40 ի չափ գետ ու վտակներ. Ունի չորս կղզիներ, որ են՝ Աղթամար, Կտուց, Առտէր, Լիմ։ Ձմեռը լճին մէկ մասը կը սառի, մանաւանդ Լիմի կողմերը. բայց բոլորովին սառելը քիչ անգամ պատահած է։ Այս լճին մէջ կայ միայն մէկ տեսակ ձուկ՝ որ Տառեխ կըսուի, եւ մայիս ու յունիս ամիսներուն մէջ միայն անթիւ բազմութեամբ կը դիմեն դէպ 'ի գետերուն մէջ. ձկնորսները անոնց ճամբուն առջեւը կողովներ (սեփէտ) դնելով՝ առատաբար կորսան, ու չորցնելով կը ղրկեն բոլոր Քրդստան ու Պարսկաստան վաճառելու համար։ Այս ձկան մեծութիւնը [illegible] չափ է։

Օգոստոս 27, չորեքշաբթի ճամբայ ելանք, Փըրխուս գիւղն երթալու համար, 3 ժամ հեռի. ճամբան շարունակ դաշտային էր, ուրկէ միայն մէկ վտակ կանցնէր։ Փրխուս Հայոց գիւղ մ'է. ունի 80 հողաշէն խրճիթներ, քառակուսի եւ քարերով շինուած. եկեղեցի մը յանուն Ս. Ստեփաննոսի. հարուստ արտեր ցորենի. բայց եւ ոչ մէկ ծառ մը։

Օգոստոս 28, հինգշաբթի ճամբայ ելանք, Մալազկերտ երթալու համար, 6 ½ ժամ հեռի։ Փրխուսէն մինչեւ Մալազկերտ ճամբան հարթ ու դաշտային է եւ ճամբուն երկու կողմի դաշտերը ցորենի հարուստ ար-

տեր կը ներկայացնէին ։ Այս ճամբուն մէջ հեռուէն ե-րեւցաւ Սէֆիտ տաղ անուն լեռը՝ որ այս կողմի լեռներուն ամենէն բարձրն է և մշտաձիւն ։ Բնակիչները կըսեն թէ Նոյի տապանը հոս իջած է ։ Փրխուսէն ժամ մը հե-ռու տեսանք նաև Նողոլ կամ Նողէլ կամ Գէօլ անուն ընդարձակ լիճը, որուն ջուրը յստակ ու անուշ էր · ձը-մեռը կը սառի և վրայէն կառաւաններ կանցնին · ձու-կը առատ է ։ Աստ արևելեան կողմէն շրջելով իջանք ճամբուն վրայ գտնուած Գերս անուն հայոց ու քրդաց գիւղը, որ ճիշդ 2 ժամ հեռու էր Փրխուսէն ։

Այս վայրերուն մէջ աւերակ գիւղ մ՚ ալ կար Նա-զիկ անուն ։

Գերսէն ելնելով՝ ժամ ու կէս հեռու ճամբուն ձախ կողմը տեսանք Պօղազ կէօլու բռնուած լիճը, և աջ կողմը՝ լճին ուղղակի դէմն ու անկէ կէս ժամ հեռու Սօխթըլլի անուն քրդաց գիւղը · ժամ մ՚ալ յառաջ երթալով ի-ջանք ճամբուն վրայ Գեդերլի անուն հայոց բազմա-մարդ գիւղը, որուն տուները աղխասկերտ խրճիթնե-րէ կը բաղկանային, ուր եկեղեցի մ՚ալ կար · անկէ 2 ժամ առաջ երթալով հասանք Մալազկերտ ։

## ՄԱԼԱԶԿԵՐՏ կամ ՄԱՆԱՒԱԶԱԿԵՐՏ ։

Եփրատ գետին ձախ կողմն ու անկէ մէկ ժամու չափ հեռու և Մօլլաքէօյ անուն լեռակին քով շինուած հայոց ու քրդաց պարսպապատ ու բերդաւոր գիւղ մ՚ է 100 տունով ։ Ունի մէկ մզկիթ և մէկ եկեղեցի ։ Պարսպին շատ կողմերը փլած էին · բայց բերդը դեռ նոր էր · տուներուն շատերը փլած և մնացածներն աւերակ կը նմանէին · պատերը հին ու սև քառակուսի քարերով շինուած · տանիքներուն վրայ քակորի կոյտեր կային, զոր փայտի ու ածուխի տեղ կը գործածէին, զի ո՛չ անտառ

կար և ո՛չ ծառ կը գտնուէր ։ Հողը մշակուած էր ցորենի արտերով և վարունգի, ձմերուկի, սեխի, դդումի և ընդեղէն պարտէզներով. Մալազկերտ հայոց իշխանութեան ժամանակ մեծ քաղաք մ՚ էր Մանազկերտ կամ Մանաւազակերտ անուն, զոր Հայկայ որդին Մանաւազ շինած էր, և որ երբեմն ալ Ռշտունի իշխանաց աթոռն եղած էր. բայց վերջը Ալփարսլան նուաճեր ու աւրեր է, և դեռ այսօր կը կենան կիսաւեր պարիսպները։

Մանազկերտի վիճակին մէջ՝ մանաւանդ հիւսիսային կողմը՝ որ Թօփրաք կը կոչուի, շատ մը հին շինութեանց աւերակներ կը գտնուին. ուստի շատ հաւանական է որ այս երկիրը Տուրուբերանի Դարան գաւառն եղած ըլլայ. Այս վիճակը դաշտավայր է, ուր առատ ու պատուական ցորեն, գարի և կտաւատ կը բուսնի, բայց ծառ գրեթէ չըկայ ։

Սեպտեմբեր 1, երկուշաբթի ( 3րդ օր պայրամի ) գիւղէն մեկնելով գացինք Կարխալըլս անուն տաճկի փոքրիկ գիւղը, 6 ժամ հեռի ։ Մալազկերտէն մինչև Կարխալըլս ընդարձակ դաշտ էր մշակուած. ճամբուն աջ ու ձախ կողմերուն վրայ տեղ տեղ փոքրիկ գիւղեր կը գտնուէին ։ Գիւղէն ժամ մը հեռանալով անցանք Մալազկերտ վտակէն, որ Եփրատի մէջ կը թափի, ու եկանք Եփրատի ձախ եզերքին կողմը, և միշտ անոր եզերքն ՚ի վեր՝ գրեթէ առանց անկէ հեռանալու երթալով մտանք Կարխալըլս գիւղը, որ գետէն մէկ վայրկեանի չափ հեռի էր ։ Թէ՛ գիւղին մէջ և թէ՛ գետին եզերքներուն վրայ սօսեաց ծառեր կային, զոր վառելու կը գործածէին քակորի հետ ։

Սեպտեմբեր 2, երեքշաբթի օր ճամբայ ելանք Խամուր գիւղն երթալու համար ։ Ճամբան դաշտային էր

մինչև խառնուրդի մէկ ժամ մնալով, ուր դարձեալ Եփրատ գետին եզրը եկանք, և որուն եզերքն 'ի վեր կէս ժամէն աւելի լերան ստորոտի կողմէն երթալով սկսանք հեռանալ անկէ ու մտանք խամուր, որ բլուրի վրայ շինուած բերդաւոր գիւղ մ'էր քրդաց, 50 տունով· մէկ քանի տուն ալ հայ կը գտնուի։ Այս գիւղն երբեմն բերդաքաղաք մ'էր։ Գիւղիս քովի ձորին մէջէն ջուր մը կանցնի· ո՛չ ծառ և ո՛չ պարտէզ կան։

Սեպտեմբեր 3, չորեքշաբթի օր ճամբայ ելանք Խուչ Թիլիսէ երթալու համար, 9 ժամ հեռի։ Ճամբան դրեթէ դաշտային էր և տեղ տեղ Եփրատի եզերքներուն վրայ վրանաբնակ քրդաց բնակութիւններ կային։ Գիւղէն 6 ժամ հեռի պարսկի գիւղ մը կար· անկէ ալ մէկ ժամ հեռի ուրիշ գիւղ մը, որուն մէջ կը տեսնուէր եկեղեցիի մը աւերակը։

ԽԻՉ ԹԻԼԻՍԷ·

Նպատ (1) անուն երկնաբերձ լերին արեւելեան հիւսիսային ստորոտը՝ Եփրատ գետին մօտ՝ Հայոց գիւղ մ'է 40 խրճիթներով։ Ունի վանք մը եւ քարաշէն մեծ ու բարձր եկեղեցի մը, յանուն Ս. Գրիգոր Լուսաւորչի, հաստատեալ չորս միակտուր մարմարիոնէ սիւներու վրայ՝ որուն աւագ խորանի ձեւը յունաց եկեղեցւոյ նման է։ Այս խորանին վրայ աւագանի պէս գաղտնի տեղ մը՝ երկու մեծ արկղ՝ մագաղաթի վրայ գրուած նախնեաց ձեռագիր ընտիր մատեաններ կային,

(1) Այսինքն՝ Նոյը պատող լեռ, որու վրայ Նոյ Նահապետի գերեզմանը կայ կըսուի։

որ անտարակոյս ազգային գրականութեան ու պատմութեան հաղուագիւտ գանձեր կը պարունակէին. բայց ափսո՜ս որ անուսումն ու անոպայ վանականաց կոյր համոզմամբը այնպէս խաւարամած ու բանտարկեալ կը մընան, եւ օր մը ժամանակին բռնութեամբը պիտի փըտտին ու անհետանան։ Այս պատուական մատեանները ձեռք անցընել անհնար ըլլալով, գոհ եղայ միայն զանոնք տեսնելով հետաքրքրութիւնս յագեցունել. ուստի կանչեցի վանահայրն ու միաբանները, եւ 20 ոտնեայ սանդուխ մը բերել տալով մտանք եկեղեցին ու ելանք այն անգին մատենադարանը. շատը պատմութեան վերաբերեալ գրքեր, որոնց վրայ հաղիւ աչք մը նետելու ատեն ունեցայ. արդէն գրեթէ բռնութեամբ ելած էի, եւ ընդ հուպ վար իջնել պարտաւորեցայ. բոլոր ճիգս այն գիրքերը առնելու կամ մէկ ցանկը հանելու համար անօգուտ եղաւ. Գիւղին մէջ սօսիի եւ ուրիշ տեսակ ծառեր կը գտնուէին. գիւղը թէպէտ Եփրատի մօտ է, բայց յատուկ առու մ' ալ բերուած էր մինչեւ հոն։ Այս գիւղին տեղն էր Բագաւան(1), չաստուածոց ու հանդիսից պաշտաման տեղին, ուր Լուսաւորիչ մկրտեց մեր Տրդատ թագաւորն՝ իր աշխարհագումար բիւրաւոր զօրքերովը մէկտեղ, ու կառոյց եկեղեցի մը յանուն Ս. Կարապետի, որուն վրայ վերջը Քրիստոսի 624 թուականին շինուեցաւ արդի հրաշակառոյց տաճարը Հերակլէս կայսեր օժանդակութեամբ. այն է որ Իւչ Քիլիսէ կանուանի։

Վանքին արեւելեան կողմը՝ քառորդ մը հեռի է Հայոց՝ Եփրատի մէջ մկրտութեան տեղը, որուն եզերքի

(1) Մեծ Հայոց Այրարատ Նահանգին Բագրեւանդ անուն գաւառին գիւղն էր։

քարաժայռերուն վրայ շատ մը խաչագրոշմ փորուածներ կան մինչև հիմա․

Նպատ լերան գագաթին վրայ մեծին Ներսիսի մատուռներն ու աղօթատեղիները կան, ուր երանելին աղօթքի կայնած՝ լերան առջևի Ձիրաւ դաշտին մէջ Պարսիկներուն հետ Հայոց ըրած պատերազմն ու յաղթութիւնը կը դիտէր։

Սեպտեմբեր 4, հինգշաբթի օր ճամբայ ելանք Պայազիտ երթալու համար, 9 ժամ հեռու։ Խուչ Քիլիսէէն մինչև Պայազիտ ընդարձակ դաշտեր էին, որոնց մէջէն Եփրատ կանցնէր, և ուր տեղ տեղ գիւղեր կային և գետին եզերքներուն վրայ ալ վրանաբնակ քիւրտեր կը գտնուէին։ Խուչ Քիլիսէէն 3 ժամ հեռու Տիատին անուն քրդաց գիւղը հանդիպեցանք, որ ունի բերդ մը՝ որուն մէջ 50 էն աւելի ախոռի նման տուներ կան, և 50 ի չափ ալ բերդէն դուրս․ ՚ի հանդիպոյ քարկոփէ շինուած աշտարակներ կային, որ վառելու կը գործածուէին, վասն զի ո՛չ ծառ կար և ո՛չ փայտ․

Գիւղիս հարաւային կողմը մեծ ու բարձր լեռ մը կայ Ալա տաղ (1) անուն, որ Նպատ լերան պէս Տորոսի մասն է․ այս լեռը գարնան ժամանակ բիւրազգի երփներանգ ծաղիկներով կը ծածկուի։ Լերան շատ կողմերէն յստակ ու անուշ ջուրեր կը բղխին, և ստորոտը մարդու հաստութեամբ երկու ակեր կան, որ կ՚սկզբնաւորեն զԵփրատ գետը։ Այս ջուրին մէջ ճերմակ կաւի պէս նիւթ մը կը գոյանայ, որ ջուրէն դուրս հանելով կը

(1) Այս լեռն ՚ի հնումն Ծաղկած կամ Ծաղկոց լեռ կը կոչուէր, որուն վրայ սուրբ Ոսկեան վկաները ճգնեցան ու նահատակուեցան։

քարանայ. այս կաւէն համրիչ (թէսպիհ) կը շինեն։

Մեծ Հայոց Այրարատ Նահանգին Բագրեւանդ գաւառին գլխաւոր քաղաքներէն մէկն եղող Զարեհաւան քաղաքը՝ սոյն Տիատին գիւղին տեղն եղած ըլլալ կը կարծուի.

Տիատինէն մեկնեցանք ու դաշտավայրին մէջէն 2 ժամու չափ առաջ երթալով դարձանք փոքր լեռ մը ու մտանք նորէն դաշտին մէջ, և 2 ժամ անդին հանդիպեցանք քարաշէն կամուրջի մը, որուն ներքևէն աբագաբար կանցնէր Սև ջուր անուն ընդարձակ գետ մը՝ դէպ 'ի Պարսկաստան։ կամուրջէն անդին դաշտերուն մէջէն 2 ժամ ալ երթալով մտանք Պայազիտ։

## ՊԱՅԱԶԻՏ.

Մէկ մասը՝ Քուրտէլի կամ Քուրդաղուրան անուն ապառաժուտ լերան հիւսիսային զառ 'ի վայրին վրայ, և միւս մասն ալ անոր արևելեան կողմը գտնուած Իւչ Քուլէ անուն ապառաժուտ լերան վրայ շինուած գիւղաքաղաք մ'է։

Երբեմն շատ բազմամարդ էր և 12000 էն աւելի տուն ունէր. բայց մօտ ժամանակներու մէջ բնակչաց մեծ մասը տուներնին տեղերնին ձգելով Ռուսաստան գաղթեր են. վասն որոյ հիմա հազիւ 500 տուն և 4000 բնակիչ ունի քիւրտ և հայ։ Գաղթականաց տուներուն աւերակները դեռ կը տեսնուէին։

Իւչ Քուլէ լեռը աւելի բարձր է, գագաթին կողմը բերդ մը կայ, որուն բոլորտիքը կը տեսնուին աշտարակներ, հնութիւններ, հիւսուած դուռ մը՝ որուն վրայ թագաւորական քարաշէն մարդիկ քանդակուած են։ Այս լերան կատարը ջրհոր մը կայ, և մատուռ մը յանուն Ս. Գրիգորի։ Քաղաքին այս մասին տուները՝ լե-

րան ստորոտէն սկսեալ մինչև բերդին կողմերը կը հաս֊նին . իսկ Քուլաթէյի լերան կողմի տուները՝ մինչև գագաթը կը հասնին . այս ետքի լերան վրայ տուներուն մէջ տեղը հրուանդանի պէս ցցուած բարձր ապառաժուտ վայրի մը վրայ հոյակապ քարաշէն բարձր դղեակ մը կայ կրկնայարկ , Խան փաշա սէրայը , որուն ճակատը դէպ 'ի հիւսիս է . շրջապատը 10 վայրկեան կը տևէ և բարձրը պատով պատած է ։ Այս պալատը մէկ երկու ոտնաչափ քառակուսի քարերով շինուած է , որոնց վրայ զանազան ծաղիկներ ու նկարներ քանդակուած են , մանաւանդ ներս մտնալու բարձր դրան բոլորտիքը ։ Ունի ընդարձակ քարայարկ բակեր , աղբիւր մը՝ դրան ներսի կողմը , որուն յստակ ու անուշ ջուրը խողովակով բերուած է . բազմաթիւ սենեակներ, որոնց պատերը արևելեան ոսկեզօծ նկարներով, և ձեղունները՝ մանր ու թանկին ապակիներով ու ոսկեզօծ գեղեցիկ նկարներով զարդարուած են ։ Մէկ Ճինարլը օվ մզկիթ մը՝ Խան փաշա ճամիսի , որ մի և նոյն ճարտարապետութեամբ շինուած է ։ Այս հոյակապ շէնքը շատ ժամանակէ 'ի վեր անխնամ մնացած ըլլալուն՝ տեղ տեղ փլած ու աւրուած էր, մանաւանդ արտաքին երևոյթը աւելի գէշցեր էր ։

Քաղաքիս տուները քարաշէն են միայարկ կամ կրկնայարկ . և ընդհանրապէս իրարմէ հեռու . վասն զի ապառաժուտ լերան դժուարահարթ ժայռերն ու բազմաթիւ տուներու փլատակները արգելք եղած են անոնց իրարու կից գտնուելուն . գետնայարկներն ու տանիքները հողով ծեփած են . սենեակները մէկ կամ երկու պատուհան միայն ունին առանց ապակիի ։

Պայազիտ ունի 3 մզկիթ , 2 եկեղեցի Հայոց Ս. Աստուածածին և Ս. Կարապետ , 3 բաղնիք աւրուած , վաճառանոց մը՝ 100 խանութով , ուր կը ծախուին սովորական չնչին բաներ սուղ գնով . մեծ դուռով քայ֊

քայեալ իջեւան մը Չօղէ խան անունով, որ վաճառանո-
ցին մէջն է, և որուն փլած սենեակները բնակչաց ար-
տաքնոցի կը ծառայէին։ Մրգեղէնը քիչ է և հեռաւոր
գիւղերէն կը բերեն։ Քաղաքին մէջ և մօտակայները
ո՛չ ծառ կայ և ո՛չ պարտէզ. Մուշտակը՝ Հուշուք, Բէլէթ
եւն. աժան էր։ Հոս ալ քակոր կը վառեն փայտի ու
ածուխի տեղ. Ջուրը առատ է և անուշ. կը բղխի լե-
րան ապառաժներէն, որուն համար յատուկ աղբիւր-
ներ շինած են. Անթէպօր ալբէրը, որուն ջուրը Ս. Կարա-
պետի եկեղեցւոյ ներքևէն սպիտակ քարէ մը կը բղխի.
այս եկեղեցին դղեակին վարի կողմն է։ Աղըօղլու ալբէրը,
առաջինէն քիչ հեռու է, որուն ջուրը գետնէն կը բղ-
խի։ Դիլէնճի ալբէրը (սարայ չէշմէսի), որուն ջուրը՝ ինչ-
պէս վերն ըսինք, լերան գագաթէն խողովակով բե-
րուած է։ Աղբիւր մ՚ալ Քօրօղլի լերան գագաթը՝ Բէքէ
ղօղ անուն դաշտավայր արտի մը մէջ։ Մուրթուզ չայ կամ
Կեօքսու անուն ջուր մ՚ալ կը վազէ Քօրօղլի ու Էօմէր Քալէ
լեռներուն մէջ տեղի ձորին մէջէն. այս ձորը Թօմղըւար
կը կոչուի և զբօսատեղի մ՚է։ Պատուական ջուր մ՚ալ
արևելեան կողմի լեռնէն կը վազէ։ Օդն աղէկ է ու ա-
ռողջ. ամառը բարեխառն, իսկ ձմեռը ցուրտ, և գա-
րունը անձրևառատ. տիրող ու ջերմային հիւանդու-
թիւնները հազուադէպ։ Քաղաքին ներքևն է Հայոց
մեծ գերեզմանատունը, որուն մէջն էր Ամենափրկիչ ա-
նուն քարաշէն եկեղեցին դշխոյն Հեղինէի, որուն հիմա խո-
րանին տեղը միայն մնացեր է։ Պայազիտի հարաւային կող-
մը լեռ մը կայ Քէչէլ թաղ անուն, որուն վրայ բերդ մը շինո-
ւած է Օսման Պէյ պուրճը։ Դարձեալ հարաւային կողմը Մուշէկ
ձորը, որուն միւս կողմը փոքր լեռ մը կայ, աստ ալ միւս
կողմը Քօրօ Տէփէ, ուրկէ անդին է Աղըօղլու. աստ ջուր
մը կը բղխի. Աղպուլախի գագաթը Քէչէլ Եօրտու կըսուի
Քաղաքէն քառորդ մը հեռու դաշտին մէջ 15 տու-

Նով Հայոց գիւղ մը կայ Ջէնկիլէր անուն, որ երբեմն 300 տուն ունէր և մէկ եկեղեցի ։ Այս գիւղին մօտ գերեզ- ցի՛ն պարտէզ մը կար պտղաբեր ծառերով, սալոր ու տանձ ։

Քաղաքէն 3 ժամ հեռու և անոր հիւսիսային կողմը կը տեսնես Մասիս, (1) ձիւնապատ և տիեզերահռչակ լեռը ։ Քաղաքէն մինչև հոն դաշտավայր է ։ այս դաշտին Տիատինի կողմի մասը Կարաչօլ կը կոչուի, և միւս կողմը՝ որ Պարսկաց սահմանին մէջ է, Կանիկոր ։ Մասիսի հարաւային կողմը տաճկաց հող է ։ իսկ հիւսիսային կողմը՝ որ Արարատայ ընդարձակ մշակեալ ու բարեբեր դաշտն է, Ռուսաց ։ Պայազիտէն 6 ժամ հեռու է Ճէօլկէօնլիւ կէօլը, որ կը զատէ Ռուսաց սահմանը, և 4 ժամ հեռու Քօշէ կէօլը, որ կը զատէ Պարսկաց սահմանը ։ Պարսկաց սահմանագլուխը Աւաճուխ անուն տեղին վրայ բերդ մը շինուած է ։

Պայազիտ ՚ի հնումն Մեծ Հայոց Այրարատ նահանգին Մասեաց—ոտն ըսուած գաւառին մէջը կ՚իյնար ։

Սեպտեմբեր 8, երկուշաբթի առտու ժամ 2, մեկնեցանք Պայազիտէն, դարձանք կրկին ու եկանք նոյն օրը երեկոյեան ժամ 10 ին Իւչ Քիլիսէ ։

Սեպտեմբեր 9, երեքշաբթի առտու ճամբայ ելանք Ղահրինու վիճակին Քօշա Քէնտ անուն գիւղն երթալու համար, 7 ժամ հեռու ։ Ճամբան դաշտային էր, որուն մէջ տեղ տեղ բլրակներ պակաս չէին ։ Նախ գիւղէն մէկ քառորդ անդին հանդիպեցանք Սիւրաա գետին, որուն վրայ քարաշէն կամուրջ մը շինուած էր, ուրկէ

(1) Արմա՛ նահ. որդին Ամասիա իր անունովը Մասիս անուանած է ։

անցնելով գացինք 2 ժամ ու իջանք ճամբուն վրայ Ամէօր անուն պարսկի գիւղը՝ որուն մէջ աւերակ եկեղեցի մը կար. անկէ ալ մէկ ժամ հեռու և դարձեալ ճամբուն վրայ հանդիպեցանք Կէօլէօր անուն պարսկաց գիւղը։ Մինչև հոս մէկ քանի անգամ Եփրատ գետին հանդիպելով մէջէն անցանք. այս գիւղէն ալ ելանք ու 2 ½ ժամ ալ երթալով իջանք Եօնճալը անուն Հայոց գիւղը. վերջը անկէ ալ 1 ½ ժամ երթալով հասանք Քուշա Քէմէօ անուն Հայոց գիւղն՝ ուր գիշեր կեցանք։ Քարաքիլիսէ փոքրիկ գիւղ մ'է, որ ունի 25 Հայու և 3 տաճկի տուն. մէկ եկեղեցի Քուշա Քէմէօ անունով, և չորս կողմն ալ առատ ցորենի արտեր։

Սեպտեմբեր 10, չորեքշաբթի ճամբայ ելանք Մոլլա Սուլէյման երթալու համար, 7 ժամ հեռու։ Ճամբանիս երէկուան դաշտային ճանապարհին շարունակութիւնն էր։ Նախ գիւղէն քանի մը վայրկեան հեռանալով անցանք Դուզ Չայ անուն վտակն՝ որ Եփրատի մէջ կը թափի, ու կէս ժամ երթալով անցանք Բօշէկ անուն քրդաց գիւղին մէջէն. անկէ ալ մէկ ժամ անդին Մուլլա Օմար անուն քրդաց գիւղէն, ուրկէ ալ մէկ ժամ հեռի եկանք Շէյխանլը անուն Հայոց ու քրդաց գիւղը. անկէ ալ դարձեալ 2 ժամ հեռու հանդիպեցանք Մամուրէ գիւղն՝ որուն մօտն էր խօշան գիւղ. վերջը 2 ժամու չափ ալ երթալով հասանք դաշտին ծայրը՝ լեռներու ստորոտը Մոլլա Սուլէյման գիւղը, ուր կեցանք գիշերը։

Այս ընդարձակ արգաւանդ դաշտն, որ ցորենի ու գարիի արտերով ծածկած էր, և որուն մէջ անթիւ գիւղեր շինուած էին, կըսուի Ալաշկէրտ Օվասը.

Մոլլա Սուլէյման Քէօշք(1) լերան ստորոտը լերանց

(1) Քէօշք Տաղ—'ի հնումն Սոսան կամ Սոսանուէր. աղաւաղեալ

ստորոտը դաշտին մէջ շինուած Հայոց գիւղ մ'է 40 տունով. որուն հիւսիսային կողմէն կանցնի Խօշապ Ջուրն, որ Քէօսէ Դաղէն իջնելով Խօշապ ձորին մէջէն վազելով կերթայ կը խառնուի Շէնեան վտակին մէջ։ Օդն ու ջուրը աղէկ է. ունի քարաշէն մեծ եկեղեցի մը հռովմէական Հայոց։ Քէօսէ լերան ստորոտը բլուրի մը վրայ գերեզմաննոց մը կայ ուխտատեղի Հայոց, ուր կը հանգչին Սէրոբ Աստուածածնի նահատակներուն ոսկորները, որուն ներքև ալ աղբիւր մը կայ։ Բնակչաց գործածած լեզուն քրդերէն էր։ Գիւղէն ժամ մը հեռու ձորերուն մէջ ու լեռներուն վրայ տանձի, սօսիի, խօշ պօրնի եւն ծառեր պակաս չէին. նաև խօշա չայը, մանաւանդ Զօր գեչէ անուն ձորին մէջ. Զօր անուն գիւղին աւերակ պատերը կը կենան։

Գիւղէս 1½ ժամ հեռու է Խանդըր անուն գիւղը. 4 ժամ հեռու Քէշիշ գիւղը, որոնց բնակիչները հռովմէական հայեր էին. և 2 ժամ հեռու Թօփրագ Քալէ, որ կերևայ Շէնեան (1) վտակին արևմտեան կողմը լերան ստորոտը։

## ԹՕՓՐԱՔ ՔԱԼԷ

Ալաշկերտ գաւառին գլխաւոր քաղաքն է. ունի 300 տուն քիւրտ և Հայ. սրածայր լերան վրայ պարսպապատ բերդ մը. քաղաքէն մինչև բերդը կէս ժամէն ա-

Ջրոտ ու անքեր սրակատար լեռ մ'է, որուն երկնաքերձ գլուխը կը խրոխտայ շրջակայ լեռներուն վրայ, որոնք Խօշ Խոտըր, Թաշին և Կոպճան լեռներու գօտիներն են։

(1) Շէնեան վտակը Խօշ Խոտըր լեռներէն կիջնայ ու Եփրատ կը թափի։

ւելի կը տեւէ, միշտ ուղղակի դէպ 'ի վեր ելնելով նեղ ու դժուարին ճամբէ մը։ Կը կարծուի որ այս քաղաքը հին վաղարշակերտ քաղաքն եղած ըլլայ, որ Արարատայ Բագրեւանդ գաւառին քաղաքն էր, և աղաւաղելով հիմա Ալաշկերտ ըսուած է։

Սեպտեմբեր 11, հինգշաբթի առտու կանուխ ճամբայ ելանք Տէլէ Պապա գիւղն երթալու համար, 10 ժամ հեռի։ Այս գիւղն երթալու համար մէկ քանի ճամբայ կար, որոնց լաւագոյնը ձորի ճամբան ըլլալով՝ նոյն ճամբէն գացինք. ուստի նախ Պէօօք Տաղլէն արեւմտեան կողմէն ու Մօլլա Սիւլէյմանի լերան ստորոտէն երթալով 1 1/2 ժամ, մտանք ձորի մէջ. ուրկէ ալ 1 1/2 ժամու չափ լեռներ ելնել ու իջնելով կրկին մտանք ձորի մէջ, ուր վրանաբնակ (քարա չատըրլը) քրդեր կային, և ջուր մ'ալ կանցնէր. Թէ՛ այս ձորն և թէ՛ երկու կողմի լեռները փոքրիկ ծառերու անտառներով ծածկած էին։ Անկէ 3 ժամ հեռու հաստ ու բարձր անհատնում մայրի ծառերու ընդարձակ անտառ մը կայ Սօղանլը անուն, որ Կարսի ու Բասենի վիճակները իրարմէ կը զատէ։ Այս ջրաւէտ ու ծառաւէտ ձորին մէջ 4 ժամ ճամբայ երթալնէս ետքը՝ ելանք լեռ մը, որուն գագաթին վրայ 1 1/2 ժամ շարունակ երթալով (վասն զի հոս լեռներուն գագաթի կողմերը իրարու հետ միացեր ու կարծես թէ ընդարձակ դաշտ մը ձեւացուցեր էին) իջանք Հաճի Հալիլ անունով քրդաց գիւղը, ուրկէ ալ ելնելով 1 1/2 ժամէն դարձանք լեռ մը ու մտանք Տէլէ Պապա, ուր գիշեր կեցանք.

Այս Հայոց գիւղը Բասենու վիճակին մէջ ընդարձակ դաշտի վրայ շինուած է. ունի 30 տուն, մէկ եկեղեցի, գմբեթաւոր շիրիմ մը՝ որ է Տէլլի Պապայի գերեզմանն ու տաճկաց ուխտատեղի, ուր նաև Հայերն ալ կերթան ամեն շաբաթ օր։ Տուները գետնի վրայ

շինուած ախոռի նման բաներ էին. ձեղուններըՙ իրա֊ րու կից պատուական գերաններով շինուած, պատու֊ հաններըՙ ձեղունի կողմէն տանիքներուն վրայ բացուած քանի մը ծակեր էին. տանիքները հողով ծեփածՙ ո֊ րոնց վրայ իբրև փողոցի մէջ կը քալէին. ամեն տան մէջ 3 սենեակ կար, որոնց մէկը ճանապարհորդ ընդունելու յատկացած էր, մէկն ալ տան տիրոջ կովերուն ու ձիե֊ րուն եւն. անասնոց ախոռն էր. իսկ երրորդն ընտա֊ նիքին նստելու ու պառկելու սենեակն էր. այս վերջի֊ նին գետինը փոս մը փորուած էր, որուն մէջ փայտ կամ քակոր կը վառէին տաքնալու և հացերնին ու կե֊ րակուրնին եփելու համար։ Կրնայ մարդ երևակայել թէ ո՞րչափ դժուարին է բնակիլ ասանկ մուխով լեցո֊ ւած սենեակի մը մէջ, ուր մարդուն աչքէն արտա֊ սուքներ կը վազէ և կրնայ խեղդամահ ըլլալ. Օդն ա֊ ռողջ է. ձմեռը շատ ցուրտ կընէ և մարդաչափ ձիւն կը դիզէ. ջուրը գետակինն է անուշ ու պատուական։ Կայ առատ ցորեն ու գարի։

Սեպտեմբեր 12, ուրբաթ ճամբայ ելանք Եազան գիւղն երթալու համար, 7 ժամ հեռի։ Ճամբանիս դաշտային էր, որ կը կոչուի Բոզէն Օվասը. որուն ծայրը կը հասնի մինչև Էրզրում քաղաքին մէկ ժամ մնայով դանուած Տէվէ Պօյնու անուն ցած լեռները։ Բասենու դաշտը ցորենի ու գարիի արտերով ծածկած էր, որուն մէջ 3 ½ ժամ երթալնէս վերջը եկանք Իւզվէրէն անուն Հայոց գիւղը, ուրկէ ալ ժամ մը հեռի հանդիպեցանք ճամբուն վրայ Գոմաջուր անուն Հայոց գիւղը, և ասկէ մէկ ժամ հեռիՙ դարձեալ ճամբուն վրայ, մտանք Մէնտէլէն անուն տաճկի գիւղը, ուր քանի մը մեծ ծառեր կային։ Ասկէ ալ կէս ժամ հեռի և ճամբուն վրայ տեսանք Իմ֊ րադոմ քրդաց գիւղը. այս վերջինէն ալ ժամ մը հե֊

ու երթալով հասանք Եաղան, ուր գիշեր մը կեցանք։

Եաղան Հայոց ու քրդաց գիւղ մ՚ է, որուն մօտէն կանցնի Երասխ գետը (Արաս սու)։

Ունի 50 տուն, մէկ եկեղեցի, մէկ մզկիթ և սեխի ու ձմերուկի արտեր։

Սեպտեմբեր 13, շաբաթ ճամբայ ելանք Կէօլլիւգեօլն երթալու համար, 7 ժամ հեռի։ Ճամբանիս դաշտային էր և ցորենի արտերով ծածկած, որուն մէջ ամեն կողմ գիւղեր կը գտնուէին, մանաւանդ ճամբուն վրայ։ Այս ճամբէն 2 ժամ հեռի կերևնար Հասան Քալէ գիւղաքաղաքը։

## ՀԱՍԱՆ ՔԱԼԷ։

Բասենի գաւառին գլխաւոր գիւղաքաղաքն է, որ շինուած է Ծէօթօն լերին ստորոտը, և 6 ժամ հեռի Էրզրումէն։ Ասոր քովէն կանցնի Հասան Քալէ սու (՚ի հնումն Մուրց կամ Մրցամոր) ըսուած ջուրը, որ մէկ ժամու չափ հեռանալով քաղաքէն կը թափի Երասխ (1) գետին մէջ Քէօփրիւ-քէօյ ըսուած գիւղին մօտ, ու

(1) Երասխ կամ Արաս եւ կամ Արաքս, Երեա գետ· (կըսուի որ Արմենակի որդին Արմայիս իր Արաստ թոռան անունովը՝ այս գետին անունը Երասխ դրած է)։ Թէքմանի վիճակին մէջ Պինկէօլի լեռներէն շատ մը առուակներ կը վազեն, որոնք միանալով կը շինեն այս գետը։ Երասխ Թէքմանէն վազելով կանցնի Բասենի վիճակին մէջ, անկէ կանցնի Կարսի նահանգն ու կը մտնէ Պարսկաց հողը, կը թրջէ Նախջեւանի, Խափանի եւ Գարապաղի հողերն ու Ճիվատէի մէջ Քիւր կամ Կուր գետին հետ միանալով կը մնայ Քիւչթասէֆի սահմաններուն մէջ ու կը թափի Կասպից ծովը երեք բերաններով։

րուն խառնուած տեղին վրայ շինուած է հոյակապ կամուրջ մը՝ երկարաձիգ ու լայն ։ Հասան Քալէ ունի 1500 տուն քիւրտ ու հայ, լերան վրայ բերդ մը Հասան Քալէ անուն. պարսպապատ է և շուրջանակի խրամ ։ Պարիսպը երկու դուռ ունի, որոնց առջևը կամուրջներ շինուած են. Լերան գլուխը ջրհոր մը կայ, որ տաճկաց ուխտատեղի է Հասան Տէտէ անունով, ուր կերթան նաև քրիստոնեայները ։ Լերան արևելեան կողմը՝ Գրիգոր Մագիստրոսի շինած Տիրամօր վանքը կայ ։ Քաղաքէս քառորդ մը հեռի հանքային ջուրերու դմբեթաւոր բաղնիքներ շինուած են ։ Եազանէն մինչև Կիւլլիւ դաշտին մէջ ճամբանուս վրայ գտնուած գիւղերը հանդիպելով երեկոյեան հասանք Կիւլլիւ, ուր գիշեր կեցանք ։

Կիւլլիւ բլուրի մը վրայ շինուած փոքրիկ գիւղ մ'է Հայոց ու քրդաց. ունի մէկ եկեղեցի, մէկ մզկիթ, բաղնիք մը, առողջ օդ ու աղէկ ջուր ։

Հոս Քեօշքերան կը տիրէր. ամեն մարդ սարսափի մէջ. խե՜ղճ արարած, այս յուսահատ վիճակին մէջ ո՛չ բժիշկ կայ, ո՛չ դեղ և ո՛չ ողջպահիկ կանոնաց հրահանգներ ։ Չեմ կրնար նկարագրել ինչ ազդեցութիւն որ ըրաւ մը-

Երասխ կուր գետին չը խառնուած, իր մէջը կընդունի քանի մը մեծամեծ վտակներ, ինչպէս են, Հասան Ղալայի ջուր, Զէնկլի գետակ, Ախփայ չայ, Ջանկու եւայլն, եւայլն ։ Ընթացքը հիւսիսէն հարաւ է եւ սրընթաց, մանաւանդ ձիւներուն հալած ժամանակ ։ Ջուրը շատ պատուական է. ունի իր մէջը համով ձուկեր, մանաւանդ Բասենի կողմերը Ճանառ անուն ձուկը երկայն մինչեւ 2 կանգուն եւ սպիտակ նման կէօմօշ ձկան, Լէօք երկայն ու բարակ, Դեղին պորտ, Մուրզ, Կարմրախէտ ։ Երկայնութիւնն է 617 մղոն մինչեւ կուր եւ 95 մղոն ալ անկէ մինչեւ կասպից ծովը ։

բաս ամբողջ ժողովուրդի մը տեսիլը անօք և անխնամ իբրև ընկլի ձգուած այս յանկարծահաս համաճարակ հիւանդութեան առջև. այն ազդեցութիւնը միշտ կը նորոգի երբ խոլերայի ձայնը լսեմ: Անկէ 'ի վեր և մանաւանդ մանաւորապէս 1865 թուին Պոլիս պատահած խոլերային ժամանակ իբրև բժիշկ և անդամ ողջապահական յանձնաժողովին բաւական մեծ դեր մը խաղացած ըլլալով, և 'ի մօտոյ ուսած ու կշռած այս զարհուրելի հիւանդութեան վերաբերեալ զանազան պարագայները այս ուղևորութեանս նկարագրութեան մէջը կը կցեմ, սոյն հիւանդութեան նկարագրութիւն մը հանդերձ ախտաբանութեամբն ու բուժաբանութեամբը՝ որ Եւրոպայի ամենէն վարպետ բժիշկներուն փորձերովն ու մերոյիշեալ թուականին Պոլսոյ մէջ գումարեալ բժշկական ժողովին յառաջ բերած գիտնական ու փորձական արդիւնքներովը հաստատեալ ճշմարտութիւններ են. վերը ըսած ազդեցութեանս համար՝ ինծի անանկ եկաւ թէ այս նկարագրութիւնը չէր կրնար ուղևորութեանս նկարագրութենէն զատել: Բայց առ այժմ ձեռք առնենք մեր պատմութեան թելը:

Սեպտեմբեր 14, կիրակի կիւլիւէն ճամբայ ելանք Էրզրում երթալու համար, 3 ժամ հեռի:

Կէս ժամու չափ երթալով անցանք Տէվէ Պօյնու լեռները և իսկոյն տեսանք քաղաքն ընդարձակ դաշտի մը մէջ, որ կը կոչուի Էրզրում Օվասը. իջանք սոյն դաշտին մէջ և 1 ½ ժամ ճամբայ առնելով մտանք քաղաքը:

## ՆԱՀԱՆԳ ԷՐԶՐՈՒՄԻ:

Էրզրումի նահանգը Ասիական Թուրքաստանի մէկ փաշայութիւնն է, որ Պարսից և Ռուսաց սահմաննե-

րուն ու Սև ծովի և Մուսուլի նահանգին մէջ՝ տեղը կէյնայ. լեռնային է, և երևելի լեռներն են՝ Պինկէօլի (բիւրակնեայ) միացօտի լեռները, որոնցմէ կը բղխին Երասխ և ուրիշ գետեր. ընդարձակ դաշտեր ալ ունի ։

Ունի 400,000 ի չափ բնակիչ, որուն մեծ մասը քիւրտ ու տաճիկ՝ է և միացածը Հայ. իսկ յոյն, հրեայ և պարսիկ քիչ կը գտնուին ։

Բնակիչներն ընդհանրապէս առողջ, կորովի, երկարակեաց, բայց անկիրթ, տգէտ ու աղքատ մարդիկներ են, մանաւանդ քրդերը՝ որ գողութեամբ մարդասպանութեամբ կապրին և բարբարոսական կեանք կը վարեն ։ Հայերն ու տաճկըները և գիւղաբնակ քըրդերը հիւրասէր են. կը գտնուի տէրութեան մէկ բանակը և անկանոն զօրք ։ Այս սահմանին մէջն էր բարձըր Հայք, Չորրորդ Հայք, Այրարատ, Աղձնիք, ևն ։ Ունի շատ մը գետակներ, զոր օրինակ. Սարչամու գետ, Փարասու ։ Վտակներ. զոր օրինակ, Քուրու չայ, Գայլ գետ, Խնուս, Թորդում, Կեզի, Դըղըլ ըրմաք վտակները ։ Գետեր. ինչպէս են, Եփրատ, Ճորոխ և Երասխ, որ կոռոգեն Նահանգիս դաշտերն ու ձորերը ։

Նահանգիս գետինը բարձր է և բարձրագագաթ լեռնով ծածկուած. ունի գեղեցիկ դիրք մը, բարեբեր հող և հանքային ջուրեր ։ Կլիման կամ օդը ցուրտ՝ բայց առողջ. դաշտերն ու լեռները ձիւնով կը պատին սեպտեմբերի սկիզբէն մինչև ապրիլի վերջը. Գլխաւոր բերքերն են՝ ընտիր ցորեն, գարի, հաճար (չալտար), կտաւատ, գետնախնձոր, բանջարեղէններ, աղ, ծիրանի, տանձ, մեղր, այծի թիֆթիկ, ոչխարի մորթ, Քանդարաղ հոյառը, գայլի, կզի և կատուի մորթ. սեկ, տան կտաւ, խամ մանուսայ, ընտիր կաշի, կտաւի մանած, բուրդէ շալ, բուրդէ գուլպայ, կտաւատի իւղ,

տեսակ մը փսխաթ, օղի և հանքային ածուխ, որ Տէվէ Պօյնու և Փալան Տէօքէն լեռներուն դօտիներուն մէջ կը գտնուի, բայց անգործածելի մնացեր է։ Կը գտնուի ծիծեռնիկ, կաքաւ, լոր (պըլտըրճըն), բադ, կռունկ (Թուռնա), կիվկիվ, ճնճղուկ, կարապ, արագիլ, սոխակ, ձկնկուլ (սալխա գուշ), ագռաւ, Թութակ, սարեկ (սըղըրճըլը), աղաւնի, ուրուր, (չայլախ) արծիւ, ղուղու (սագի նման կենդանի մը), ցուլ, գոմէշ, կով, եզ, մատակ ոչխար, այծ, արջ, գայլ, աղուէս, Ջրշուն (սուիթի), Նապաստակ, վայրենի այծ, վայրի ոչխար, Ջրի ոչխար (դունուզ), կատու, կուզ (սամսար), ձի, Ջորի, վայրենի խոզ, ալա պալըգ ըսուած ձուկ մը՝ Թորդումի վտակին և ուրիշ վտակներու մէջ.

Վաճառականութիւնը ծաղկեալ է, մանաւանդ Էրզրում քաղաքին մէջ որ կեդրոն է, և ընդհանրապէս Պարսկաստանի, Ռուսիոյ, Կոստանդնուպօլսոյ, Դամասկոսի ևլն վրայ է.

Այս նահանգը 13 գաւառներու բաժնուած է. Էրզրում, Խնուս, Թէքման, Բասեն. Թորդում, Սպեր, Պայազիտ, Բաբերդ, Դերճան, Երզնկայ, Քէլքիթ, Կեղի, Գուզիջան։

## ԷՐԶՐՈՈՒՄ
## ԿԱՐԻՆ. ԹԷՕԴՈՒՊՕԼԻՍ։

Էրզրում Օվասը ըսուած դաշտին արևելեան հարաւային կողմը՝ լերան ստորոտն և Եփրատէն քիչ հեռի պարսպապատ քաղաք մ'է, ուր կը նստի նահանգին կառավարիչ փաշան.

Աշխարհագրական երկայնութիւնն է 39°26', և լայնութիւնը 35°5'։ Էրզրում կը գտնուէր 'ի հնումն Բար-

ձըր Հայոց (1) աշխարհին մէջ ։

Ունի 65,400 ի չափ բնակիչ , եւ 11,060 տուն , որոնց ,

| | | | |
|---|---|---|---|
| 57,100 | մահմէտական և մէկ քանի Պարիկ . | 9350 | տուն. |
| 6,950 | Հայ . | 1300 | » |
| 300 | » հռովմէական | 290 | » |
| 200 | յոյն | 35 | » |
| 150 | հայ բողոքական | 25 | » |
| 400 | փոշայ | 60 | » |
| 65,400 | | 11,060 | » |

(1) Գիտնալ պէտք է որ Հայաստան 'ի հնումն երկու գլխաւոր մասերու կը բաժնուէր փոքր Հայք եւ Մեծ Հայք ։ Մեծ Հայք ալ 15 աշխարհներու կամ Նահանգներու (Նախարարութեան երկիր) բաժնուած էր , որ էին՝ Բարձր Հայք , Չորրորդ Հայք , Աղձնիք , Տուրուբերան , Մոկք , Պարսկահայք , Կորճայք , Վասպուրական , Արձախ , Սիւնիք , Փայտակարան , Ուտի , Գուգարք , Տայք , Այրարատ , որոնց ամեն մէկն ալ զանազան գաւառներու բաժնուած էին ։ Արդ՝ Բարձր Հայոց գաւառներուն մէկը կը կոչուէր Կարին , որ այն կող երուն մէջ շինուած Կարին քաղաքին անունէն առնուած էր . բայց վերջը մեր Նախնի մատենագիրները՝ ինչպէս Խորենացին , եւ այլն . ոչ միայն գաւառին Կարին անունը գործածել սկսան , այլ նաեւ ընդհանուր Նահանգին ալ , եւ սովորաբար Բարձր Հայոց աշխարհ ըսելու տեղ բակըսան յաճախակի Կարնոյ Նահանգ ըսել ։ Սակայն Կարին անուն քաղաք մը թէ եւ հին եւ շատ դարերէ 'ի վեր շինուած ըլլալը մեր ազգային Նախնի պատմագրաց յիշատակարաններէն ու սորագրութիւններէն յայտնի կերեւի , բայց չը գիտցուիր թէ ո՞վ շինած է եւ ո՞ւր , եւ ո՞րի անունով այսպէս կոչուեր է . միայն Ղլէնխոս պատմագիրը կըսէ , ինչպէս նաեւ Եզրասպոն ալ կը վկայէ՝ թէ Մեծին Հայոց Նա-

կան նաև եւրոպացի պանդուխտներ, անգղիացի, գաղղիացի, Ռուսիոյ և պարսից հիւպատոսներ։ Էրզրում պարսպապատ է մոխրագոյն որթատաշ քարերէ շինուած կրկին պարիսպներով, որոնց մէջ տեղի միջոցը Հէօոր ղէչըն կը կոչուի, որ 10 կանգուն լայնութիւն ունի։ Արտաքին պարսպին շուրջն ալ խրամ (հէնտէկ) փորուած է, որուն շրջապատը մէկ ժամ կը տևէ. ասոր ալ շուրջը ցած պատ մը քաշուած է. խրամին արտաքին կողմը շուրջանակի քաղաքին արուարձանն է, ուր բազմաթիւ տուներ ու շէնքեր կան, և քաղաքացւոց մեծագոյն մասը հոս է, նաև քաղաքին շուկայներուն, իջևաններուն և վաճառանոցներուն շատը. վասն որոյ քաղաքացիք արուարձան չեն ըսեր ասոր, այլ Էրզրումի քաղաքը։

Այս արուարձանին ալ շուրջը ուրիշ խրամ մը փորուած է, որուն շրջապատը 3 ժամ կը տևէ և որուն քո-

խարարութենէն Գարանաղիտէս անունով մէկը այս կողմերը երթալով Եփրատ գետին ակը գտեր եւ օդին ու տեղին դըրից վայելչութեանը հաւնելով՝ իրեն տեղի բնակութեան արօչեր ու պարիսպ մը շիներ է ։ Ասոր պատմութեանը նայելով կը հետեւի որ Կարին անունը՝ Գարանաղիտէս անունէն եկած ըլլայ, զոր գուցէ վերջը յոյներն իրենց յարմարցընելու համար կրճատելով Կարին ըսած են ։ Բայց դարձեալ չը հասկցուիր՝ թէ Գարանաղիտէս ո՞ւր տեղ հաստատած էր իր բնակութեան տեղը. ուստի չենք կրնար ըսել՝ թէ հիմակուան Էրզրում քաղաքին տեղն եղած ըլլայ, վասն զի Խորենացին կը գրէ (Գ հատ. ԾԹ Գլ.) որ չորրորդ դարուն վերջը (386 Թուական Քրիստոսի) յունաց Թէոդոս կայսրն Հայոց վրայ Թագաւոր կարգեց Արշակ եւ Վաղարշակ (Պապ Թագաւորին զաւակները) երկուքը մէկէն, որպէս զի թէ որ մէկը ապստամբի, միւսը գոնէ հաւատարիմ մնայ, որոնցմէ առաջինը Դուին քաղաքին մէջ հաստատեց

վերը ամրոցներ շինուած են, և ունի 10 դուռ, որ կը կոչուին ճէտլէ տօբուսը։ Այս դուռներուն կողմերը ֆօշաներ կը բնակին 50 կամ 60 տուն, որոնք հայերէն կը խօսին, բայց ունին իրենց սեփական լեզու մ'ալ։ Ասոնց գըտնուած տեղը փօշայ ճանկէօյ կը կոչուի։ Քաղաքին պարըսպապատ մասին կեդրոնը բլուրի մը վրայ միջնաբերդ (իչ գալէ) մը կայ ամուր պատերով և 12 բարձր աշտարակներով, որուն դիրքը քաղաքէն շատ բարձր է և ունի մէկ դուռ մը՝ որուն առջև պահապան զօրք կըսպասէ։ Միջնաբերդին մէջ կան քանի մը տուներ, ճեպ-

իր աթոռը․ իսկ Վաղարշակ Էրիզա քաղաքին մէջ, եւ այս երկրորդը հազիւ հօն տարի մը թագաւորելէն ետեւ մեռաւ։ Այն ատեն նախարարաց սրտին մէջ արմատացեալ՝ անմիաբանութիւնն ու թագաւորներուն թուլութիւնը տեղի տուած էին թշնամեաց Հայաստանի վրայ բռնանալու, որ թշուառացեալ յանհնարինս կը նեղուէր․ ուստի Արշակունեաց թագաւորութիւնն ալ բոլորովին տկարացեալ սպառսպուռ կործանման վտանգի մէջ էր։ Ան ատեն յոյներն ու պարսիկները տիրապետեցին Հայաստանի եւ երկու մասի բաժնեցին․ յունաց բաժինն էր Հայաստանի արեւմտեան կողմէն սկսելով փոքր Հայք, Միջագետք Հայոց մինչեւ Տարօնի սահմանը․ իսկ պարսից՝ անոր արեւելեան կողմն Արարատէն սկսելով այն ընդարձակ ու արգաւանդահող աշխարհները։

Արշակ այնուհետեւ չը կրնալով նստիլ պարսից բաժնին մէջ, ձգեց գնաց բնակեցաւ յԷրիզա։ Այսպէս ահա կործանեցաւ Արշակունեաց թագաւորութիւնը եւ տակնուվրայ եղաւ Հայաստան՝ որ բաժին էր պարսից․ վասն զի պարսիկները օր օրի զօրանալով ամեն ճիգ կը թափէին կրակապաշտ ընելու հայերը եւ անհնարին կը նեղէին ծանր հարկեր առնելով․ սասանկ մինչեւ հինգերորդ դարուն սկիզբը կը նեղուէր խղճալին Հայաստան թշնամւոյն բռնակալ լուծին տակ հեծելով։ Այն ատեն մեծն Սահակ Կաթուղիկոս ընդ-

խանէ , միւհիմմաթխանէ , հին փարպխանէ , մեծամեծ և փոքր ռումբեր , ճերմակ մարմարիոնէ շինուած ռումբեր ․ Հարաւային կողմի որմին կից՝ չորս որմասիւներու վրայ կառուցեալ սև ու կարմիր քարէ շինուած բարձր գմբեթ մը , որուն ծայրը ձուլածոյ փոքրիկ խաչ մը կայ ․ հարաւային և արևմտեան որմերուն անկիւնին վըրայ շինուած բարձր կոթող մը մինարէի ձևով և ծայրը բաւիղաձև (թէփսիի ձև) , որուն վրայ երկայն ձող մը դըրուած է , ուրկէ տէրութեան դրօշակը կը բանան ուրբաթ և ուրիշ տօնական օրերը ․ այս կոթողը իր ձևոյն

հանուր աշխարհին հայոց , որ կը բնակէր պարսից բաժնին մէջ, եւ որուն սիրտը անդադար կը տանջուէր տեսնելով հայոց կրած անտանելի վիշտերը , ելաւ գնաց յունաց բաժնին վրայ հետն առնելով Սուրբն Մեսրոպ եւ իր երեք թոռները՝ Վարդան , Հմայեակ , Համազասպեան , եւ խորհեցաւ ազատել ազգը յունաց կայսեր օգնութեամբ ․ վասն որոյ ղըրկեց Սուրբն Մեսրոպ եւ Վարդան Կոստանդնուպօլիս յունաց Թէոդոս Թագաւորին , եւ օգնութիւն խնդրեց աղաչելով որ յունաց բաժինն եղած Հայաստանի մէջ ամրապարիսպ քաղաք մը շինել տայ՝ որպէս զի հայերը ապահով մնան թշնամեաց արշաւանքներէն պահպանուելով ։ Թագաւորն ընդունելով Սուրբ Հայրապետին խնդիրը իսկոյն հրաման ըրաւ Անատօլիոս զօրավարին որ երթայ նոյն բաժնին մէջ յարմարագոյն տեղի մը վրայ ամուր քաղաք մը շինէ հզօր պարիսպներով Հայոց ապաստանարան ըլլալու համար ։

Անատօլիոս երթալով Հայաստան ժողվեց իշխանները , նախարարները , եպիսկոպոսներն ու յունաց գործակալները , եւ ամեն կողմ շուրջ գալէ ետեւ հաւնեցաւ արդի Էրզրում քաղաքին դիրքը , ուր բնաւ շէնք մը չըկար , եւ սկսաւ անմիջապէս հիմնարկել ու շինել քաղաքը Քրիստոսի 421 թուականին , եւ անուանեց Թէոդոպօլ կամ Թէոդոպօլիս յանուն

Համար Բէէֆօէ Ճնօւէ կը կոչուի։ Երկրին պարիսպներուն ներքինը գրեթէ մինչև հիմա ամբողջ կը կենայ և բար֊ձըր է. իսկ արտաքինը ցած է, բայց խոր և շատ տեղե֊րը կործանած։ Այս երկու պարիսպները՝ իրենց ումե֊րէն դուրս ձգուած և քառակուսի ձևով 72 աշտարակ֊ներ ունէին, որոնց մէկ քանին կիսակործան են հիմա. ասոնց ումերուն վրայ մէկ մէկ կանգուն հեռաւորու֊թեամբ մարդաչափ բարձր դուռներ չինուած են։ Երկրին պարիսպները ունին չորս չորս մեծամեծ դռուներ, որոնք ի֊

թագաւորին ։

Անմ Խորենացւոյն այս պատմութենէն կը հասկցուի որ բուն Կարին քաղաքը հիմակուան Էրզրում քաղաքը չէ, բայց եւ այնպէս Էրզրում ալ Կարին ըսուեցաւ։ Եւ վերջը տասն եւ մէկերորդ դարուն մէջ երբ Սելճուքիները նուաճելով առին քաղաքը յունաց ձեռքէն՝ անուանեցին Արծրում, նոյն առեն քաղաքին մօտ գտնուած Արծն անուն բազմամարդ ու երե֊ւելի քաղաքին անունէն առնելով. բայց վերջը փոխուելով Արզրում կամ Էրզրում (երկիր յունաց) եղեր է։ Ինչպէս որ մեր ազգային պատմութիւնները ցոյց կուտան՝ թէ հայոց թա֊գաւորութեան ժամանակ երեւելի եւ բազմամարդ շատ քա֊ղաքներ կային՝ որ թագաւորութեան բարձմանէ ետեւ կամ թշնամեաց ձեռօք կործանուեր եւ կամ Հայերուն՝ բռնակա֊լաց ձեռքէն կրած նեղութիւններուն ու չափազանց հարստա֊հարութեանց չը կրնալ դիմանալով հեռահեռէ ուրիշ երկիրներ գաղթելուն պատճառաւ երեսի վրայ ամայի մնացեր ու աւ֊րուեր են։ Արդ, այս կարգէն է նաեւ Արծն քաղաքը՝ որ շատ բազմամարդ էր հոյակապ եւ հռչակաւոր, եւ ունէր ե֊րեք հարիւր հազարէն աւելի բնակիչ, 800 եկեղեցի, 150 վիճակաւոր քահանաներով, որ կը գտնուէր Կարնոյ դաշտին մէջ քաղաքէն 3 ժամ հեռի եւ անոր արեւմտեան հիւսիսա֊յին կողմը, որ այժմ 70 տուն Հայ եւ 20 տուն տաճիկ պարունա֊

բարու դէմ շինուած են քիչ մը շեղ, և կը կոչուին՝ 1. Թէվրիզ ղափուսու, արեւելեան կողմը. 2. Երզնկա ղափուսու, արեւմտեան կողմը. 3. Կէնճ ղափու, հարաւային կողմը. 4. Կիւրճի ղափուսու, հիւսիսային կողմը։ Ներքին պարսպին Թէվրիզ ղափուսիին վրայ երկու փոքրիկ պատուհաններ կան, որոնց երկու կողմերուն վրայ ձեռքերնին վեր բարձրացուցած երկու մարդիկներ քանդակուած են. Երզնկա ղափուսիին քով ներքին պարսպին արտաքին կողմին վրայ մարդաչափ մեծութեամբ կարմիր մեծ քար մը կար, որուն վրայ խաչ քանդակուած էր և կը

կող փոքրիկ գիւղ մ'է Ղօրղօլ անունով։

1048 Թուականին Քրիստոսի գետադարձ Պետրոս կաթուղիկոսը այս Արծն քաղաքին մէջ նստեցաւ Մոնոմախոս յունաց կայսեր հրամանաւը. վասն զի Անի քաղաքին կառավարիչ Կամենաս անուն յոյն իշխանը Հայոց կաթուղիկոսութիւնը վերցնելու համար սուտ դրպարտութեամբ բողոքած էր կայսեր սոյն կաթուղիկոսին համար, ինչպէս կըսէ Արիստակէս Լաստիվերացին. «Հրամայեալ է քեզ 'ի Թագաւորէ գնալ 'ի գաւառն Կարնոյ եւ նստել 'ի մեծն քաղաքն Արծնոյ»։

1049 Թուականին Քրիստոսի, պարսիկներն ու սկիւթացիները (թաթար) անթիւ բազմութեամբ զօրաց հեղեղանման յարձակելով քաղաքին վրայ, որ ո՛չ բերդ ունէր եւ ո՛չ պարիսպ, մեծ կոտորած հասուցին ժողովրդին վրայ եւ հրոյ ճարակ ըրին քաղաքը, մինչեւ աւերակաց հետքն անգամ չերեւնար այսօր, ինչպէս կըսէ Արիստակէս Լաստիվերացի ականատես պատմագիրը՝ ԺԲ Գլ. 56 Համար. ինչպէս նաեւ Հայոց պատմութեան Բ. Հատ. 948 Երես։

Արծն քաղաքին տեղին վրայ, ուր հիմա կը գտնուի Ղաբարզ գիւղը, ո՛չ աւերակներու մնացուած կերեւնայ եւ ո՛չ ալ հնութեանց նշան մը. միայն գիւղին մօտ փոքրիկ բլուր մը կայ՝ որուն վրայ մեծ հիմեր կը տեսնուին ու գիւղացիք փո-

կոչուէր կարմիր խաչ, զոր միւֆթի Ապտիւլ Րահման փաշան 1216 (տանկաց) թուականին աւրել տուած է; և 1859 թուականին պատահած երկրաշարժէն որմը փըլլելով՝ քարն ալ վար ինկած է։ Արտաքին պարսպին Նէնի քաբուսի կողմը կործանած ըլլալուն նոյն դրան ձևը միայն կը կենայ հիմա։ Ներքին պարսպին Կիւրճի քաբուսի բարաւորին վրայ քարաշէն մարդ մը շինուած է ձի հեծած, որուն երկու կողմերուն վրայ ալ առիւծներ. և նոյն դրան մօտ դարձեալ նոյն պարսպին արտաքին երեսը մէկ քանի քարերու վրայ յունարէն գրուածներ կան։ Կան նաև հայերէն գիրեր և շատ մը քանդակեալ խաչեր։ Այս չորս դռներուն առջևէն խըրամին վրայ մէյ մէկ կամուրջ շինուած է դիմաց անցնելու համար։ Աւանդութեամբ կըսեն որ պարսպին մէջէն գետնափոր երկու ծածուկ ճամբաներ կային պատերազմի ժամանակ փախուստ տալու կամ ներս պաշար բերելու համար, ինչպէս որ Հայաստանի ուրիշ քաղաքներու մէջ ալ կը գտնուէր։ Այս ճամբաներուն մէկը քաղաքին հարաւային լեռներուն քովը կը հանէր, և միւսը հիւսիսային կողմը դէպ 'ի շամբը. բայց հիմա անոնց ո՛չ դռները կերևնան և ո՛չ հետքը կը նշմարուի։

Էրզրում զանազան թաղերու բաժնուած է, որոնց

րելով հնութեան փոշիներ կը հանեն, ինչպէս նաեւ գիւղին սահմանէն ոսկորներու կոյտեր, եւ խեցեղէններ, պղնձի կըտորվանքներ, պղնձի դրամներ, Դշխոյն Հեղինէի ոսկիներէն, եւ հիմեր. Հաւանական է որ կան հնութիւններ, բայց հողով ծածկուած են. ուստի պէտք է հետամուտ ըլլալ. Արծնոյ դաշտին մէջ էին Լաստիվերտ գիւղը, Մարագաց գիւղը, Խաղտոյ Առինճ բերդը, որոնք բոլորովին աւերակ եղած են հիմա. —

քարայատակ փողոցները նեղ ու խոտորնակ կամ լայն ուղղաձիգ են. տուները քաղաքին մօտակայ լեռներէն բերուած քարերով կամ եփեալ աղիւսով (Թուղլա) և կամ անեփ աղիւսով (քէրփիճ) շինուած են, կրկնայարկ, ընդհանրապէս տձև անզարդ. եռայարկ և միայարկ և փայտաշէն տուներ քիչ կը գտնուին. տուներուն շատը մեծ կամ փոքրիկ պարտէզներ ունին, որոնց մէջ ուռենիի, բարտի և վարդենիի ծառեր կան. կան նաև մրգեղինաց ծառեր, որ չեն պտղիր և միայն ծաղիկ կը բանան: Տուներուն պատուհանները փոքրիկ և ընդհանրապէս Թղթով գոցուած են. տանիքներուն վրայ հող է. ամեն տան մէջ Թանտր կայ, որուն մէջ քակոր կը վառեն փայտի տեղ, և հացն ու կերակուրը հոն կեփեն.

Ունի փառաւոր պալատներ, հարուստ վաճառանոցներ, հրապարակներ, իջեւաններ, հին շինութիւններ, զինուորանոցներ, հիւանդանոց, բաղնիքներ, մզկիթներ, եկեղեցիներ, գեղեցիկ տուներ, դպրոցներ:

Քաղաքիս պարսպապատ մասին մէջ կը գտնուին ընդհանրապէս տաճկաց տուներ, ինչպէս նաև կուսակալին կրկնայարկ ու գեղեցկաշէն պալատն ընդարձակ պարտէզի մէջ, ուր քարաշէն փոքր սենեակ մ' ալ կայ, որուն մէջ կը պահեն գիշերները կառավարութեան ամեն տումարները: Քարաշէն կամարակապ երկար դէհլի-զէն մը, առաստաղը փայտով ծածկած շուկաններ:

Թէվրիզ քաղաքին հարաւային կողմը պարսպին կից կան Չիֆթէ մինարէ կոչուած երկու նոյնաձև աշտարակներ իրարմէ 20 ոտք հեռի, կապուտ յախճապակիներով (չինի) շինուած և ներքին կողմը գետնէն մինչև 3 կանգուն վեր սրբատաշ սևագոյն քարերով, որոնց վրայ գեղեցիկ ծաղիկներ, երկգլխեան արծիւներ և ուրիշ ձևեր քանդակուած են. այս ճարտարարուեստ չէն-

քերուն տեսքը ցոյց կուտայ՝ որ իրենց նախկին գագաթները կործանած են, և հիմա արևելեան աշտարակին միայն գլուխը փայտէ ձող մը դրուած է ծայրը մագնիսեայ երկաթով։ Այս աշտարակներուն քովը գմբեթաւոր չէնք մը կայ, որ 'ի հնումն եկեղեցի էր, որուն մէջ շատ հնութիւններ պահուած էին, զոր ռուսերը վերուցած են 1830ին՝ երբ արշաւեցին քաղաքին վրայ։ Այս չէնքը հիմա զինարան (ճէպխանէ) եղած է, որուն դրանն առջև պահապան զօրք կըսպասէ։ Այս գմբեթաւոր չէնքէն զատ վերոյիշեալ Չիֆթէ մինարէներուն քով կը գտնուի նաև Ուլու ճամի ըսուած երևելի մզկիթը, 'ի հնումն դիւանատուն, որ 28 որմասիւներու վըրայ հաստատուած է չորս կարգ կամարներով. ունի 7 դուռ, որոնց երեքը որմով գոցուած են։ Դարձեալ Թէփրիզ քաբուսիին մօտ կը գտնուի Նէճիպէյ ճամի ըսուած մզկիթը։ Միջնաբերդին հիւսիսային կողմը և որմին կից ու երկայնութեամբը չէնք մը կայ, ուր կարգով թնդանօթներ շարուած են ուրբաթ և տօնի օրերը նետելու համար։ Երզնկա քաբուսիի հիւսիսային կողմը կայ Մանկրով սարայը ըսուած քարաշէն ընդարձակ չէնքը, որուն մէջ դէպ 'ի արևելեան կողմը մատուռ մը կայ 4 փոքրիկ գմբեթներով, որուն փակեալ դռան ճակատն ու սնարքները քարերուն վրայ արծիւներ և կերպ կերպ ծաղիկներ քանդակուած են. մատուռին վրայ արձանագրութիւն մը դրուած է։

Մանկրովին արևելեան կողմը բարձր գմբեթով քարաշէն գեղեցիկ շինուածներ կան՝ որ կը կոչուին Եաղհանէ. ասոնց դիմացը կը գտնուին կառավարութեան գործարանները։ Մանկրովի մատուռին մօտ ու հարաւային կողմը յախճապակիով շինուած կոթող մը կայ մինարէի ձևով, որ կը կոչուի Չէնէլի մինարէ, որ Չիֆթէ մինարէներէն աւելի բարձր է. ասոր ալ գագաթը փլած

է, որուն վրայ ձող մը դրուած է դրօշակ բանալու համար․ ասոր չորս կողմն են զօրաց բնակարաններն ու քաղաքին երեւելի զօրանոցը։ Պարսպէն դուրս Եէնի քափուին դրսի կողմը արուարձանին Սուլթան Մելիք ըսուած թաղին մէջ կան երեք մեծաշէն գմբեթներ, որոնց մէկը աւելի մեծ եւ գեղեցկաշէն է, եւ որուն պատուհաններուն վրայ թռչուն, ցուլի գլուխ, խերբապատ փիշապաձեւ օձեր եւ ծաղիկներ քանդակուած են․ ունի մէկ դուռ և մէջը գերեզման մը։ Աւանդութեամբ կըսուի որ ասոնք Սուլթան Մելիք անունով իշխաններու գերեզմաններ էին՝ այս գմբեթներուն շուրջը տաճկաց գերեզմաննոց է։ Ուրիշ փողոցներու մէջ ալ կան շատ մը գմբեթներ, որոնց մեծ մասը կիսաւեր են կամ բոլորովին կործանած։

Կէօլ Ահմէտ թաղին մէջ ալ գմբեթ մը կայ, որուն յատակը գետնափոր է և դուռը իր քովի տանը մէջէն է․ ասոր մէջ 8 աստիճան սանդխով կիջնուի, ուր դագաղաձև գերեզման մը կայ, ուխտատեղի՝ տաճկաց։ Այս գմբեթին կից փոքրիկ գերեզմաննոց մը կայ տաճկաց։ Նոյնպէս պարսպէն դուրս Երզնկա քափուսին արտաքին կողմը արուարձանին մէջ փաշա Մէզարլըղը անունով տաճկաց գերեզմաննոց մը կայ, որուն մէջ կը գտնուին հինդ նահատակներու գերեզմաններ, որոնց արձանները քրիստոնէից գերեզմաններուն ձևովը շինուած են․ Աւանդութիւն մը կայ որ ասոնք 7 եղբայրներ էին՝ որ քրիստոնէութեան համար նահատակուեր են․ Թէպէտ և հիմայ հինդ գերեզման միայն կը գտնուի, անոնք ալ առանց արձանագրութեան, բայց բնակիչները մինչև հիմայ Եօթն Եղբարց գերեզման կը կոչեն։ Քաղաքիս արուարձանէն ալ դուրս Ճէզէր դրան կողմը 2 գմբեթներ կան՝ որ կը կոչուին Կէ-Տէ-Հէ գմբեթներ, իրարմէ ½ վայրկեան հեռու, որոնց մէկը աւելի մեծ է

և բարձր և որուն քովը աղբիւր մը կայ . իսկ միւսը փոքրը ու կիսաւեր . կարելի է որ ասոնք ՚ալ երևելի անձանց գերեզմաններ եղած ըլլան ։ Հոս ալ ընդարձակ գերեզմանատուն մը կայ տաճկաց ։ Քաղաքիս մզկիթներուն թիւը 200 էն աւելի է թէ՛ պարսպին և թէ՛ արուարձանին մէջ . գլխաւորները հետևեալներն են , իրենց դպրոցներովն ու գտնուած թաղերուն անուններովը .

| | Մզկիթ | | Դպրոց | Թաղ |
|---|---|---|---|---|
| 1 | Մուրատ փաշա | ճամիսի | 5 | Երզնկայի դուռը |
| 2 | Կէօմրիւկ | » | 5 | Կէօմրիւկ |
| 3 | Ջէյնալ | » | 2 | Բերդին մէջ |
| 4 | Ապտիւլրահման | » | 1 | Հէօլլիւկ մահլէսի |
| 5 | Կատանա | » | 2 | » » |
| 6 | Մօլ օղլու | » | 2 | Ալի փաշա » |
| 7 | Ճէտիտ | » | 3 | Գասըմ փաշա » |
| 8 | Այաս փաշա | » | 2 | Գասըմ փաշա մահալլէսի |
| 9 | Խօճատախճի (1) | » | 0 | Իչ մէյտանը |
| 10 | Քըրք չէշմէ (2) | » | 12 | Քըրք չէշմէ մահէլլէսի |
| 11 | Ճաֆէր աղա | » | 3 | » » » |
| 12 | Իպրահիմ փաշա | » | 11 | » » » |
| 13 | Ճէննէթ պատէ | » | 4 | Եէնի քաբու » |

(1) Ասոր քով փոքր փայտաշէն սենեակ մը կայ , որուն մէջն է սուրբ Թորոս անուն Նահատակին գերեզմանը , որ ուխտատեղի է եւ տաճկաց ձեռքն է ։

(2) Այս մզկիթը քաղաքին պատուարին մէջ եւ միջնաբերդին հիւսիսային կողմը Քըրք չէշմէ ըսուած թաղին մէջ է , երդը արճիճով պատած . ունի ընդարձակ պարտէզ մը , որուն մէջ մեծամեծ անձանց գերեզմաններ կան ։ Ի հնումն սուրբ Ստեփաննոսի եկեղեցի էր ․

| | Մզկիթ | | Դպրոց | Թաղ |
|---|---|---|---|---|
| 14 | Կիւրճի քարու ճամիսի | | 3 | Եէնի քարու մահալլէսի |
| 15 | Գարա քուլլուքճը | " | 3 | " " " |
| 16 | Նարման օղլու | " | 4 | Թէվրիզ քարուսը " |
| 17 | Մէթի | " | 2 | " " " |
| 18 | Խասս փաշա | " | 13 | Միջնաբերդին քով |
| 19 | Ուլու | " | 3 | Ջիֆթէ մինարէի " |
| 20 | Լէլէ փաշա | " | 8 | Իչ մէյտան |
| 21 | Հաճի սալիհ | " | 14 | Եէկէն աղա մահալլէսի |
| 22 | Տէվրիշ փաշա | " | 2 | " " " |
| 23 | Եէկէն աղա | " | 0 | " " " |
| 24 | Շէյխլէր | " | 12 | " " " |
| 25 | Գէլ հաճի | " | 3 | " " " |
| 26 | Փէրվէզ օղլու | " | 6 | Գալէ իչի " |
| 27 | Հիւսնի էօմէր | " | 2 | Նէզիք չարշը " |
| 28 | Հէպէ էֆէնտի | " | 2 | " " " " |
| 29 | Հաճի ճումա | " | 2 | " " " " |
| 30 | Գաման ճամիսի | " | 1 | " " " |
| 31 | Թարաքճը | " | 0 | " " " |
| 32 | Մահլէ պաշը | " | 2 | " " " |
| 33 | Մուժճու մահալլէ | " | 1 | " " " |
| 34 | Շէտի | " | 2 | " " " |
| 35 | Գավաք | " | 1 | " " " |
| 36 | Ճէտիտ | " | 2 | " " " |
| 37 | Ղրմանը | " | 1 | " " " |
| 38 | Ալի էֆէնտի | " | 1 | Եօնճալըք " |
| 39 | Չըրչըր | " | 0 | " " " |
| 40 | Կէզա մահալլէ | " | 1 | " " " |

Շուկայներուն անունները.

1 Սարայ քափուսու չարշըսը. 2 Իչ մէյտան չարշըսը
3 Գույումճու " 4 Գաֆաֆ "
5 Գալէ իչի " 6 Կիւրճի քափուսու "

7 Քէօփրիւ պաշը չարշըսը․ 8 Քիլիսէ քափու չարշըսը․
9 Նէզիք ” 10 Կէօլ պաշը ”
11 Կարմնջի գլուխ ” 12 Մահլէ պաշը ”
13 Կիւլ ահմէտ ” 14 Երզնկա քարուսու ”
15 Թէվրիզ ” 16 Պաքըրճըլար ”
17 Ալթ մէյտան, որ հրապարակ մ'է, ուր կը ծախուին ձիեր, կովեր, ոչխարներ, ևն ։ Այս հրապարակին մէջ սրբատաշ քարերով շինուած փոքրիկ տեղ մը կայ, ուր հին ժամանակէ մնացած գերեզման մը կը գտնուի․ քովը երկու ուրիշ գերեզմաններ ալ կան՝ Ալի փաշային ու Հէպիպ պապա անուն դենպետին, ուր ջերմեռանդութեամբ ուխտի կերթան տաճկըները ։

Իջեւաններն ալ մեծ և փոքր շուկաներուն մէջն են, որոնց անունները հետևեալներն են․

| | | | |
|---|---|---|---|
| 1 | Խատը օղլու խանը | Պարսիկ վաճառականներ կը նստին ։ | Գէօլին գը լուխն են ։ |
| 2 | Կամպուր ” | | |
| 3 | Մավրյ ” | | |
| 4 | Տէվրիշ աղա ” | | |
| 5 | Թիւթիւն ” | Հիւանդ կըպակի․ | |
| 6 | Ճեննէթ զատէ ” | վաճառականներ կը նստին ։ | |
| 7 | Մանսուր օղլու ” | | |
| 8 | Տապ օղլու ” | | Նէզիք չարշըսիի մէջն են։ |
| 9 | Քիւչիւկ ” | | |
| 10 | Սէրտէր ” | պանդուխտներու իջեւան ։ | |
| 11 | Կէնճ աղա ” | | |
| 12 | Քիլիսէ ” | Հայոց եկեղեցւոյն է | Հայոց եկեղեցւոյ դուռն են |
| 13 | Եէնի ” | | |
| 14 | Իւթիւթմէզ ” | վաճառականներ կը նստին ։ | |
| 15 | Քիւչիւկ ” | | |

| | | | |
|---|---|---|---|
| 16 Աչըք | խանը | զինուոր կը նստի | Կամուրջին գըլուխն են։ |
| 17 Փէրվէզ օղլու | » | վաճառանոց են | |
| 18 Հաճ Ահմէտ | » | | |
| 19 Մօլ օղլի | » | | Մօլ օղլի փողոցը։ |
| 20 Քօմէյլու | » | | |
| 21 Սինէն օղլու | » | վաճառանոց են | Սէթ մէյտանին մէջն են։ |
| 22 Մազլում | » | | |
| 23 Ղօռ օղլու | » | | |
| 24 Կիւլ Ահմէտ | » | | |
| 25 Մէմիշ աղա | » | պանդուխտ վաճառականաց բընակութեան տեղեր են։ | Պարսպին ներսն են։ |
| 26 Ապտէրլիլէր | » | | |
| 27 Ղազէզ օղլու | » | | |
| 28 Տիքիճիլէր | » | | |

29 Թօբհանէլի » դերձակները կը բնակին 100 ի չափ կրպակներու մէջ, եւ քրթերն ալ առ հասարակ ատոր մէջ առուտուր կընեն, եւ Թէվրիզ քարւանին կողմն է։

30 Թաշ խան. պարսպէն ներս քարաշէն մեծ իջեւան մ'է կրկնայարկ, որուն վերի յարկին մէջ կը պահեն զօրաց հանդերձներ, և ստորին յարկը կառավարութեան բանտն է։ Ատոր 4 անկիւնները 4 գետնայարկ խոռոչներ կան, որ Զընտան կըսուին։ Աւրիշ շատ մը իջեւաններ ալ կը գտնուին զանազան փողոցներու մէջ, որոնց մէջ ձիեր կը կապեն և կարաւաններ կը կենան։

Երևելի բաղնիքներն են.

| | | |
|---|---|---|
| 1 Կէօմրիւք | համամը. | Կէօմրիւկի քով։ |
| 2 Իքի կէօպէք | » | Նալիք չարսիին մէջ։ |
| 3 Քիւչիւք | » | Կիւրճի քարւանին. |
| 4 Ջէօփլիւք | » | Թէվրիզ քարւանին։ |
| 5 Թահտա | » | Մահլէ պաշը Թաղը։ |
| 6 Քըրք չէշմէ | » | » » » |

| | | |
|---|---|---|
| 7 | Հանըմ համամը՝ | Մահլէ պաշը թաղն |
| 8 | Ալյաս փաշա " | " " " |
| 9 | Ճահվարիէ " | Ուլու ճամիի քովը |
| 10 | Սէրայ " | " " " |
| 11 | Պօսթախանէ " | " " " |
| 12 | Քարա քուլլուքճու համամը | Չայղարա թաղը . |
| 13 | Մուրատ փաշա " | " " " |
| 14 | Շէյխլէր " | " " " |
| 15 | Մէռմէռ " | Նէնի քարուսի թաղը . |

կիսաւեր է եւ կանանց բանտ :

Կայ իրարու մօտ 2 եկեղեցի Հայոց յանուն սուրբ Աստուածածնի, որոնց մէկը՝ վերի և միւսը՝ վարի եկեղեցի կըսուի, և կը գտնուին արուարձանին Խօճէի թաղին մէջ. առաջինը Մայր եկեղեցի սուրբ Աստուածածնայ, որ 20 միաքար գլանաձև սիւներու վրայ հաստատուած երկայն քառակուսի ձևով քարաշէն մեծ ու նոր եկեղեցի մ'է: Երկրորդը՝ Տաճար միաբան սուրբ Աստուածածնայ, որ վերոյգրեալ եկեղեցւոյն որմին քով կակուղ մոխրագոյն սրբատաշ քարերով շինուած կամարակապ հին մատուռ մ'է: Տաճարին դրան երկու կողմերը 2—3 գերեզմաններ կան: Այս եկեղեցիներուն մէկ կողմը Հայոց դպրոց մը շինուած է և մէկ կողմն ալ Հայոց Առաջնորդարանը եռայարկ շքեղ ձևով, ուր կը նըստի նարնոյ վիճակի Արքեպիսկոպոսը: Այս շինութեանց ամէնն ալ բարտի, ուռենիի և վարդենիի ծառերով զարդարուած պարտէզի մէջ են, և ասոնց հիւսիսակողմըն է Հայոց ընդարձակ գերեզմանատունը որմափակ, ուր յոյներն ու ուրիշ քրիստոնեայ ազգերն ալ կը թաղեն իրենց մեռելները Հայոց մարդասիրական շնորհիւն ու թոյլտուութեամբը. Այս գերեզմանատան մէջն են Վառվառեայ կուսին և իր եղբօրը Գասպարին և Մարիամին գերեզմանները, որ մինչև հիմայ կը կոչուին

Նահապօլլի չէշմէսի ։ Կայ յունաց քարաշէն եկեղեցի մը յանուն սուրբ Գէորգայ կառուցեալ չորս սիւներու վը֊րայ , որ կը գտնուի Հայոց գերեզմանատան մօտ Կանտօլ֊քօյ ըսուած թաղին մէջ ․ եկեղեցւոյն չորս կողմը պար֊տէզ է , որուն մէջ շինուած է դպրոցն ու Առաջնորդա֊րանը։ Կայ նաև մէկ եկեղեցի ալ հայ հռովմէականաց յանուն Տիրամօր ։

Քաղաքիս ջուրը առատ և երկու տեսակ է ․ մէկը՝ մէջէն կը բղխէ կամ հոր փորելով կը հանեն ․ այս վերջի֊նը անհամ է և խմելու չի գործածուիր և կըսուի Ծուն սույու ։ Միւսը՝ քաղաքին հարաւային կողմի մօտակայ լեռներէն խողովակով բերուած է՝ որ աւելի աղէկ է և կըսուի Տուզ սույու ։ Այս ջուրերը քաղաքիս ամէն կողմը տարածուած և զանազան թաղերու բաժնուած են ․ ուստի ամէն փողոցներուն ու հրապարակներուն մէջ 3—4 էն աւելի հասարակաց աղբիւրներ են , որ անդա֊դար կը վազեն , նոյնպէս և մասնաւորաց տուներուն մէջ , անանկ որ քաղաքին մէջ 500 էն աւելի մշտահոս աղբիւրներ կը գտնուին , որոնց գլխաւորներն են ․

1․ Քըրք չէշմէ ․ որ բաղնիքին մօտ է , և ջուրը քա֊ղաքին մէջէն կը բղխէ ․ նախնիք շինած են այս աղբիւ֊րը՝ որուն ջուրը այն տեղէն 40 աղբիւրներու բաժնած էին , վասն որոյ Քառասուն աղբիւր կը կոչուի ։

2․ Նահատակի Աղբիւր , որ Թէվրիզ քարուսիէն քիչ մը հեռու արուարձանին մէջ Թապախանէին կամուր֊ջին մօտ է , որուն ջուրը նոյն տեղը գտնուած տաճկի մը տունէ կը բղխէ ։ Կըսուի թէ այս տունը՝ սուրբն Սա֊հակ և Յովսէփ (1) նահատակաց տունն էր , վասն որոյ

(1) Ասոնք երեք եղբայրներ էին բնիկ Կարնոյ քաղաքէն , որոնց հայրը տաճիկ եւ մայրը հայ էր, եւ քաղաքին մէջ երեւելի

ուխտի կերթան տենդոտները շաբաթ օրերը և ջրովը կըլուացուին բժշկուելու համար ։

3. կաթն Աղբիւր, որուն ջուրը տեղէն կը բղխէ ․ այս աղբիւրը Երզնկա քաղաքէն քիչ հեռու արուարձանին մէջ Զաղղարայ ըսուած գետակին վրայ շինուած կամուրջին մօտ է, Այս աղբիւրին ետեւը սենեկի մը մէջ, գերեզման մը կայ, ուր կանայք ուխտի կերթան կաթերնին շատնալու համար ․

4. Չէթէճի փաշայի աղբիւրներ ․ ասոնց ջուրը 1164 Տաճկաց թուականին Չէթէճի Ապտուլլահ փաշան փօլ Տէօֆին լեռնէն բերել տուած է ։ Այս պատուական ջուրը քարով և կրով շինուած ստորերկրեայ ճամբայի մը մէջ շարուած լայն խողովակներու մէջէ կուգայ քաղաքը, և մէկ քանի աղբիւրներու կը բաժնուի, որոնց գլխաւորն է կուսակալի պալատին աղբիւրը ․

5. Թօբհանէյի աղբիւրներ, որ ամենէն առատ ու ամենէն պատուական է, և Գօհանամ լերան ստորոտէն խողովակներով կուգայ քաղաքը ։

ու անուանի անձինքներ էին, եւ դաղանապէս քրիստոնէութիւն կը վարէին ․ օր մը ուզեցին փախչիլ մօրերնուն հետ 'ի Կոստանդնուպոլիս յայտնապէս քրիստոնեայ ըլլալու համար, թէ եւ մայրերնին ու մէկ եղբայրնին յաջողեցան, իսկ այս երկուքը ձերբակալ ըլլալով 'ի մահ դատապարտուեցան 808 Քրիստոսի թուականին ․ Հայոց պատմութեան Գ. հատոր ․ 418 երես ։ Իրենց դաղաղաձեւ գերեզմանները հիմա կը գտնուին պարսպէն ներս Ուլու ճամիին մօտ անել փողոցի մը մէջ քարաշէն կամարակապ սենեկի մը մէջ իրարու քով, ուր կայ նաեւ ուրիշ դաղաղաձեւ գերեզման մ'ալ անոնցմէ քիչ մը հեռու, որ ուխտի կերթան տաճիկ եւ քրիստոնեայ ։ Այս սենեկին դրան կողմը պարտէզին մէջ կան ուրիշ գերեզմաններ տաճկաց ։

6. Ցէվրիշ աղայի աղբիւր. որոյ ջուրն եօ լեռնէն կուգայ խողովակներով և Ցէվրիշ աղա անուն անձ մը բերել տուած է։

Քաղաքէն կէս ժամ հեռի Քիրէմիտլիք ըսուած տեղէն ալ ջուր կուգայ՝ որ Երզնկայ ու Եէնի քարուներուն մէջ տեղէն անցնելով կը մտնէ պարսպէն ներս քաղաքին մէջ և կը բաժնուի զանազան աղբիւրներու. այս ջրին ճանապարհը Քիրէմիտլիքէն մինչև քաղաքին մէջ գետնին տակէն է, որուն մէջէն մարդ կրնայ երթալ։

7. Հայոց եկեղեցւոյ աղբիւրներ. ասոնց ջուրը քաղաքին հարաւային կողմի լերան մօտ այլ և այլ տեղերու մէջ գտնուած ջուրերը միացնելով և խորագոյն ականներ փորելով մինչև Ճէպխ. դրան կողմը տաճկաց գերեզմանատան վերի ծայրը, անկէ ալ քաղաքը բերած են 24 աղբիւրներու բաժնած։

Քաղաքիս այս ամէն աղբիւրներուն ջրերը, որ փողոցներուն մէջէն կը վազեն, ժողվըվելով փոքրիկ վտակ մը կը ձևացընեն, որ կը կոչուի Մ——— ——— և քաղաքին մէջէն կանցնի. հոն քաղաքացիք կը լուան լաթերնին ու ամեն բաներնին։

Քաղաքիս արուարձանին մէջէն ու Երզնկայ քարուսին մօտէն Զայղարա անուն վտակը կանցնի, որ Փուլոն Տէօքէն և Էյէրլի լեռներուն մէջ տեղէն գալով ու այսպէս Էրզըրումի մէջէն անցնելով կերթայ և 50—60 ջաղացներ դարձունելէ ետև կը խառնուի Շամբին մէջ։

Այս երկու առուներուն վրայ տեղ տեղ փայտէ կամ քարէ կամուրջներ շինուած են։

Գարնան ժամանակ երբ մէկ կողմէն անձրևները կառատանան և միւս կողմէն ձիւները կը հալին, այս երկու վտակները հեղեղանման կը յորդեն և շատ անգամ շրջակայ տուներուն վնաս կը հասցնեն։

Քաղաքս՝ Կոստանդնուպօլսոյ և ասիական Տաճկաստա-

նի զանազան քաղաքներուն , Պարսկաստանի և Ռուսիոյ մէկզմէկու հետ ունեցած առևտրական յարաբերու-թեանց կեդրոնն է ու մեծ վաճառատեղի և վաճառա-կանութիւնն ընդհանրապէս Հայոց ձեռքն է ․

Պարսկաստանէն կուգայ խամ իփէկ , ճառ չալ , տօն-լուկ չալ , խուրմնի , խալիախի մորթ , եէզտ ալաճասի , բամպակ , մուշտակ ։

Ցաճկաստանի սահմաններէն՝ խալայ , Նշատըր , չի-վիտ , երկաթ , պախր , կէօն , կտաւեղէն , բամպակ , խուրմնի , խատիֆէ , աթլազ , չուխայ , խահուէ , շէքէր , իւղ , պանիր , և. տեսակ տեսակ եւրոպական տարազա-գործներ ։

Մերձակայ գաւառներէն՝ իւղ ( 7 ղուրուշ ) , պանիր ( 2 ղուրուշ ) ։

Թորդումէն և Սպերէն՝ ամէն տեսակ մրգեղէններ , որ ո՛չ քաղաքին և ո՛չ շրջակայներուն մէջ կը գտնուին ։

Նարմանէն , Շողանու ձորէն , Բասենէն և Օլթիէն՝ վառելու փայտ և ածուխ , որ քաղաքին մօտերը չեն գտնուիր , ասոր համար բաղնիքներուն [illegible] , փու-ռերը և տուները՝ մանաւանդ կերակուրի համար առ-հասարակ քակոր կը գործածեն փայտի ու ածուխի տեղ ։

Քաղաքին մէջէն կելլէ տան , կտաւ , տեսակ մը ա-ճառ , գոյնզգոյն սեկ , ընտիր կաշի , բրդէ չալ , բրդէ գուլպայ , կտաւի մանած , կօշիկներ , տեսակ մը փսիաթ , տրեխ , ապուխտ , օղի ։

Բերրքն է ցորեն , գարի , հաճար , կտաւատ ։

Գլխաւոր արհեստներն են , դարբնութիւն , հիւս-նութիւն , ոսկերչութիւն , դերձակութիւն , զինարարու-թիւն , երկաթագործութիւն , պղնձագործութիւն , ձու-լագործութիւն , և այլն ․

Օդն առողջ է և բարեխառն ․ ձմեռը ցուրտ և ընդ-հանրապէս արևելեան և հիւսիսային հովեր կը փչեն ,

բայց մարտ ամիսէն մինչև մայիս հարաւային հով ։

Քաղաքը բարեբեր արտերով շրջապատած է , որոնց մէջ կը բուսնին ցորեն , գարի և բանջարեղէններ , չողգամ , կաղամբ , վարունգ , ձմերուկ , կարմիր բանջար , գետնախնձոր , ևայլն ։

Քաղաքին արևմտեան և հիւսիսային կողմերն ընդարձակ դաշտ մ'է ցորենի , գարիի և ընտիր ընդեղէններու արտերով ծածկուած և բարձրադագաթ բարեխիր և ջրաբուղխ լեռներով շրջապատած , որոնց առատաջուր վտակները կ'ոռոգեն անոր գետինը ։ Այս դաշտին երկայնութիւնը արևելքէն արևմուտք 14 ժամ է , և լայնութիւնը հիւսիսէն հարաւ 8 ժամ ։

Քաղաքիս հարաւային կողմը և 1 ½ ժամու չափ հեռի է Շողոլըք կամ Գոհանամ ջրառատ լեռը , որ նահանգին բարձր լեռներէն մէկն է . հաղիւ 1 ½ ժամէն կելլուի գագաթը և կը տեսնուին Սև ծովն և Մասիս ։ Այս լեռնէն խողովակով ջուր բերած են քաղաքը ։

Մէկ ժամ հեռի և Գոհանամ լերան արևելեան կողմն է Տէվէ Պօյնու լեռը ։

Դարձեալ 1 ժամ հեռի և Գոհանամին արևմտեան կողմն է փալան Տէօքէն ուղղաբարձ լեռը , ուրկէ կը բղխեն առատ ջրեր , զոր խողովակներով քաղաքը բերած են . մնացած ջուրերը կիջնան դէպ 'ի քաղաքը և կոռոգեն շրջակայ արտերն ու ջրաղացներ կը դարձունեն . ետքը Ջոյբորայ թաղէն անցնելով և դարձեալ ջրաղացներ դարձունելով կերթան կան գիւղին առջևէն կը թափին Եփրատ գետը ։

Մէկ ժամ հեռի և փալան Տէօքէնի կից է Էյնէլի անուն բարձր լեռը ։

Հինգ ժամ հեռի և արևմտեան հիւսիսային կողմը՝ Ղօշա դաղ կամ Թէքէ տէրէսի ապառաժուտ լեռը կից Էյնէ-ւ լերան ։

14 ժամ հեռի և արևմտեան կողմը Շողանու ձորին մէջ Գօլըն փէրիէկ և Տօշուք Չայըր գիւղերուն մօտ է Մէյրէմ Տաղը բուսած առատաջուր բարձր լեռը , որուն գագաթը գերեզման մը կայ Մէյրէմ Ճէշմէ , որուն քովէն առատ ջուր մը կը բղխէ և ուր ուխտի կերթան մօտակայ գիւղերէն ։

11 ժամ հեռի և արևմտեան կողմը Սէրջէմի ձորին քով Գուլէ տաղը բուսած քարակտուր ,սեպացեալ լեռը , ուր վայրի մեղուները ժայռերուն վրայ բուներ հաստատելով առատ մեղր կը շինեն ։

9 ժամ հեռի և հիւսիսային կողմը Շեղջիկ անուն կոնոնաձև լեռը , որուն գլուխը ջրով լեցուն բաժակ մը կայ և ստորոտը անորժահամ առատ ջրի ակ մը ։ Կը կարծուի որ այս լեռը շիջեալ հրաբուղխ մ՚է ։

10 ժամ հեռի Սպերու ճամբուն վրայ Աւլըն տաղ բուսած ապառաժուտ բարձր լեռը ։

6 ժամ հեռի և հիւսիսային կողմը Տօմլը տաղը կամ Խաչափայտի լեռը , որուն վրայէն պաղ ջուր մը կը բղխէ , որ ոլորուն ընթացքով խոխոջաձայն կիջնայ Կարնոյ դաշտը . այս ջուրը Եփրատ գետին մէկ թևին ակիզբն է . կըսուի Տօմլը սու կամ Խաչափայտի ջուր ։ Հեշտալի և շատ զուարճալի են գարնան եղանակ այս վայրերը, ուր բարեխառն քաղցր հովեր մեղմիկ կը փչեն և գետինը խոտաբոյս մարգերով կը զարդարուի, ամէն կողմ բիւրաղըն անուշահոտ ծաղիկներ կը բացուին ։ Մօտակայ գիւղերէն ու քաղաքէն տաճիկ և քրիստոնեայ վարդավառի երկրորդ կիրակի օրը՝ այս լեռը ուխտի կը դիմեն և 2 օրի չափ կը մնան ։

Աւանդութիւն մը կայ որ յունաց Հերակլ կայսրը պարսից ձեռքէն առնելով Քրիստոսի խաչափայտը՝ այս կողմերս եկեր է, և երբ պարսիկները վրան արշաւեր են՝ պարտաւորեր է կրկին պատերազմիլ անոնց

հեռ. այն ատեն այս լերան վրայ պահեր է խաչափայտը։ Թէեւ պատմութեանց մէջ սանկ յիշատակութիւն մը չկայ, բայց սա՛ միայն յայտնի է որ այն ատենները իրա՛ւ Հերակլ այս կողմերս կը գտնուէր։ Մեր մատենագիրները այլ եւ այլ եղանակաւ կաւանդեն խաչափայտին դարձին պատմութիւնը, որ Հերակլ կայսեր ձեռօքն եղած է, ինչպէս Յովհաննէս կաթուղիկոս երես 53։ Չամչեան Հ. Միքայէլ վարդապետ՝ ճառընտիրէն քաղելով իր Հայոց պատմութեան Բ. հատոր. երես 532։

Արծաթի գիւղէն կէս ժամ հեռի եւ հիւսիսային կողմն է Եշիլ թօփ ըսուած բլրակը, ուր շատ օձեր կը գտնուին։

Էրզրումէն 3 ժամ հեռի եւ հիւսիսային կողմն է Քօչ-քօք ըսուած ապառաժուտ լեռը, որուն վրայ քարայր մը կայ. աւանդութեամբ կըսեն՝ որ Ֆէհրատ եւ Շիրին Պարսկաստանէն հոս եկեր, այս քարայրը շիներ ու մէջը բնակեր են։

3 ժամ հեռի եւ արեւելեան հիւսիսային կողմը Ղօշա-պունար թօփլարը ըսուած լեռները.

2 ½ ժամ հեռի եւ արեւելեան կողմը Չօպան թէփէ անունով լեռը, որուն գլուխը պաղ ջրի ակ մը կայ, ուր քաղաքէն ու գիւղերէն ջերմոտները կը դիմեն՝ ջրովը կը լուացուին ՚ի բժշկութիւն.

20 վայրկեանի չափ հեռի եւ արեւելեան կողմը Թօփ-թաղ կամ Օղլան քէօրան անունով լեռը, որուն կից է սուրբ Նշան (1) ըսուած լեռը, որուն վրայ քարակոյտ մը կայ,

(1) Աւանդութիւն մը կայ որ մեծն Ներսէս Կեսարիայէն հոս դարձած ժամանակ քարէ խաչ մը օծեր ու լերանը վրայ դրեր է իբր պահապան քաղաքին. բայց ըստ ոմանց ալ այն քարակոյտը յունաց եկեղեցւոյ տեղ ըլլալ կը կարծուի.

ուր յաճախ ուխտաւորներ կերթան մանաւանդ կիրակի օրեր ։

Այս լեռներէն բնաւ ջուր չը բղխեր · վրայնին մարտկոցներ շինուած են ։ Այս թօփ տաղի հարաւային կողմը սարոտին վրայ 1860 ին մեծ այր (մաղարա) մը գտնուեր է, դէպ 'ի լերան տակը շատ խորունկ ու ընդարձակապէս տարածուած, որուն մէջ մտնել ու քննել մարդ չը համարձակելով, տեղական կառավարութեան հրամանաւ դուռը փակուած է մինչև հիմայ ։

Քաղաքիս խիստ մօտ և արևմտեան հարաւային կողմը Քէչէճիքալէ լեռը · ասոր վրայ ալ մարտկոցներ շինուած են ·

Կարնոյ ընդարձակ դաշտավայրը ոռոգող գետակներըն են ·

1. Սերջէմու ջուր · կը բղխի Սպերի լեռներէն և անցնելով Կարնոյ սահմանին մէջ Ջուանց բերդաքաղաքէն կիջնայ Աշխալա և Շողանու ձորին մէջ և կը խառնուի Եփրատ ։

2. Բլըրայ գետ · Հայտարու և Թէքէ տէրէի լեռներէն անցնելով Բլուր գիւղին քովէն կը թափի Եփրատ Իլիճէ գիւղին քով ։

3. Քըզըլ կէչիտ կամ Քըզըլ ըրմաք · Փալան թէօքէն լերան արևմտեան կողմէն անցնելով կերթայ Կեղիի սահմանին մէջ կը խառնուի յԵփրատ ։

4. Սև ջուր ( Քարա սու) · սկիզբ կուտայ Եփրատ գետին մէկ թևին, կը բղխի Խաչափայտի լերան բարձր կողմերէն, և կարկաջահոս կիջնայ ձորերուն մէջ և հասնելով Կիրակոսակ գիւղին առջև կը խառնուի Քիլիսէ

վանք որոյ յոյները Ապրիլ ամսոյ 23 ին սուրբ Գէորգայ տօնին եկեղեցական զգեստներով կերթան աղօթք կընեն ·

գիւղին քովի լեռնէն բղխող գետակի մը հետ, և անկէ ետքը ընդունելով իր մէջ ուրիշ շատ մը մասնաւոր ջրեր՝ կերթայ Կարնոյ դաշտին մէջ լճակ մը կը ձևանայ, և անկէ ալ կը քալէ դէպ 'ի արևմուտք։ Այս լիճը քաղաքին հիւսիսային կողմը և մէկ ու կէս ժամ հեռի Կարնոյ ընդարձակ դաշտին մէջ կ'իյնայ. երկայնութիւնն է արեւելքէն դէպ 'ի արևմուտք երկու ժամ և լայնութիւնը մէկ ժամ։ Սև ջուր կ'ըսուի ջուրին սևութեանը համար. կ'ըսուի նաև Սազլըխ կամ Սազլը կէօլ, 'ի հնումն Շամբ, ինչպէս նաև ըստ Խորենացւոյն ծով կամ ծովակ (1)։ Սազլը կէօլ կամ Շամբ ըսուելուն պատճառն է որ լճին եզերքը կը բուսնին եղէգ և ուրիշ խոտեր։ Ձմեռը կը սառի և գարնան սկիզբը ապրիլ և մայիս ամիսներուն մէջ ամէն կողմէն վտակներ կուգան մէջը կը թափին, որով ջուրը կ'առատանայ ու կ'ողողէ դաշտավայրը. բայց ամառը ջուրը հետղհետէ նուազելով՝ տեղը ճահիճ և տղմուտ կը մնայ։ Այս միջոցին եզերքի եղէգն ու ուրիշ խոտերը գիւղացիք կը քաղեն։ Այս վայրը գարնան մէջ սիրալի տեսարան մը կը ներկայացնէ, ականակիտ վտակները կարկաչասահ յառաջ կ'ընթանան ու դալար խոտերուն մէջ հոտաւէտ ծաղիկներ գոյնզգոյն կը բացուին և բազմերամ թռչուններ լճակին եզերքին վրայ բոյներնին հաստատած աստին անդին կը ճախրեն ու իրենց դեղգեղաձայն դայլայլիկները զեփիւռներուն հետ կը խառնեն։

Այս մէջ կը գտնուի առատ ձուկ, որ գիւղացիք հանելով կը տանին քաղաքը։

(1) «Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան երթայր ընդ կողմն արեւելից ծովուն Կարնոյ, եւ գունդ զօրավարացն պարսից զկնի նորա երթային անհաասութեամբ։» Նաեւ տե՛ս Խորեն. Գ. Գիրք. ԾԹ. Գլ.

Լճակին վրայ մէկ քանի քարաշէն ու փայտաշէն կամուրջներ կան, որոնց գլխաւորներն են. Ղուրուղլի քէօփրիւսիւ, որ նոյն գիւղին ճանապարհին վրայ սրբատաշ կարմրագոյն քարերով շինուած է 8 մեծամեծ կամարակապ աչքերով։ Դուրընքայ քէօփրիւսիւ, որ սրբատաշ սև քարերով կառուցեալ է հինգ կամարակապ աչքերով։ Օյնէ կէօլի քէօփրիւսիւ, փայտաշէն և նոյն գիւղի ճամբուն վրայ։ Փէշօղուղէյէ քէօփրիւսիւ, փայտաշէն. և այլն։

Երզրումի արևելեան կողմը մէկ ու կէս ժամ հեռու խորաձորի մը բարձր լանջքին վրայ կը գտնուի սուրբ Գրիգոր Լուսաւորչի վանքը պարսպապատ, որ Մօրըկու վանք ալ կըսուի մօտակայ Մուտուրկա գիւղին անունովը։

Այս վանքին արևմտեան կողմի խոր ձորին մէջէն կանցնի Գօշկէշան անուն վտակը, որ հարաւէն հիւսիս երթալով կանցնի Մուտուրկա գիւղին քովէն, կերթայ կը թափի Եփրատ։ Այս վանքն ունի 30 սենեակ, մէկ փոքրիկ կամարակապ եկեղեցի մը քարաշէն՝ յանուն Լուսաւորչի, որուն մէջ գետնափոր գուբ մը կայ Խօր վիրապ անուն։ Աւանդութիւն մը կայ որ ե՛րբ Տրդատ հրաման ըրաւ որ տանին Լուսաւորիչ Արտաշատ քաղաքը Խոր վիրապը ձգելու համար, Լուսաւորիչ ճամբան մէկ քանի օր հիւր եղած է այս վանքին մէջ, որ ան ատեն մեծատուն իշխանի մը ամարանոց էր։ Այս աւանդութիւնը հաւանական կերևի, վասն զի այն ատեն Տրդատ Երզնկա էր և Արտաշատու ճանապարհը այս կողմէն շատ դիւրին էր։ Եկեղեցւոյն դրան դրսի աջ կողմը որմին տակ մեծ դերեզմանաքար մը կայ, որուն տակն է Աղուանից Սահակ կաթուղիկոս (Հայոց Պատմ. Գ. Հատ. 866 Երես)։ Վանքին պարապին մէջ Լուսաւորչի եկեղեցւոյն հարաւային կողմը կարմիր սրբատաշ քարերով հնաշէն մատուռ մը կայ յանուն սուրբ

Սարգսի ։ վանքին պարսպէն դուրս մշտահոս աղբիւր մը կայ Բուչեհամ անուն ։ Քաղաքին արեւելեան հիւսիսային կողմը 3 ժամ հեռու կը գտնուի Կարմիր վանք կամ Հնձուց վանք , իր մօտակայ Հինձք գիւղին անունովը՝ պարսպապատ , ունի 20 ի չափ սենեակ և քարաշէն կամարակապ մեծ եկեղեցի մը ։ Աւանդութեամբ կըսուի՝ որ Մեծն Ներսէս շինած է այս վանքը Կեսարիայէն դառնալէն ետքը ։ Վանքէս մէկ ժամու չափ հեռու դէպ 'ի արեւելեան հարաւային կողմը ձորի մը մէջ կան քանի մը քարայրներ , որ Հռիփսիմէի տեղ կը կոչուին ։

Աւանդութեամբ կըսուի՝ որ Հռիփսիմեանք Հայաստան փախած ատեն ասոնց մէջ պահուեր են թշնամեաց ձեռքէն ազատուելու համար ։ Այս տեղ կայ պատուական պաղ ջուրի աղբիւր մը՝ որ ուխտատեղի է ։ Քաղաքին հիւսիսային կողմը երեք ու կէս ժամ հեռու խաչափայտ լերան ստորոտը՝ Խաչավանք գիւղին կեդրոնը կայ Խաչավանք անուն պարսպապատ վանքը , որ ունի քարաշէն եկեղեցի մը ։ Իսկ հարաւային կողմը մէկ ժամ հեռու Գոհանամ լերան տակը կայ տաճկաց ուխտատեղի մը Աղոթք-բռնեման կողէ անունով , ուր շինուած է մզկիթ մը , որուն մէջ դէպ 'ի արեւելք գերեզման մը կայ ։

Աւանդութեամբ կըսուի՝ որ առաջ այս տեղ Հայոց վանք էր , ուր թաղուած էր և Սարգիս անուն հայ զօրավարը՝ որ երբեմն օգնեց յունաց՝ պարսից դէմ ըրած պատերազմի մը մէջ ։

Կարին գաւառին մէջ կը գտնուին իրարու մօտ բազմաթիւ գիւղեր , որոնց մէջ ընդհանրապէս տաճիկ ու հայ խառն կը բնակին ։

Օվաճըխ ըսուած տեղն եղած գիւղերուն անուններն եւ Էրզրումէն ունեցած հեռաւորութիւննին ․

| | | ժամ հեռ. | | | ժամ հեռ. |
|---|---|---|---|---|---|
| 1 | Արապ քէօյ | 9 | 2 | Չաթաղ քէօյ | 10 |
| 3 | Չըրըքլը | 8 | 4 | Քզըլը քալէ | 11 |
| 5 | Չիլթահանք | 10 | 6 | Պաշ օվաճըք | 11 |
| 7 | Աղըլը տաշըք | 10 | 8 | Այնալը քալէ | 9 |
| 9 | Քուրդկուն | 9 | 10 | Չոռթունկեր | 9 |
| 11 | Աղտաշ | 10 | 12 | Քարա քալէ | 10 |
| 13 | Ղաւաղ թեփէ | 10 | 14 | Իւչ քիլիսէ | 9 |
| 15 | Թօփրաք քալէ | 8 | 16 | Աղջագէն | 11 |
| 17 | Պաշկէնտ | 10 | 18 | Ախտաճուկ | 10 |
| 19 | Պզտիկանց | 8 | 20 | Սէրլի | 9 |
| 21 | Քափուլլի | 9 | 22 | Էրիզա | 8 |

*Սէրչէմի եւ Շողանլու ձորոյն մէջ եղած գիւղերուն անունները եւ Էրզրումէն ունեցած հեռաւորութիւնին.*

| | | ժամ հեռ. | | | ժամ հեռ. |
|---|---|---|---|---|---|
| 23 | Գուրտ մահմուտ | 18 | 24 | Չըմուտ | 14 |
| 25 | Լիճ | 11 | 26 | Ալթուն տաշ | 11 |
| 27 | Սօս | 14 | 28 | Պալեն բերթեկ | 13 |
| 29 | Թօփալ չավուշ | 12 | 30 | Սարգորան | 14 |
| 31 | Շողիկ | 17 | 32 | Տաշլը չայիր | 16 |
| 33 | Պաճավուտ | 15 | 34 | Պունակապան | 15 |
| 35 | Ցանձուտ | 13 | 36 | Չաթօրան | 12 |
| 37 | Խօնճալըք | 9 | 38 | Գաղտառիճ | 10 |
| 39 | Սերչէմի | 9 | 40 | Ծուանց | 9 |
| 41 | Կեօլեօրէն | 9 | 42 | Գառվըր | 8 |
| 43 | Քարա հասան | 12 | 44 | Աչքալէ | 11 |
| 45 | Երկանմանսուր | 9 | 46 | Ջերեվանք (1) | 8 |
| 47 | Միզրէ | 11 | 48 | Քօթանէս | 12 |

(1) Աստր քով աւրուած վանք մը կայ Ծիրանավանք անուն։

| | | ժամ հեռ. | | | ժամ հեռ. |
|---|---|---|---|---|---|
| 49 | Խուրտ տերէ | 12 | 50 | Ճէկինտուր | 12 |
| 51 | Սղրոտան | 12 | 52 | Փաշաքի | 11 |
| 53 | Գաշքիւր տերէ | 12 | 54 | Կէյիք | 18 |
| 55 | Կենէփէ | 12 | 56 | Մեծճանեօրէն | 5 |
| 57 | Ցէնչիք | 15 | 58 | Ո՛նէքէթ | 5 |
| 59 | Մուշաթանլման | 12 | 60 | Տաշաղըլ | 9 |
| 61 | Փոքր գաֆթառիճ | 11 | 62 | Քերձոր | 12 |
| 63 | Սարը պապա | 11 | 64 | Քիւքիւրփլիւ | 12 |
| 65 | Շեխլերէն | 8 | 66 | Թէզէկիւլ | 7 |
| 67 | Ալաճա | 6 | 68 | Աղաւեր | 4 |
| 69 | Էվրէնլի | 5 | 70 | Ճինիս | 6 |

Հայտարու փոքրիկ դաշտին մէջ եղած գիւղերուն անուններն և էրզրումէն ունեցած հեռաւորութիւնները.

| | | ժամ հեռ. | | | ժամ հեռ. |
|---|---|---|---|---|---|
| 71 | Տուսճի | 1 | 72 | Թեփէ քէօյ | 1 |
| 73 | Մախանտա | 2 | 74 | Թեփէ տէրէսի | 3 |
| 75 | Քէվկիրի | 4 | 76 | Կիւմպէտ | 5 |
| 77 | Խաղմրջուկ | 5 | 78 | Հայտարի | 5 |
| 79 | Թամրա | 5 | 80 | Էօզպէք | 4 |

Ընդարձակ դաշտին մէջ գտնուած գիւղերուն անուններն եւ էրզրումէն ունեցած հեռաւորութիւնները.

| | | ժամ հեռ. | | | ժամ հեռ. |
|---|---|---|---|---|---|
| 81 | Մէկ մանսուր | 9 | 82 | Քարապէկ | 7 |
| 83 | Մէօրտիւլիւկ | 2 | 84 | Սընկառիճ | 3 |
| 85 | Բլուր | 2 | 86 | Խայաբա | 3 |
| 87 | Սէօկիւրթլիւ (1) | 3 | 88 | Առնքար | 4 |

(1) Այս գիւղիս քով ցուրտ ջուրի մեծ աւազան _մը կայ

| | | ժամ հեռու | | | ժամ հեռու |
|---|---|---|---|---|---|
| 89 | Դիդկիր | 5 | 90 | Ըլըճա (1) | 3 |
| 91 | Էպլէնտի | 4 | 92 | Էմրաճուկ | 5 |
| 93 | Փօչիկ | 4 | 94 | Տէվրէզճիւկ | 4 |
| 95 | Եէնի քէօյ | 9 | 96 | Բրդոնք | 5 |
| 97 | Էուչիկ | 6 | 98 | Եարըմճա | 9 |
| 99 | Մուտուրկան (2) | 1 | 100 | Սօվուք ջերմուկ(3) | 1 |
| 101 | Շխնոց | 1 | 102 | Կան | 0 ½ |
| 103 | Ջիֆթլիկ | 2 ½ | 104 | Կէս | 2 ½ |
| 105 | Թասմաձոր | 2 | 106 | Քէօսէ մէհմէտ | 4 |
| 107 | Ջիբաղ | 5 | 108 | Կիրակոսակ | 5 |
| 109 | Կիւն կէօրմէզ | 6 | 110 | Քարակէօպէկ | 4 ½ |
| 111 | Քըզըլ քիլիսէ | 6 | 112 | Ծալկի | 6 |
| 113 | Քեօշկ | 5 | 114 | Հինձք | 3 |
| 115 | Թուանջ | 2 ½ | 116 | Աշտաղ | 4 |
| 117 | Դաւլթա | 4 | 118 | Կամպեր (4) | 4 |
| 119 | Տինարիգոմ | 5 | 120 | Ջիլթահող | 5 |
| 121 | Սրծըլթի (5) | 3 | 122 | Ռումուտում | 4 |
| 123 | Գեղախօր | 3 | 124 | Գրինչք | 3 ½ |
| 125 | Երկնիստ | 3 ½ | 126 | Խաչկավանք | 4 |
| 127 | Ըղտաձոր | 4 | 128 | Օրթիզի | 5 |
| 129 | Թոսիկ | 4 | 130 | Գարարղ | 3 |

Գոլճիկը անուն, որուն մէջ շատ ձուկեր կան, զորոնք բնակիչները մեղք կը համարին բռնելը ։

(1) Տաք ջերմուկներ կան ։

(2) Աստ մօտ է Լուսաւորչայ վանքը ։

(3) Պաղ ջուրի աւազան մը կայ, որուն մէջ ախտացեալներ կերթան կը լուացուին ։

(4) Աստ քովի լեռնէն կարմիր քար մը կելնէ ։

(5) Տաք ջուրի աւազան կայ ։

| | | ժամ հեռ. | | | ժամ հեռ. |
|---|---|---|---|---|---|
| 131 | Օձնի (1) | 2 1/2 | 132 | Պատիչէն | 2 1/2 |
| 133 | Դունիկ | 3 | 134 | Թարգունի | 3 1/2 |
| 135 | Էսէվանք | 3 1/2 | 136 | Սալաձոր | 4 |
| 137 | Բազկառիճ | 4 | 138 | Գոմեր | 4 |
| 139 | Արջունի | | 140 | Ողօրէն | |
| 141 | Թորդան | | 142 | Խանակեէ | |
| 143 | Խուշճի քէօյ | | 144 | Կրճնկոցք | |
| 145 | Կտաւերանք | | 146 | Հասան մանսուր | |
| 147 | Միւլք | | 148 | Ներտիվէն | |
| 149 | Շակաւ | | 150 | Շահմանսուր | |
| 151 | Քարւոր | | 152 | Աղա խաչըղը պէրիվէր | |

Էրզրում քաղաքը շինուեցաւ 421 թուին Քրիստոսի, յունաց Թէոդոս թագաւորին օրով՝ Անատոլիոս անուն իր զօրավարին ձեռօք, երբ Հայոց թագաւորութիւնը բարձած ըլլալով՝ այս կողմերը յունաց բաժին եղած էր։ 502 թուականին պարսից Կաւատ արքայն նուաճեց քաղաքն ու իր իշխանութեան տակն առաւ այս կողմերը յունաց Կոստանդիանոս զօրավարին մատնութեամբը՝ որ Կարնոյ հրամանատար էր, և տարի մը չարունակ տիրեց։ 503 ին, դարձեալ յունաց

(1) Այս գիւղին գերեզմանատան մէջ վանքի մը աւերակներ կը գտնուին, ուրկէ հինցած որմերու վրայ բեւեռեալ 3 կանգուն երկայնութեամբ եւ 2 կանգուն լայնութեամբ խաչքար մը եղած է, զոր գիւղին եկեղեցւոյ մատուռին մէջ փոխադրած են, ուր անթիւ ուխտաւորներ կը դիմեն։

Աւանդութեամբ կըսեն՝ որ Թադէոս Առաքեալ օծեր է այս խաչը եւ վերջը Յոհան իմաստասէր Օձնեցին ալ վանք մը շիներ է նոյն խաչին տեղը. վասն որոյ վանքը իր անունովը սուրբ Յովհաննէս կոչուեր է եւ գիւղն ալ Օձնի։

ձեռքն անցաւ ։ 605 ին պարսից Խոսրով երկրորդ թագաւորը նուաճեց յունաց շատ քաղաքներն ու յաղթանակաւ եկաւ առաւ նաև Կարին. այնուհետև 10000 զօրքով ղրկեց իր քեռորդին Միհրանը 'ի Տարօն, հրամայելով աւերել քանդել բոլոր գաւառներն և կենդանույն բռնել զՄուշեղ ու իրեն ղրկել. և ինքն ալ դարձաւ Տիզբոն իր թագաւորանիստ քաղաքը, իր տեղը ձգելով 'ի Կարին Աշոտ անուն զօրապետը ։ Երկու տարի ետքը Աշոտ՝ Խոսրովի հրամանաւը՝ գերի տարաւ Կարնոյ բոլոր բնակիչները 'ի Համատան քաղաք, որոնց մէջն էր նաև Բագրևանցի Յովհաննէս կաթուղիկոսը. ինչպէս կը գրէ Յովհաննէս կաթուղիկոս, Իբե. 51. « Իսկ Աշոտ ոմն հրամանաւ Խոսրովայ հասեալ 'ի Հայս և դիմեալ 'ի վերայ խորտակէր զզօրսն յունաց, զի ոչ լինէր թիւ սպանելոցն 'ի դաշտին, և ինքն կալեալ զօրս պատերազմին ընդ Կարնոյ քաղաքի առնոյր զնա, և յետ երկեամ մի ամաց զբնակիչս քաղաքին 'ի Համատան փոխէ, և վասն զի ծերունի կաթուղիկոսն Յօհան կայր 'ի փախստականութեան 'ի նմա, ընդ նոսին և նա ևս ըմբռնեալ վարեալ 'ի գերութիւն և անդէն վախճանեալ բերաւ 'ի գիւղն Աւան, կալեալ զաթոռ հայրապետութեան ամս քսան և վեց ։ »

Բայց քանի մը տարիէն ետքը նորէն յունաց ձեռքըն անցաւ ։ 628 ին՝ յունաց Հերակլ կայսրը եկաւ Երզրում և շատ խնամք ըրաւ Հայոց, և Մժէժ Գնունին իր տեղն իշխան դնելով դարձաւ իր աթոռը ։ « Յառաջնում ամի անդ կաթուղիկոսութեան սորին Եզրի, յորում ժամանակի ասի լեալ դարձի խաչին, եկն Հերակլ կայսր 'ի քաղաքն Կարնոյ, այն է Թէոդուպօլիս, ուր և եցոյց բազում խնամ և սէր առ հայս եղեալս 'ի մասն բաժնի յունաց և կացոյց 'ի վերայ նոցա զօրավար և իշխան զՄժէժ Գնունի ։ » Հայոց Պատմ. Բ Հատ. 328 եր ։

629 ին՝ Եզր կաթողիկոսի օրօքը ու իր նախագահութեամբը՝ Քաղկեդոնի ժողովոյն համար եկեղեցական մեծ ժողով մը գումարուեցաւ քաղաքիս մէջ Հերակլ կայսեր հրամանաւ. վասն զի յոյներն ընդունած էին Քաղկեդոնի ժողովը և անոնց հետ մասնաւոր հայեր ալ ընդունած ըլլալով Ազգին մէջ մեծ խռովութիւն մը ծագեր էր: «Սմին իրի հրամայեաց կայսրն գումարել գաւառական ժողով եպիսկոպոսաց ևս և յունաց 'ի քաղաքն Կարին»: Հայոց Պատմ. Բ. Հատ. 328 եր.: Աւանդութեամբ կըսուի՝ որ այս ժողովը քաղաքիս միաբան Սուրբ Աստուածածնայ կոչուած տաճարին մէջ եղած է:

647 ին՝ Հագարացիք, այսինքն, Սարակինոսք առին Կարին քաղաքը և աւերեցին շատ տեղերը. 755 ին՝ Կոպրոնիմոս Կոստանդին՝ յունաց կայսրը առաւ քաղաքը Հագարացւոց ձեռքէն՝ կործանելով աշտարակը. 756 ին՝ Թեոդատ առաւ քաղաքը յունաց ձեռքէն և բնակեցուց ուրիշ տաճիկներ, ինչպէս կը գրէ Կիրակոս պատմիչը. 807 ին՝ ընդհանուր սով մը սաստկացաւ տիրեց բոլոր նահանգին մէջ, որ օրը՝ երեք հազարի չափ մարդ կը մեռնէր անօթութենէ: 950 ին՝ Կոստանդին Պէրփիրուժէն յունաց թագաւորը՝ իր երկրորդ անգամ թագաւորութեան ժամանակ ղրկեց Զմշկիք անուն հայ զօրապետը անթիւ զօրքով Կարնոյ վրայ, որ արշաւելով առաւ քաղաքը Հագարացւոց ձեռքէն կործանելով աշտարակները: Վերջը պարսիկները նորէն նուաճելով առին քաղաքը յունաց ձեռքէն. Տասներորդ դարուն վերջերն ու տասն և մէկերորդ դարուն սկիզբները՝ Վասիլ յունաց կայսրը առաւ քաղաքը պարսից ձեռքէն և անմիջապէս ղրկեց Նիկոմիդացի իշխան մը՝ որ նորէն շինեց բոլոր փլած աշտարակները 1019 ին:

1231 ին՝ Խորազմ թագաւորը առաւ Կարին մեծ

պատերազմ մ' ընելէ ետքը ։

Երեքտասաներորդ դարուն մէջ Իւանէ և Զաքարիա հայազգի երկու եղբայրներ՝ որ Վրաց Թամար թագուհիին զօրավարներն էին, հարկատու ըրին իրենց քաջագործութեամբը Կարնոյ Սուլթանը, ինչպէս կը գրէ Կիրակոս պատմիչ ։

1241 ին՝ Թաթարաց Մուղալ կամ Մողալ ցեղապետին Բաղաղուցի զօրավարը դեսպան եկաւ քաղաքացւոց որ անձնատուր ըլլան . բայց բնակիչները անարգանօք ետ դարձուցին զանի, և պարսպին վրայ ելնելով սկսան նախատել Մուղալը ։ Ան ալ սաստիկ բարկանալով՝ կատաղաբար արշաւեց քաղաքին վրայ և մեծամեծ գործիքներով կործանեց պարիսպը և կոտորեց 'ի սուր սուսերի բնակչաց մեծ մասը տաճիկ և քրիստոնեայ, մնացածն ալ գերի ըրաւ, ու քաղաքին մեծ մասը այրեց ։ Ժամանակէ մը ետքը կանչելով Սարգիս եպիսկոպոսը՝ որ նոյն ատեն առաջնորդ էր, հրաման և թոյլտուութիւն ըրաւ որ բնակիչները ժողվուին ու տուներնին շինեն . ան ատեն ցրուած բնակիչներն և պահվըտած քաղաքացիները ժողվեցան ու քաղաքը շինեցին . — « Բաջու զօրավար Թաթարաց դումարեաց զայլ ևս բազում զօրս յայլ և այլ ազգաց որ ընդ ձեռամբ Թաթարաց էին, 'ի հայոց, 'ի վրաց և յասորւոց, և խաղաց 'ի Կարնոյ դաւառ, որ էր ընդ իշխանութեամբ ամիրային Իկոնիոյ, որ և ասիւր Սուլթան հոռոմոց խիլթային անուն, և պաշարեաց զքաղաքն Թէոդուպօլիս, առաքեաց պատգամս առ քաղաքապետն, դալ 'ի հնազանդութիւն իւր . իսկ նա անարգանօք դարձոյց զպատգամաւորսն . քաղաքացիքն ելեալ 'ի վերայ պարսպին կսկծեցուցիչ բանիւք նախատէին զԹաթարս յուսացեալ յամրութիւն բերդին » . և այլն ։ (Հայ . Պատմ. Գ. Հատ. 216 Երես) ։

1517 ին՝ Կարին Օսմանեան տէրութեան ձեռքն անցաւ Սուլթան Սելիմ առաջինին ատենը, որ Չըլտըր գաւառին մէջ պատերազմելով Պարսից Իսմայիլ շահին հետ՝ յաղթեց ու իր իշխանութեան տակն առաւ Կարին բոլոր գաւառներովը ։

1600 ին՝ անձրևաց պակասութենէն երկիրը այն աստիճան երաշտացաւ՝ որ ամենևին բոյս մը չըգոյացաւ. ուստի կորուսիչ սով մը տարածեցաւ Տուրուբերան և Բարձր Հայոց գաւառները և մանաւանդ Կարինէն մինչև Երզնկա, ուր մէկ քոռ ցորենը 8 դահեկանի կը ծախուէր և դրամ ալ չէր գտնուեր. որով շատերը սովամահ եղան, ինչպէս կը գրէ Գրիգոր Աբեղայ ականատես պատմիչը. « Բազումք խոտաբուտ եղեն, սևացան և մեռան » ։

1829 ին՝ Ռուսերը արշաւելով առին Կարինը և մէկ տարի ետքը ձգեցին գացին ։ Այս ժամանակէն 'ի վեր Կարին կորսնցուց իր բազմամարդութիւնը. այսօր հազիւ իր բնակչաց չորրորդ մասը մնացեր է, վասն զի Հայերուն ամենամեծ մասը 'ի Ռուսաստան գաղթեց ։

1859 ին՝ մեծ ու սարսափելի երկրաշարժ մը 30 օր տևելով քաղաքին բաւական վնաս հասուց և բնակիչները ահու դողի մէջ ձգեց, որ քաղաքէն դուրս վրաններու մէջ բնակեցան երեք ամիսի չափ ։

Էրզրում կեցանք 12 օր Ճէննէթ Ջատէ կոչուած երևելի անձին ընդարձակ տունը, որ ունէր գեղեցիկ պարտէզ մը, ուր 12 պատուհաններով գեղեցիկ պատշգամբ մը ( քէօշկ ) կար և մէջը ֆիսգիէ աւազան մը.

Մէկ քանի օր հիւպատոսներուն ու երևելի անձանց փոխադարձ այցելութիւններ եղան. և գիշերները թէ՛ կուսակալը և թէ՛ քաղաքին երևելի պաշտօնատարներն ու ազնուական և հարուստ բնակիչները հացկերոյթ տուին. կերակուրները Պօլսոյ նման էին, թէպէտ և քաղաքին աղքատ բնակիչները քրդական կերակուրնե-

րով կը տեանին ։

Քօլէրայ հիւանդութիւնը քաղաքիս մէջ Բամազանի 10 էն 'ի վեր կը տիրէր թեթև կերպով և օրը 10 կամ 11 հոգի կը մեռնէր ․ բայց շրջակայ գիւղերուն մէջ մեծ կոտորած ընելուն համար քաղաքացւոց վրայ ալ մեծ սարսափ կը տիրէր ․ վասն որոյ շատերը քաղաքը ձգեր ու հիւանդութիւն չեղած գիւղերու մէջ փախեր էին ։ Քաղաքին բժիշկները՝ մանաւանդ Քառանթինայէն բժիշկը և դեղագործները անընդհատ կաշխատէին գիշեր ցորեկ ։ Ես ալ իսկոյն հաղորդեցի հասարակութեան ողջապահիկ կանոնաց համեմատ պէտք եղած հրահանգները ։ Մեր ճանապարհորդակից ընկերներէն՝ որոնց թիւը 40 ի կը հասնէր , միայն մէկ հոգի մը , Մուստաֆա Չավուշ, հիւանդութեան զոհ եղաւ ։

Սեպտ ․ 22 երկուշաբթի ժամ 3 ին , քաղաքին բոլոր երևելիները մէկտեղ չքեղ հանդէսով մեկնեցանք քաղաքէն , ու կէս ժամ հեռու իջանք պատրաստուած վրաններու տակ , ուր քաղաքացւոց մեծ մասն ու զինուորաց դունդեր կսպասէին ։ Մէկ ժամ շարունակ զօրահանդէս ( թալիմ ) մը եղաւ , և վերջը հրաժարական ողջոյն տալով ճամբայ ելանք ցորենի արտերով ծածկեալ Կարնոյ այն ընդարձակ դաշտին մէջ , և 2 ժամ երթալով ճամբուն վրայ հանդիպեցանք Կէս անուն հայու գիւղը ; ուր հանքային տաք ջուր կը բղխէր ․ ուրկէ ալ ժամ մը հեռու մտանք Ըլըճայ գիւղը՝ որ ունէր տաք ջերմուկ ․ անկէ ալ ժամ մը հեռու անցանք Քօբու — — բռնուած գետը՝ որուն եզերքին վրայ էր Աղաւէր գիւղը ․ և մէկ ժամու չափ ալ երթալով իջանք Դիդկիր , որ փոքրիկ բլուրի մը զառ 'ի վայրին վրայ շինուած տաճկի գիւղ մ'է 100 տունով ճիշդ 5 ժամ հեռու Էրզրումէն , ունէր աղէկ ջուր մը ․ անկէ կը տեսնուէր

Էրզրում քաղաքը։ Հոս կեցանք գիշեր, ուր Քէօփրիւն դադրեր էր։ Մինչև հոս ճամբան ծառ չըկար։

Սեպտ. 23 երեքշաբթի ճամբայ ելանք Թօւլ Աղէլ գիւղն երթալու համար վեց ու կէս ժամ հեռի։

Դիադինէն՝ նախ երեք քառորդ ժամ հեռի ճամբուն աջ կողմը տեսանք Ալտօ գիւղը, ապա երկուք ու կէս ժամ հեռի հանդիպեցանք Եէշիլ ծաւաս գիւղը Սարչամու գետին եզերքին վրայ. անցանք այս ջուրը և 1 2/3 ժամ հեռի եկանք Քարա հասան գիւղը. ապա 2/3 ժամ հեռի Զօնօրան գիւղը, վերջը 1 ժամ մ'ալ երթալով իջանք Թօւլ Աղէլ տաճկաց գիւղը ձորին մէջ, որ ունէր 40 տուն բնակիչ, աղէկ ջուր ու «եօյլուք» ծառեր. Հոս գիշեր կեցանք։ Ճամբանիս տեղ տեղ հարթ էր, բայց ըստ մեծի մասին փոքրիկ բլուրներ էին մերկ ու առանց անտառի. տեղ տեղ ալ ջուրեր ու գետակներ կանցնէին։

Սեպտ. 24 չորեքշաբթի ճամբայ ելանք Էլէշկերտ երթալու համար 6 1/2 ժամ հեռի։ Ճամբանիս միշտ լեռնային էր, լեռները փոքրիկ ու ցանցառ (սէյրէկ) անտառներով ծածկեալ էին, ձորերն ալ ծառերով զարդարուած։ Ամէն ձորի մէջէ և ճամբուն ամէն կողմերուն վրայ ջուրեր կերթային, բայց գիւղ չէր երևար։

Էվէրէկ՝ ձորի մէջ հարթավայրի մը վրայ շինուած 50 տունով ծառազարդ գիւղ մ'է տաճկաց ու հայոց, ուրկէ ջուր մ'ալ կանցնի։

Սեպտ. 25 հինգշաբթի ճամբայ ելանք Պայպուրտ երթալու համար 5 ժամ հեռի։ Նախ 2 ժամու չափ անցանք լեռներու վրայէ ու ձորերու մէջէ։ Պայպուրտի 3 ժամ մնացած՝ ձորի մը մէջ, ուրկէ ջուր կանցնէր, գետնէն թթու ջուր մը կը բղխէր Նարզան, ուր ուխտա-

ւորներ ու հիւանդներ կերթային լուացուելու համար ։ Վերջը՝ 3 ժամ. ալ շարունակ դաշտի մէջէ գացինք մինչեւ Պայպուրտ ։ Այս դաշտին մէջէն կանցնէր Ճուրուխ(1) անուն ընդարձակ գետը, որ կերթար դէպ 'ի քաղաքը, ու մէջէն անցնելով երկուքի կը բաժնէր ։ Քաղաքին 1/4 ժամ մնալով գետին աջ կողմը պարտէզներ էին ։ անոնց տակէն դոդցես անտառներու մէջէ անցնելով մտանք Պայպուրտ

## ՊԱՅՊՈՒՐՏ (ԲԱԲԵՐԴ)

Արեւելեան, արեւմտեան ու հիւսիսային կողմերէն լեռներով պատած ձորի մէջ կանաչազարդ գեղեցիկ տեսարանով բերդաքաղաք մ'է, իսկ հարաւային կողմը դաշտավայր է, ուրկէ մտանք քաղաքը ։ Բերդը՝ որ կանուանի չինտօղլին գալէսի, քաղաքին հիւսիսային կողմէ ապառաժուտ բլուրին վրայ շինուած է, երկայն ու բարձըր բայց հին ու քայքայեալ․ ասոր մէջ եկեղեցւոյ չէնք մը կայ՝ որուն որմերուն վրայ մինչեւ հիմա սրբոց նկարներ կը նշմարուին ։

Պայպուրտ ունի 1060 տուն, 900 ը տաճկաց, 150ը Հայոց, 10 ն ալ յունաց ․ ընդ ամենը 5000 բնակիչ ․ Յոյները Տրապիզոնի վիճակէն դաղթած են ։

Քաղաքին մէջ տեղէն կանցնի Ճորոխ գետը հարա-

(1) Ճուրուխ սու, Չօրուք սու. 'ի հնումն Ծորոխ կամ Ճորոխ գետ, որ Բաբերդի արեւմտեան կողմի լեռներէն բղխելով կիջնէ ու կանցնի Բաբերդին մէջէն, Սպերէն, եւլն. եւ վերջը Կիւնէ ու Պաթում քաղաքներուն մէջէն անցնելով կերթայ Սեւ ծովը կը թափի ։ Շատ մը վտակներ կընդունի իր մէջը ․ շատ մը կամուրջներ շինուած են վրան, եւ եզերքներըն ալ տեղ տեղ գիւղեր կը գտնուին ։

ւէն դէպ 'ի հիւսիս սրընթաց խոխոջմամբ . գետին երկու կողմը բաւական ընդարձակութեամբ ծառաղարդ պարտէզներ կան և եզերքներուն վրայ կարգաւ ծառեր տնկուած են ։ Տուները այս պարտէզներէն անդին լերան ստորոտներէն սկսելով դէպ 'ի վեր շինուած՝ ընդհանրապէս քարաշէն են , տանիքները քուաւոր , և պատուհանները ապակիով ։ Քաղաքին մէջ կը գտնուի 5 մզկիթ , որոնց մէջ երևելի է Ուլու ճամի ըսուածը , 8 փոքրր մէսճիտ․ 1 Հայոց քարաշէն եկեղեցի , 1 ալ յունաց փոքրիկ եկեղեցի Կիւլէր ըսուած թաղին մէջ . Նախակրթական դպրոցներ , 2 բաղնիք , մէկ պէզէսթէն , մէկ [illegible] , սրճարաններ , 1 վաճառանոց , խաներ , ջրեպանաց օթևաններ ։ Վաճառանոցին մէջ գտնուած արհեստաւորներն են՝ պայտառ , երկաթագործ , դերձակ , մետաքսագործ , Ինճիլինճի , սառաճ , մրգավաճառներ՝ որ կը ծախեն տանձ , սեխ , ձմերուկ , սալոր , չոր ծիրան , թութ , չաքար , խահվէ ևլն․ աժան գիներով ։ Քաղաքին գլխաւոր վաճառքն է մետաքսէ և ոսկեթել գործ ( սէտճատէ ) ։ Կառավարութեան բնակարանները , նոյնպէս վերոյիշեալ խաները , սրճարանները , շուկաները՝ ձորին մէջ տեղը գտնուած դաշտավայրին վրայ շինուած են ։

Հայոց թաղը զատ է , գետին ձախ կողմը , և կը կոչուի Շէհիտ մահալէսի ։ Գետին ձախ կողմը քաղաքին գլուղը կը համարուի ։ Գետին մէկ կողմէն միւս կողմը անցնելու համար երկու քարաշէն գեղեցիկ ու հաստատուն կամուրջներ շինուած են . ասոնց մէկը քաղաքին մէկ ծայրն է և երկրորդը միւս ծայրը ։ Բնակիչները խստակրօն , անկիրթ և մարդատեաց . Օդը առողջ , ձմեռը երկար ու բաւական ցուրտ ։ Ջուրը շատ լաւ չէ , բայց Պէյ-Պէլ և Քալա—պուլ ըսուած երկու աղբիւրներուն ջուրը քաղցր ու առողջարար է ։ Պայպուրտ ունի 150 գիւղ , 123 ը տաճ-

կաբնակ է, 6 ը հայաբնակ, 15 ը խառն հայ ու տաճիկ և 6 ը խառն յոյն ու տաճիկ։

Բաբերդ՝ Մեծ Հայոց Բարձր Հայք անուանեալ նահանգին մէջ գտնուած Սպեր գաւառին՝ որ էր Բագրատունեաց ցեղին երկիրը, գլխաւոր քաղաքն էր։ Հոս քանի մը օր կեցանք։

Սեպտեմբեր 28 կիրակի առտու ճամբայ ելանք Քըրզի գիւղը երթալու համար $4 \frac{1}{2}$ ժամ հեռի։ Պայպուրտէն Տրապիզոն երթալու համար երեք ճամբայ կար. մէկը ձմեռնային, Զըղանա—եօլու, որ 36 ժամ կը տևէ. միւս ճանապարհը ամառնային, Ղուլաթ եօլու, որ 28 ժամ կը տևէ. և երրորդն ալ ամառնային, լեռնային ու կարճ Ղազըքլը—եօլու, որ 24 ժամ կը տևէ.

1° Զըղանա ճանապարհ.

Ա. օր Բաբերդէն՝ Գալախօռ.
Բ. » Գալախօռէն՝ Մուրատ խան.
Գ. » Մուրատ խանէն՝ Արտասա.
Դ. » Արտասաէն՝ Զըղանա.
Ե. » Զըղանաէն՝ Եէր—Քէօփրիւ.
Զ. » Եէր—Քէօփրիւէն՝ Ճէվիզլիկ.
Է. » Ճէվիզլիկէն՝ Տրապիզոն։

2° Ղուլաթ ճանապարհ.

Ա. օր Բաբերդէն՝ Վէսէլնի.
Բ. » Վէսէլնիէն՝ Մէշէլիկլին գլուխ պէքճիլէր.
Գ. » Մէշէլիկլին գլուխ պէքճիլէրէն՝ Ճէվիզլիկ.
Դ. » Ճէվիզլիկէն՝ Տրապիզոն։

3° Ղազըքլը ճանապարհ.

Ա. օր Բաբերդէն՝ Էրկինուս.
Բ. » Էրկինուսէն՝ կամ Կիւմիւշլիւ կամ Թաշ-Քէօփրիւ.
Գ. » Կիւմիւշլիէն կամ Թաշ—Քէօփրիւէն՝ կամ

Քէօփրիւ—պաշը կամ Ջայըրլար.

Դ. օր Քէօփրիւ—պաշըէն կամ Ջայըրլարէն՝ Տրապիզօն:

Վերոյիշեալ գիւղերէն կամ խաներէն զատ՝ կը գտնուին ճամբաներուն վրայ ուրիշ գիւղեր ու խաներ ալ, ուր ճանապարհորդները կրնան իջեւանիլ. բայց հասարակօրէն վերոյգրեալները կը բանին: Մենք ալ այս վերջին կարճ ճամբուն երթալ յարմար դատեցինք. ուստի Պայպուրտէն 2½ ժամ շարունակ դաշտային վայրերէ՝ ուր տեղ տեղ ջուրը պակաս չէր, յառաջ երթալով՝ հանդիպեցանք ճամբուն վրայ Վարզահան անունով հայոց գիւղը. ասոր գերեզմանատանը մէջ գեղեցկանկար քանդակուած քարերով ճարտարակերտ բարձր քարաշէն եկեղեցիի մը աւերակը կը տեսնուէր: Անկէ ելանք ու 2 ժամ ալ դաշտային ճանապարհը շարունակելով մտանք Քըրզի անուն տաճկաց ու հայոց գիւղը Ճորոխի մօտ, ուր կեցանք գիշերը:

Սեպտ. 29 երկուշաբթի ճամբայ ելանք Թօշ—Քէօփրիւ երթալու համար 10 ժամ հեռի: Ճամբայ ելած ատեննիս անձրեւ կուգար, սաստիկ ցուրտ կընէր. այսպէս 1 ժամ դաշտային ու ձորային ճամբաներէ երթալով անցանք կամուրջի մը վրայէ եւ կէս ժամ ալ շարունակելով դաշտավայրը, հանդիպեցանք ճամբուն ձախ կողմը մէկ գիւղ մը, ուրկէ ալ ելլելով կէս ժամ յառաջ գացինք դաշտին մէջ ու մտանք խան մը. այս խանէն անդին 1 ժամ երթալով հանդիպեցանք լերան վրայ գիւղ մը, եւ այնուհետեւ 3 ժամ շարունակ երկնաբերձ լեռներ ելանք ու իջանք. ցուրտը կը սաստկանար եւ անընդհատ ձիւն կը տեղար. վերջը մտանք մէկ խան մը, ուրկէ ալ 1½ ժամ ձորերու մէջէ ճամբայ առնելով ըսկըսանք դարձեալ 2 ժամի չափ լեռներ ելնել ու իջնել.

վերջը հասանք ձորի մէջ Թուշ—Քէօփրիւ ըսուած տեղը շինուած խանը, ուր գիշերը օթեւան ըրինք այն զգացմամբ, իբրեւ թէ թագաւորական պալատի մը մէջ կը գըտնուէինք, վասն զի այս պանդոկը մեզի ապաստանարան եղաւ այն անտանելի ցուրտին դէմ։

Սեպտ. 30, Երեքշաբթի ճամբայ ելնելով, սկսանք նախ բարձր լեռնէ մը վեր ելնել շարունակ մէկ ժամ ու հազիւ հասանք անոր կէս մէջքին կողմերը. այս լեռը կարծես թէ բարձր լեռներու գագաթներուն վրայ դըրուած էր. վասն զի լերան ստորոտը շուրջանակի բարձր լեռներու գագաթներով պաշարուած էր, որոնք ամպերու մէջ ծածկուած էին. իսկ մեր լեռը իր չոր ու ապառաժուտ գագաթը ամպերէն ալ վեր բարձրացուցեր էր. մեր հասած տեղէն շատ բարձր էր լերան գագաթը, բայց մենք ալ երկինքներուն մէջ ամպերուն վրայէն կը քալէինք անձրեւներու ու ձիւներու մէջէ. այսպէս լերան կէս մէջքն ելնելնէս վերջը՝ սկսանք այնուհետեւ միշտ դէպ 'ի վար իջնել Պոնտոսի ծովին հաւասարութիւնը գտնելու համար. եկանք ստքերնուս տակը գտնուած այն լեռներուն վրայ, ու մտանք ամպերուն մէջ, որոնք մերթ անձրեւով կը թրջէին ու մերթ ձիւնով կը սառեցունէին, և մենք այս լեռներուն մերթ գագաթներուն վրայէն՝ մերթ ղաւ 'ի վայրին կողմէն, գահավէժներու վրայէ միշտ վար կիջնէինք մինչեւ 2 ժամ; մտանք պանդոկ մը (ճամբան տեղ տեղ պանդոկ կը գտնուէր). հոս քիչ մը հանգստանալնէս վերջը ելանք ու սկսանք շարունակել ճամբայնիս ժամ ու կէս, և մտանք բարձր ու ձիւնազարդ ծառերու անտառներով ծածկուած լեռներու մէջ, որոնց մէկին ստորոտէն միւսին գագաթին վրայ կիջնէինք սանդղոց նման. ժամ մ'ալ այսպէս երթալով, վերջապէս վերջնագոյն լերան

դադաթէն ալ ճիչդ 2 ժամէն իջանք ստորոտը՝ Մաչկայ կոչուած ձորին մէջ մէկ պանդոկ մը, ուր գիշեր կեցանք և 7 ժամ հեռի էր Թաշ—Քէօփրիւէն ։ Այս վերջին լեռան կէս մէջքին վրայ գիւղ մը կար, և ձորին մէջ ալ կամուրջ մը ։ Անտառուտ լեռներուն բարձր ծառերուն որ ֆընտըխի, ղընոցի, ընկուզենի և կաղնենի էին, ձիւնապատ բուները՝ որ մինչև իրենց ծայրը առանց ճիւղերու կը բարձրանային, ճերմակ մարմարինէ բարձրաբերձ կոթողներու և սիւներու կը նմանէին ։ Գիշերը մինչև լոյս անձրև կուդար, և ձորին մէջէն վազող ջրին ձայնը՝ մերթ մրափել կուտար մերթ կ'արթնցունէր ։

Հոկտեմբեր 1 չորեքշաբթի օր ճամբայ ելանք Տրապիզոն երթալու համար 6 ժամ հեռի. ճամբան ձորային էր մինչև քաղաք, բայց մենք 3 ½ ժամ միայն այս ձորերուն մէջէն երթալով միշտ դետանման վազող ջուրերուն ընթացքին շարունակութեամբը, մերթ ջուրին մէկ կողմէն, մերթ ալ կամուրջէ անցնելով՝ անոր միւս կողմէն, և մերթ ալ ձորին լեռներուն զառ ՚ի վայրերուն վրայէն հասանք փայտաշէն կամուրջի մը գլուխ, ուր Տրապիզոնի կառավարիչ Խամսիլ փաշային որդին, Փորանտինեայէ և Քէօսախանէի վերատեսուչները բազմաթիւ Կոստանդեաններով դիմաւորութեան եկած էին ։

Այս ձորերուն մէջ՝ ճամբուն վրայ՝ իրարմէ քիչ հեռի փայտաշէն իջևաններ պակաս չէին անցորդաց համար շինուած ։

Այսօր երկինք սպառէր ու շարունակ տեղատարափ անձրև կուդար. դետինը ճախճախուտ ճահիճ դարձեր էր և շատ տեղ ալ լիճեր ձևացեր էին ։

Վերջը զարկինք դէպ ՚ի լեռը, բայց շատ դժուարութիւն կրեցինք. վասն զի լեռներուն վրայ՝ տեղ տեղ խորտուբորտ ու ծուռ ապառաժներու վրայէ անցնելու

պարտաւորեցանք, որոնց ներքեւի գահավէժները իրաւցընէ վախ ու սարսափ կ'ազդէին։ Այս լեռները մինչեւ ծովեզերքը՝ եւ 3 1/2 ժամ անցած ձորերնիս՝ անտառախիտ գեղեցիկ ծառերով ծածկած էին հարուստ արտերով զարդարուած։

Լեռներուն վրայ շատ տեղ 50 կամ 60 ի չափ փայտաշէն տուներով գիւղեր պակաս չէին, եւ շատ տեղերու վրայ ալ իրարմէ քիչ հեռի 4 տունով բնակութիւններ կը գտնուէին։

Տրապիզոնի մէջ խօլէրայ հիւանդութիւնը ամիսի մը չափ սարսափելի կոտորած ընելէն վերջը՝ չորս օր յառաջ դադրած էր, եւ բնակչաց շատերն՝ որ հիւանդութեան կատաղի ժամանակը քաղաքը ձգելով շրջակայ գիւղերն ու լեռները փախած էին, հետզհետէ քաղաքը դառնալ սկսեր էին. բայց Կ. Պօլսոյ նաւերը տակաւին չէին հանդիպեր, եւ հանդիպող շոգենաւներն ալ միայն բեռներնին կը պարպէին ու ճանապարհորդներ կը ձգէին, բայց ո՛չ ճամբորդ կառնէին եւ ո՛չ բեռ։ Մենք ալ մի եւ նոյն պատճառով չըմտանք քաղաքէն ներս, եւ մէկ ժամ հեռի լերան գագաթը շինուած Օսման բաշա քէօշկի ըսուած տունը իջանք։

Օսման բաշայի քէօշկը լերան վրայ բաւական ընդարձակ չէնք մ'էր, ուրկէ կ'երեւար Սեւ ծով մինչեւ հորիզոնը։ Հոս կեցանք 9 օր. այս միջոցին քաղաքացւոց երեւելիներն այցելութեան կուգային եւ մենք ալ ամեն օր լեռը կելնէինք ու կը շրջէինք։

Հոկտեմբեր 9 քէօշկէն ելանք, հանդէսով մտանք քաղաքն ու իջանք կառավարչին ապարանքը։

# ՏՐԱՊԻԶՕՆ։

Տրապիզոն Սև ծովու հարաւային եզերքին վրայ երկարանիստ բերդաւոր քաղաք մ՚է դրեթէ ձուաձև, Քրիստոսէ 800 տարի յառաջ շինուած։ Երկայնութիւնը ծովեզերքէն ՚ի վեր է արևելքէն արևմուտք, Չէօմլէքճի ըսուած թաղէն սկսեալ մինչև Այէօ Սօֆիա անուն ճամին, և 3 քառորդ ժամէն աւելի։ Լայնութիւնը հիւսիսէն հարաւ, Մումհանէ Իսքէլէսի էն մինչև Եէնի Ճումա ըսուած թաղին վերի ծայրը, և կէս ժամ, և շրջապատը 2 ժամէն աւելի։ Հիւսիսային կողմը ծովապատ. արևելեան և հարաւային կողմերը՝ Պօզ—Թէփէ և ուրիշ ցածուն լեռներ ու բլուրներ։ Դիրքն ընդհանրապէս հարթ, բայց ծովեզերքէն դէպ ՚ի հարաւ մեղմ զառիվեր ձևացուցած ըլլալով՝ քաղաքին հարաւային ծայրը ծովին երեսէն 300 ոտք բարձր է։ Արևելեան ու արևմտեան կողմի հորիզոնները բաց ու արձակ, անանկ որ Լազիստանի սահման Ոթինայի մեծ հրուանդանէն ու Շամշէն գաւառի արևմտեան բարձրաբերձ ու ձիւնադէզ լեռներէն մինչև Եօռօզ հրուանդանը, 40 ժամ տեղ, մէկ նայուածքով կերևնայ. իսկ հարաւային կողմի հորիզոնը մերձակայ լեռներուն պատճառաւ կարճ է ու ամփոփած։ Տրապիզոն երկու մասերու կը բաժնուի. բերդ և արուարձաններ։ Բերդը՝ երկու խորաձորներու մէջ գտնուած տափարակ ու բարձր բլուրի մը վըրայ շինուած է, քաղաքին մէջ տեղէն կ՚անցնի և երկու արուարձաններու կը բաժնէ զանի. ձևը սեղանաձև երկայն քառակուսի է հիւսիսէն դէպ ՚ի հարաւ, ուրկէ քաղաքն առած է իր յունական անունը Տրապիզուն. երկայնութիւնը՝ կէս ժամ է և շրջապատը 1 ժամէն աւելի. պարիսպները լայն ու բարձր, ըստ մեծի մասին բաղ-

մապտոյտ ու կրկին․ շատ տեղ բարձր ու ամուր ապառաժներու վրայ հաստատեալ, անկիւնի, քառանկիւնի, միայարկ ու կրկնայարկ բազմաթիւ բուրգերով ու աշտարակներով ալ ամրացեալ։ Ունի զոյգ դուռներ՝ որոնք ամուր աշտարակներով պատսպարած են ։ Այս բերդը 3 մասի բաժնուած է․ հարաւէն սկսելով՝ վերնաբերդ, միջնաբերդ և ներքնաբերդ․ ատոնց դիրքը հարթ է և իրարմէ աստիճանաբար բարձր, ամուր պարիսպներով զատուած իրարմէ։ Վերնաբերդը բովանդակ բերդին հարաւային ծայրն է, միւս երկու բերդերէն բարձր ու ամուր, բայց անոնցմէ փոքր։ Բարձրութիւնը ծովէն 300 ոտք է․ իր հարաւային կողմի պարիսպները շատ հաստատ ու բարձր և կրկնայարկ բուրգերով ու քառակուսի աշտարակներով ամրացեալ են։ Ունի այս կողմը զոյգ դուռ մը՝ որ կըսուի Գուլէ գափուսու, ուրկէ կիջնեն Դաշղուն տէրէ ։ Արևմտեան ու արևելեան կողմերուն խորաձորերն ու ժայռերը անմատչելի ըրած են վերնաբերդը․ այս բերդը կը զատուի միջնաբերդէն՝ իր հիւսիսային կողմը արևելքէն արևմուտք ձգուած ամուր ու լայն պարիսպով․ այս պարիսպը դուռ մը ունի՝ որ կը բացուի միջնաբերդը ։ Յունաց արևելեան կայսերաց դահը՝ երբեմն հոս էր, երբեմն ալ միջնաբերդին մէջ ։ Այս բերդին մէջ մէկ քանի տուն կայ հիմա ։ Միջնաբերդին դիրքը ներքնաբերդէն բարձր է և հարթ, ձևը քառակուսիի մօտ․ իսկ իր չորս կողմի պարիսպները ապառաժներու վրայ հաստատեալ․ ասոր երկու կողմի ձորերը շատ խոր ըլլալուն պատճառաւ՝ պարիսպները շատ տեղ միակարգ են, բայց ամուր և լայն ։ Օրևելեան կողմը ունի երկու դուռներ․ Ջէդվէլլէ գափուսու և Թօպհանէ գափուսու, որ կը բացուին արուարձանին վրայ, երկու դուռն ալ հիւսիսային ու արևմտեան կողմերը, որ կիջեցունեն ներքնաբերդը․ դուռ մ՚ալ հա-

րաւային կողմը, որ կը բացուի վերնաբերդը։ Հոս է կու-
սակալին Նորաշէն պալատը, յանցաւորաց ու մահա-
պարտից բանտերը․ կան մեծամեծ զէնքեր երևելի
տաճկաց, ճամիներ, բաղնիքներ, խանութներ, աղբիւր-
ներ։ Ներքնաբերդը ծովէն կսկսի ու Չիֆթէ համամլարպաշըն
մօտ միջնաբերդին կը միանայ։ Դիրքը հարթ, միայն
վերին կողմը քիչ մը զառ 'ի վեր, վերոյիշեալ երկու
բերդերէն աւելի մեծ ու ընդարձակ։ Արևելեան
կողմը ծովին մօտ ունի դուռ մը՝ Փազար կամ Մահմուտնէ
գաբուսը՝ որ կը հանէ արևելեան արուարձանը. հիւսիսային
կողմը Մօլոզ գաբուսը ծովահայեաց․ արևմտեան հիւսի-
սային կողմը Սօնիկոյ գաբուսը, և արևմտեան հարաւային
կողմն ալ Իմարէթ կամ Չիղանոս տէրէ գաբուսը, որոնք կը
բացուին արևմտեան արուարձանը․ դուռ մ'ալ հարա-
ւային կողմը միջնաբերդն անցնելու համար։ Այս բեր-
դին մէջ կան բազմաթիւ տուներ, շուկայներ, մզկիթ-
ներ, բաղնիքներ, աղբիւրներ, ևն ևն։ Աստր արև-
մտեան կողմը կը գտնուի Լոնճէ դէյտանօնէ ըսուած երևելի շէն-
քը՝ որ կը կարծուի թէ կոմնենոսաց պալատն տեղւոյն վրայ
շինուած ըլլայ․ ճիշդ հարաւային ծայրն ալ, այսինքն, միջնաբեր-
դի արևմտեան հիւսիսային կողմը, Ինչէք գօլ խորաձորին
եզերքին վրայ՝ Իմարէթ գաբուսին քով Ալէքսիոսի բարձր ու
ամուր աշտարակը․ այս տեղէն կսկսի 100 ոտնաչափ բար-
ձր կամուրջ մը՝ որ Իմարէթ կամ Չիղանոս տէրէ գաբուսին միջնա-
բերդը կը հանէ։ Այս կամուրջին երկու կողմը վարէն 'ի վեր
հաստատ պարիսպներ շինուած են, որոնց մէջ տեղի
նեղ ճամբայէն գետակը կանցնի․ այս անցքը ներքնա-
բերդին հարաւային դուռն ալ կրնայ ըլլալ։ Այս ձևով
կամուրջ մ'ալ միջնաբերդին արևելեան կողմը կայ,
Թաղաքհանէ գաբուսին առջևը՝ Գոռզղան տէրէսի վրայ շի-
նուած։ Այս երկու կամուրջներուն վրայ ջրանցքներ կան
բերդին ու քաղաքին մէջ ջուր առնելու համար։

Ալեքսոսի աշտարակէն կամ Իմալէք թապիասէն դէպ 'ի հիւսիսային կողմը, այսինքն, դէպ 'ի ծով մինչև Սօնլու թապիասը, Ներքնաբերդին արևմտեան պարիսպը կը ներկայացունէ մեծամեծ աշտարակներ կրկնայարկ ու քառակուսի․ և Մօլողի արևմտեան ծայրն ալ մեծ ու բարձր շէնքի մը ամբարտակ, որ պարիսպէն զատուելով ծռած ու աւաղին վրայ ամրապինդ կեցած է։ Ի հնումն այս պարիսպը մղոնի մը չափ ծովին մէջ երկնցած, անկէ ալ շրջանակաձև դառնալով դարձեալ ցամաքի պարսպին հասած, և այս շրջանակին արևելեան հարաւային կողմէն ալ նաւերու համար մուտ մը ձգուած էր, որով կը ձևացունէր 300 քայլէն աւելի լայնութեամբ ամուր ու սքանչելի նաւահանգիստ մը՝ որ երբեմն Պոնտոսի մէկ հատիկ պարծանքն էր։ Բայց հիմայ անոր պատերուն դիրքը միայն կը տեսնուի ջուրին երեսը տեղ տեղ ժայռի նման։

Մօլողի կողմը՝ Ներքնաբերդին հիւսիսային կողմի պարիսպը 300 քայլէն աւելի է․ ունի մեծ ու հաստատ պատնէշ մը Մօլողի դուռը բաւական թնդանօթներով զինեալ թշնամի նաւերու յարձակմանց դէմ։ Այս կողմի պարսպին բարձրութիւնը տկարացած է ծովեզերքը լցուած քարերուն պատճառաւ․ Մօլողի արևելեան ծայրը բերդին պարիսպը ծովը մտած է և ծայրն ալ մեծ, բարձր ու հաստատ աշտարակ մը կայ։ Այս պարիսպը վերէն 'ի վայր կտրուած ըլլալով ճամբայ բացուած է դէպ 'ի Մուհամմէ — Եմին արուարձանը․ ատոր առջևը՝ ծովին մէջ լայն պարիսպներու մեծամեծ կտորներ կան․ կերևայ որ հոս ալ երբեմն մեծ շէնք մը կը գտնուէր։

Բերդը շրջապատող խորաձորերը Ներքնաբերդը հասած ատեն, արևմտեանը Ներքնաբերդի մէջէն կանցնի լայն ու խոր ձևով մը, որուն երկու կողմը ա-

մուր ու հաստատ պատեր շինուած են ։ Արեւելեանն ալ պարսպին արտաքին կողմէն կանգնի, և իր լայն ու խոր ձեր բերդին ամրութիւնը կաւելցունէ . այս ձորին երկու կողմը սրբատաշ քարերով պատեր շինուած են ։ Պազար քափուսին առջև այս խրամին վրայ կամուրջ ու խանութներ շինուած են ։ Այս բերդը ՚ի հնումն շատ հռչակեալ էր իր ձևին ու շէնքին համար . բայց հիմա անպէտ, և շատ կողմերն ալ խարխլած են ։

Քաղաքին արուարձաններուն մէկը բերդին արևելեան կողմն է, և միւսը արևմտեան ։

Արևելեան արուարձանը աւելի մեծ ու գեղեցիկ է և աւելի պատուաւոր . հոս կը գտնուին քաղաքին մեծ շուկաներն ու խաները, երևելի Թաղերն ու մեծամեծ տուները, հոս կը բնակին ընդհանրապէս քրիստոնեայ ազգերն ու Եւրոպացի վաճառականները, հիւպատոսները . ուստի այս արուարձանը բուն քաղաքը կը համարուի ։

Իր դիրքին նայելով երեք մասի բաժնուածի պէս է .

Ա. Ծովեզերքի մերձակայ Թաղերը կամ յունաց Թաղերը .

Բ. Միջավայր Թաղեր կամ Կեավուր Մէյտանը .

Գ. Վերին կամ հարաւային Թաղերը կամ Թէփէ և Պօզ — Թէփէ ։

Այս Թաղերը ծովեզերքէն սկսեալ իրարմէ աստիճանաբար կը բարձրանան ՚ի Պօզ—Թէփէ կուսանաց վանքը ։ Ծովեզերքին դիրքը զառ ՚ի վեր է . հոս ընդհանրապէս յոյները կը բնակին . միջավայրը կամ Կեավուր Մէյտանը իր շրջակայ Թաղերովը մէկ տեղ տափարակ . հոս կը բնակին հայերը . վերին կողմն կամ Թէփէ և Պօզ—Թէփէ անուն հարաւային Թաղերուն ալ տափարակ . ասոնք ալ տաճկաց բնակութիւն են . Ծովեզերեայ տուները աւելի խիտ են . միջավայրինները իրարմէ չափաւոր հե-

ռաւորութեամբ․ իսկ Հարաւայիններն ընդարձակ ու գեղեցիկ ծառազարդ պարտէզներու մէջ ցիրուցան շինուած։ Արեւմտեան արուարձանի ընդարձակութիւնը թէպէտ միւսէն վար չը մնար, բայց բնակութիւնը նուազ է․ դիրքը դաշտաձև, տուներն ըստ մեծի մասին անշուք ու ցրուած, մանաւանդ արուարձանի արեւմըտեան կողմինները․ ունի փոքր շուկայ մը։ Այս արուարձանը Այիա Սօֆիա և Խօճէքէնի ճամինէյէն զատ երևելի ձեռակերտ մը չկրնար ներկայացունել, բայց կրնայ պարծիլ իր պտղաբեր ծառերով զարդարուած զուարճալի ու մեծամեծ պարտէզներուն չքեղութեամբը։ Տրապիզոնի արուարձաններն ու բերդը մէկ տեղ իրարու կից 30 թաղերու բաժնուած են․ ասոնցմէ՝ Պէշ—Թէփէ, Գուլէ—Պաշը, Սէնէ—Մաղարա և Թէփէ թաղերուն դիրքը ամենէն բարձր է, տեսարանը պատուական, օդը գեղեցիկ, պտղաւէտ պարտէզներով զարդարած։ Տրապիզոն ունի 33000 բնակիչ, տաճիկ, հայ ու յոյն․ 5000 էն աւելի տուն․ 3000 տաճկի, 1000 յունաց, 588 հայ, 140 հռովմէական և 9 բողոքական հայոց։ Ասոնցմէ զատ կան նաև եւրոպացի և պարսիկ օտարականներու մէկ քանի տուներ․ Ռուսի, Հելլենացւոց, Պարսից, Անգղիացւոց, Աւստրիոյ, Գաղղիոյ, Իտալիոյ, Պելճիգայի և Բրիւսիոյ հիւպատոսարաններ․ Հայոց թիւը 3987 ընդ այր և ընդ կին, որոնց 1648 ը այր․ տուներն ընդհանրապէս քարաշէն պատերով և կրկնայարկ, սենեակները սրտաբաց լուսամուտներով զարդարուած․ փայտաշէն միայարկ տուներ ալ պակաս չեն․ կան նաև բազմայարկ գեղեցիկ հաստատուն ու ձևաւոր տուներ, մանաւանդ նորաշէններուն մէջ․ ամենուն վրայ կղմինտր, և շատ տուն քուաւոր․ ընդհանրապէս իրարու կից․ բայց քաղաքին Հարաւային կողմի և արեւմտեան եղերքի տաճկաբնակ թաղերուն տուները գիւղի տուներու նման ընդարձակ ու զուար֊

ճալի պարտէզներու մէջ ցիրուցան։ փողոցները նեղ ու բազմապտոյտ. հիմա մէկ կողմէն քանի որ առիթ պատահի՝ կըլայնցնեն փողոցները։ Բերդին մէջ 1000 տունէն աւելի կայ, ամենն ալ տաճկի. հոն մէջ քրիստոնեաները ո՛չ տուն ունին և ո՛չ եկեղեցի։ Բերդի արևմտեան կողմի արուարձանին ամէն թաղերն ալ տաճկաբնակ են. միայն Սօթգա և Ղարօզ ըսուած ծովեզերեայ թաղերուն մէջ 200 ի չափ ալ յունաց տուն կը գտնուի։

Բերդի հարաւային կողմի՝ Իմարէթ, Գուլէ—Պօյը թաղերն ու՝ Եէնի—Ճումայի հարաւային մասը, արևելեան պարսպին կից Թէքէ Մահալլէսի և Խարապ—հանէ թաղերը, Հաճը Գասըմ և քաղաքին հարաւային կողմին մօտ Ճէպպէլէր թաղը և Պօզ—Թէփէ ամբողջ տաճկաց բնակութիւն են։

Արևելեան արուարձանի ծովեզերեայ մասը ամբողջ յունաց թաղեր են. այս թաղերը արևելքէն սկսելով հետևեալներն են. Չէօմլէքճի, Գանիթա, Ֆրէնք Մահալլէսի, Ճամլը—Չէշմէ, Տաղ—Պաշը և Գէմէր—Գայա։ Հարաւային կողմի Այ—Ֆիլիպօ և Պօզ Թէփէի արևելեան մասը, Զէյթինլիք և Տէպրէլէ թաղերը տաճկաց ու Հայոց խառն բնակութեան թաղեր են։ Ծովեզերքին ու հարաւային կողմի մէջ տեղը գտնուած Չարշը, Իսքէնտէր—Փաշա, Գէտրէլէր—Օղլու, Այ—Վասիլ թաղերն ու Հաճը—Գասըմ ու Եէնի—Ճումա թաղերուն հիւսիսային մասերը հայոց, հռովմէականաց, յունաց և փոքրաթիւ տաճկաց խառն բնակութեան թաղեր են։

Տրապիզոն ունի ճամիներ, որոնց երևելիները հետևեալներն են.

Արևմտեան արուարձանին մէջ.

Այ Սօֆիա ճամի երևելի չէնք մ'է.
Ղարօզ " Այ Սօֆիայի արևելեան կողմը.
Թէօքիւր չայըր " Ղարօզի հարաւային կողմը.
Իմարէթ " Թէօքիւր չայիրին արևելեան կողմը երևելի չէնք մը.

Միջնաբերդին մէջ․

Օրթա հիսար ճամի Բերդին արեւելեան պարսպին մօտ երեւելի շէնք մ՚ է․

Մէկ մը " վերնաբերդի սահմանին մօտ․

Միւս մ՚ ալ " Թապաքխանէի դռնէն վար։

Ներքնաբերդին մէջ․

Մէկ մը ճամի Պազար քափուի արեւմտեան կողմը․

միւս մը " Սանտըքճըներուն մօտ։

Շուկայի մէջ․

Կէօմրիւկ կամ Իքտար ճամի
Չարշը ճամի
Ալաճա խան "
Մուսլուքլար "
Միւֆտի "
Թապաքհանէ "
Հաճը գասըմ " Համամուն թաղին մէջ․
Եէնի ճումա " Համամուն թաղին մէջ․
Թաւանլը " Պօղ Թէփէ թաղին մէջ․
Թէքքէ " Համամուն թաղին մէջ․
Մէյտան " Համամուն թաղին մէջ․
Սարմաշըքլը "
Մումհանէ եօնի "

24 եկեղեցի յունաց, այլ և այլ թաղերու մէջ․ մեծ մասին շէնքը հին ու անշուք․ տասն և մէկը շարունակ բաց, տասներեքը ամիսներով փակեալ․ ասոնց գլխաւորները հետեւեալներն են․

Այ—Պանտի․ ընդարձակ բարձր կամարակապ նորակառոյց․ Գէճէր—եալը թաղին մէջ․

Այ—Ղորղօռ, եպիսկոպոսական եկեղեցի․ Թուզլը—չէշմէ թաղին մէջ, առաջիններն աւելի մեծ՚ ու գեղեցիկ․ դիրքը շատ բարձր, ծովահայեաց, ապառաժի վրայ

հաստատեալ. ասոր շինութիւնը դեռ աւարտած չէ։ Հոս է յունաց եպիսկոպոսարանը։

Այ—Վասիլ, համանուն թաղին մէջ. Յուստինիանոս կայսեր ժամանակը շինուած։

Սուրբ Աննա, նոյն թաղին մէջ. շատ հին ու խարխուլ վիճակի մէջ. ասոր բարձր ու ծոլահայեաց դիրքը շատ զուարճալի է։

Սուրբ Աստուածածին. ապառաժէ փորած մեծ եկեղեցի. քաղաքին հարաւային ծայրը Պօղ—Թէփէ լերան գագաթը՝ կուսանաց վանքին մէջ։

Այս վանքը 150 քայլ երկայնութեամբ և 50 քայլ լայնութեամբ պարիսպով շրջապատեալ է. ունի շատ մը փոքր սենեակներ կուսանաց համար. գեղեցիկ տեսարան մը, պատուական ջուր մը՝ որ մէջէն կը բղխէ։ Աւանդութեամբ կըսեն՝ թէ յունաց կայսերութեան ժամանակ Տրապիզոնի մէջ 360 եկեղեցի կար. քաղաքը տաճկաց ձեռքն անցնելէն ետև անոնցմէ շատը ճամիի, բաղնիքի և ուրիշ բաներու փոխուած են. մէկ մասն ալ քակելով տուներու ու պատերու շինութեանց գործածեր են. հիմա անոնց աւերակաց նշխարները միայն կերևին ցիրուցան։

Երեք եկեղեցի Հայոց, հին և փոքր, և կառուցեալ յունաց վերջին թագաւորաց ատեն, այսինքն, 500 տարի յառաջ. որք են Ա. Սուրբ-Օքսէնտ կամ Առաջնորդարանի եկեղեցի. Մէյտանի մօտ հիւսիսային կողմը, պարսպապատ, ունի գերեզմանատուն մը, որուն մահարձանները ձիթենիներով ծածկուած են։ Բ. Սուրբ Ստեփաննոս կամ Չարխափան. պարսպապատ, ունի ընդարձակ գերեզմանատուն մը ձիթենիի ծառերով. այս կողմերը հին սովորութիւն է գերեզմանատան մէջ ձիթենիի ծառ տնկելը։ Գ. Սուրբ Յովհաննէս. Չարխափանի արևմտեան կողմէ 250 քայլ հեռի. մեծ շուկայի արևելեան ծայրը

Պէրապէր օղլու բռնուած տեղը. ունի փոքր գերեզմանատուն մը շրջապատի մէջ ։

Մէկ եկեղեցի հռովմէականաց Սուրբ Աստուածածին անուն, հին ու հաստատ շէնք, հինգ կամարաչէն խորաններով, կիր—Ալէքսի ժամանակը շինուած. ունի գերեզմանատուն մը.

Մէկ եկեղեցի լատինաց Ֆրէնկ—մահալլէսի թաղը ։

Մէկ գեղեցկագիր առաջնորդարան հայոց, եռայարկ և ծովահայեաց. մէկ առաջնորդարան հռովմէականաց, եկեղեցւոյ մօտ Ղալաթա—սէրայ փողոցին հիւսիսային կողմը ։ Մէկ դպրոց հայոց քարաշէն, մեծ, քառայարկ, քառակուսի ձևով. հոս երկու սեռէ 600 ի չափ աշակերտներ կը կրթուին զանազան ուսմանց ու լեզուագիտութեան մէջ. մէկ ուսումնարան յունաց, մեծ ու ծովահայեաց, ուր կը կրթուին 400 ի չափ աշակերտներ ուսմամբ ու լեզուագիտութեամբ։ Երկու ալ նախակրթական դպրոցներ Չէնկէլքէօյ և Օրթագիւղ թաղերուն մէջ։ Մէկ աղջկանց դպրոց լատինաց, Բալըգլը—չէշմէ թաղը, ուր հայոց ալ բազմաթիւ տղայք ու աղջիկներ կ'ուսանին։ Մէկ արքունի դպրոց՝ որ ժամանակէ մը 'ի վեր փակեալ է ։ Մէկ քանի նախակրթական դպրոցներ տաճկաց ։ Յասն եւ երկու հատ բաղնիք.

Սրւելեան արուարձանին մէջ՝ որք են.

Քէհեա օղլու, Փաշա, Սլանճա, Ձուքուր, Քեաւուր ։

Ներքին բերդին մէջ՝ որք են.

Մօլօզ, Ուզուն—օղլու, Մէյտան, Եօքուշ—օղլու ։

Միջին բերդին մէջ՝ որք են.

Ջիֆտէ, Գուլէլի ։

Զիդանոսի դռնէն դուրս մէկ մ'ալ՝ որ է իմարէթ—համամը ։

Մէյտան, Փաշա, և Ջիֆտէ բաղնիքները զոյգ են. մէկ արանց յատկացեալ, և միւսը կանանց. միւս

թաղնիքները մինչև կէս օր տղանց յատկացեալ են, և կէս օրէն մինչեւ իրիկուն կանանց։ Արանց համար աղ-գայ խտրութիւն չըկայ. բայց քրիստոնեայ կանայք եբ-բեքշաբթի և շաբաթ օրերը միայն կընդունուին, վասն զի միւս օրերը մահմէտական կանանց յատկացեալ են։

Վաճառականաց պանդոկներ ու քարաշէն կամարակապ ծուղուղներ, խանութներ, պէզէսթէն մը. Պէօյիւք—չարշը անուն շուկայ մը, մաքսատուն, թարափխանէ մը, միթերանոցներ։ Ասոնց ամէնն ալ արևելեան արուարձանին մէջ կը գտնուին, և ծովեզերքէն անմիջապէս սկըսելով դէպ 'ի արևելք ու հարաւ տարածուած են, և օր քան օրէ ալ աւելնալու վրայ են։

Խաներուն անունները արևելքէն սկսելով հետևեալներն են.

| | |
|---|---|
| 1 Մէյտան | խանը |
| 2 Քէհեա օղլու կամ Ահէմ | " |
| 3 Հաճի եահեա օղլու | " |
| 4 Սուլու | " |
| 5 Պարաշկէմա | " |
| 6 Տաշ | " |
| 7 Ալաճա | " |
| 8 Կիրիղին | " |
| 9 Փաշաեան օղլու | " |
| 10 Եալը | " |
| 11 Կէօմիւք | " |
| 12 Իքի քաբուլը | " |
| 13 Հաճի քատը օղլու | " |
| 14 Միւֆթի | " |
| 15 Կէօմիւք։ | " |

Մէյտան, Պարաշկէմա, Տաշ, Ալաճա և Փաշաեան օղլու պանդոկներուն մէջ կը նստին քաղաքին մեծ վաճառականները։ Պէզէսթէն ը՝ քառակուսի ձևով հին չէնք

մ'է Ջորջ Թաունին քով․ մէջը դերձակներու ու բամպակ ծախողներու խանութներ կան ։ Պարիսպները բարձր ու ամուր , քարերը հրկիզութեանց պատճառաւ հին֊ցած ։ Ունի երկաթեայ չորս դուռ իր չորս կողմերուն վրայ դէմ առ դէմ․ մէջ տեղն ալ հոր մը անուշ ջուրի։ Կը կարծուի՝ թէ այս շէնքը 'ի հնումն քաղաքացւոց ապաս֊տանարանն եղած ըլլայ ծովապատակաց երեսէն։ Մաք֊սատունը հին ու հաստատ շէնք մ'է կրկնայարկ, և ծովա֊հայեաց ։ Քարանթինան՝ որ կըսուի Իլէ–տէլ—ռէյ , ե֊րեւելի շէնք մ'է կրկնայարկ , եռայարկ և պարսպա֊պատ , զոր 1740 թուականին իւչիւնճիւ օղլու Ահմէտ փաշային շինել տուած է Նաւահանգստին արեւմտեան կողմը՝ Ելէուսաի գագաթին վրայ ։ Ելէուսա՝ հրուան֊դանի պէս ծովը մտած , և քառակուսի դիրքով ուղ֊ղաբերձ կանգուն ապառաժ սար մ'է , երեք կողմերը՝ ծովին երեսէն 60 ոտնաչափէն աւելի բարձր , և գա֊գաթը հարթ․ այս հարթ գագաթին վրայ հին ատե֊նի կամարակապ ամուր շէնքերու և եկեղեցիի մնա֊ցորդներ մինչև հիմա կը գտնուին ․ Քարանթինան ալ ասոր վրայ շինուած է ։

Այս սարը՝ հարաւային կողմէն՝ պարանոցի պէս նեղ ցամաքով մը ցամաքին կցուած է ։ Նոր ճամբան այս ապառաժին տակէն կանցնի և կիրճի մը ձև ունի , ներքին կողմը ծով , և վերի կողմը անմատչելի ապա֊ռաժ ․ այս ճանապարհը փորած ժամանակ՝ երկու մեծ դատարկ քարայրներ գտնուեցան ․ Քարանթինային պա֊րիսպները շուրջանակի բարձր ու ամուր են, ունին ցած ու փոքր դուռ մը հիւսիսային կողմը՝ ուրկէ քարակը֊տուր աստիճաններով վտանգաւոր ճամբէ մը ծովը կիջ֊նան ․ և մեծ դուռ մ'ալ հարաւային կողմը , ուրկէ նա֊ւամատոյցը կիջնեն ։ Այս շէնքը ողջ պահիկ տուն ըլլա֊լէն զատ մեծամեծ թնդանօթներով զինեալ ըլլալուն

պատճառաւ, Նաւահանգստին ու արևելեան արուարձանին պաշտպանութեանը համար բերդ մը կամ մարտկոց մը կը համարուի. Նաև քաղաքին պատերազմական զինուց մթերանոցներէն մէկն է։ Արևելեան արուարձանի ծայրը կամ Նաւահանգստին արևելեան ծովեզերքին վրայ ալ քարաշէն փոքր մարտկոց մը կայ Թէփէ — Թօղլը անուն, որ կը պաշտպանէ քաղաքն ու Նաւահանգիստը թշնամի Նաւերու յարձակումէն, և պատերազմական զինուց ալ մթերանոց է։

Քաղաքիս մէջ կան երկու հրապարակներ. Կեավուր Մէյտան և Գավազ — Մէյտան։ Առաջինը արևելեան արուարձանին մէջ քրիստոնէից թաղերուն մէջ է. ասոր չորս կողմերուն վրայ օրէ օր Նոր շինութիւններ աւելնալով իր՝ Նախկին ընդարձակութիւնը կորսուած է. և հիմա ունի միայն 280 քայլ երկայնութիւն և 150 քայլ լայնութիւն. ասոր կեդրոն տեղը Շատրւան մը կայ, չորս հին մարմարիոն սիւներու վրայ հաստատած լայն կամարակապ շէնք մը, որուն ջուրը դադրած է հիմա. Երկրորդն ալ՝ արևմտեան արուարձանին մէջ՝ Այա Սօֆիայի մօտ է, և առաջինէն վեց անգամ աւելի ընդարձակ. Պայրամի օրեր այս հրապարակները՝ կը լեցուին պարզող խուռն բազմութիւն։ Կան պտղալից ծառերով զուարճալի ընդարձակ զբօսավայրեր, ուր քաղաքացիք միշտ կը յաճախեն մանաւանդ կիրակի օրերը։ Արևմտեան արուարձանին մէջ՝ Այա — Սօֆիա, Գավազ — Մէյտան և Թէօթէքէր — Զօյլը թաղերուն պարտէզները. Գօուլէ պօյը, Եէնի — Ճամի և պօզ — Թէփէ թաղերուն պարտէզները արևելեան արուարձանի՝ Տէյիրմէն — տէրէ քէօփրիւսիին շրջակայ վայրերը՝ որ թէպէտ ծառազարդ չեն, բայց մէջէն հոսող գետին խոխոջաւոր ընթացքովը զուարճալի զբօսավայր եղած են։

Տրապիզոն Մօլօզէն մինչև Իլէուսա ունի եօթն Նա-

ւահանգիստ․ որք են, Մօլօզ, Մումխանէ — եալը, Քեմեր — ալթը, Թուզ — իսկէլէ, Թուզլու — չէշմէ, Գավուր — չէմիլէյի․ այս վերջինը արեւելեան կողմն է և միւսներէն ընդարձակ ու ապահով, բայց ծանծաղ և արեւմտեան հիւսիսային սաստիկ հովերուն առջև գտնուելով՝ նաւերը չեն կրնար հոն ձմերել․ ուստի կը պարտաւորին երթալ Սիւրմէնէ կամ փլաթանա ձմեռն անցունել․ Ամենէն բանուկ նաւահանգիստներն են Մումխանէ — եալը և Մօլօզ․ Ծովեզերքներուն վրայ տեղ տեղ բնական ապաւաժներ կան․ Քաղաքին մէջէն կանցնի երկու ձորակ և երկու գետակ․ Երկու գետակները կանցնին բերդին երկու կողմի խորաձորներուն մէջէն․ երկու ձորակներն ալ՝ արեւելեան արուարձանին մէջէն․ ձորակին մէկը քաղաքին արեւելեան ծայրն է, և 1000 քայլ ճամբայ կընէ․ ասի զատ 'ի վայր հեղեղատ մ'է, որ կըսկըսի Պօզ — Թէփէ լերան արեւմտեան հիւսիսային կողմէն և համանուն թաղէն անցնելով կիջնէ Չէօմլէկճի թաղը, և շատ տեղ տուներու ու ճամփներու տակէ անցնելով կը թափի ծովը․ Միւս ձորակն ալ Պօզ — Թէփէ լերան արեւմտեան կողմէն կ'սկսի և Եէնի — ճումա թաղին համանուն մզկիթին հիւսիսային կողմէն և շատ տեղ ալ շէնքերու տակէ անցնելով կը հասնի Չարշը — համամ, անկէ ալ նոյն ձևով կիջնէ Թապագ — հանէ ու կը խառնուի Գուզգուն — տէրէ․ Երկու ձորակներն ալ սակաւաջուր են, և ընթացքնին կարճ․ Գետակին մէկը՝ քաղաքին ճիշդ միջավայրէն կանցնի, և կը կոչուի Գուզգուն — տէրէ․ այս գետակը Պօզ — Թէփէ լերան արեւմտեան հարաւային կողմէն, ըսել է քաղաքին արեւելեան հարաւային սահմանէն կէս ժամ հեռուէն կ'սկսի, և Եէնի — ճումա թաղին ու բերդին մէջ տեղէն անցնելով կը ձևացունէ բերդին արեւելեան խորաձորը․ դէպ 'ի հիւսիս մէկ ժամու չափ ճամբայ առնելով կը հասնի

քիչ ջուրով Մումճուն — Եօնի- Նաւահանգստի առջևի ծովը ։ Միւս գետակն ալ կը կոչուի Իչկէմ — Փօշ· կ'սկսի Տրապիզոնէն մէկ ժամ հեռի հարաւային կողմէն, և քաղաքին մտենալով կը մեծնայ ու կը ձևացունէ բերդին արևմտեան խորաձորը, և վերջը բաւական ջուրով կանցնի ներքնաբերդին մէջէն ու ծովը կը թափի Մօլօզի դուռնէն ։

Տրապիզոնի ամէն կողմի փողոցներուն մէջ կը գըտնուին աղբիւրներ այլ և այլ ջուրերու, մանաւանդ Տէյէրմէն — տէրէսի ու Ձիւրմէրայի ջուրերուն ։ Ամենէն առատ և քաղաքացւոց առ հասարակ գործածած ջուրը Տէյէրմէն — տէրէսի գետինն է ․ Այս ջուրը՝ քաղաքէն 3 ժամ հեռի՝ Խօշ — օղլուն ըսուած տեղէն՝ լայն ու ամրածածուկ ջրանցքով մը գալով կը թափի նախ Կեավուր — Մէյտանի արևելեան ծայրը մեծ ու հաստաշէն ջըրբաշխի մը մէջ, անկէ ալ իր մեծ մասը Գուլէ — Պաշը էն բարձր կամուրջի մը վրայէն կանցնի բերդին մէջ ․ մնացածն ալ քաղաքին այլ և այլ թաղերուն փողոցներուն և տուներուն կը բաժնուի ։ Այս ջուրը՝ 23 տարի առաջ խաղնատար օղլու Օսման փաշա անուն անձը բերել տուած է իր ծախքովը, որուն ջրանցքներուն նորոգութեանը պէտքին համար ալ կալուածներ յատկացուցած է ․ անկէ առաջ քաղաքացիք շատ նեղութիւն կը կրէին ․ հիմա ալ երբեմն այս ջուրին կտրած ատեն դարձեալ կը նեղուին ։ Այս ջուրը բարձրը թաղերուն մէջ գացած չըլլալուն համար՝ նոյն թաղեցիք միշտ ջուրի նեղութիւն կը կրեն ։ Այս ջուրին յատկութիւնները աղէկ չեն ․ անձրևի ատեն մէկ քանի օր հետը կարմիր տիղմ մը կը բերէ՝ որ աղբիւրները կը լեցունէ ։

Ձիւրմէրայի ջուրը՝ 2 ժամ հեռի համանուն գիւղէն խողովակներով բերած և աղբիւրներու բաշխած

են , որուն վերջին ծայրը Ուզուն — Մօլլա փողոցին հին աղբիւրը հասած է . այս ջուրը աղէկ՝ բայց քիչ է , միայն Նէնէ — Ճամուր աղբիւրներուն ու տուներուն կը բաւէ ։

Երեւելի աղբիւրներն են . Խումար , Այ — Ցիւլէրօ աղբիւրը . յոյն եպիսկոպոսի մը աղջիկ չինել տուած է . ասոր վրայ 1500 տարուայ յիշատակարան կայ ։ Թէբրաշէ Պուչէ աղբիւրներ և Հաճի Օսման Գույուսը ջրհորը որ Չէօմլէկճի և Այ-Ցիւլէրօ թաղերուն մէջ են ։ Թաշ-Նըլը ճամիէ բարեհամ աղբիւրը՝ Պօղ — Բէքէ թաղին մէջ ։ Գուզլուղ — տէրէ աղբիւրը . Գուլէ դրան դէմ ձորին մէջ ։ Այա — Սօֆիա ճամիին հարաւային կողմի պարտէզներուն մէջ՝ ճամբուն վրայ գտնուած երկու աղբիւրները ։ Կլիման բարեխառն է . օդն ընդհանրապէս լաւ . երկինքը մաքրախլապատ , ծովեզերեայ թաղերուն օդը խոնաւ ու վատառողջ . բարձր թաղերունը խոնաւ՝ բայց առողջ ։ Օդին այսպէս խոնաւութիւնն ու երկինքին մառախլապատութիւնը մինչև Պոնտական լեռներուն կատարները կը հասնին . լեռներուն միւս երեսի , այսինքն , հարաւակողմի օդը միշտ չոր է դրեթէ , և երկինքը բաց . վասն զի հեռի են ծովէն ու անտառներէն ։ Տիրող հովերն են արեւելեան , հիւսիսային , արեւմտեան և հարաւային հովերը . օգոստոսէն ետքը գիշեր ցորեկ լեռներուն հարաւային հովերը կը փչեն ։ Ձմեռը մէկ քանի օրէն աւելի ձիւն չը նստիր ։

Տրապիզոնի բնակիչներն ընդհանրապէս քաղաքավար , բարեբարոյ , աչալուրջ , աշխոյժ և աշխատասէր մարդիկ են . ո՛չ զդեստի համար զեղխութիւն ունին , և ո՛չ ուտելիքի և ըմպելիքի շռայլութիւն ։ Յոյներն աւելի ուսումնասէր , գործունեայ և արթուն, բայց անապանծ , հպարտ ու արհամարհոտ են ։ Հայերն ուսումնասէր , աշխատասէր , գործունեայ , լեզուագիտու-

թեան փափաքող։ Տաճկաց մեծ ՟մասը՝ [illegible], ղե-[illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible] են աղքատ վիճակի մէջ․ փոքր մասն ալ դաշաղ, էքտար, չուհաճի և վաճառական։ Յունաց արհեստաւորներն են բրուտ, ատաղձագործ, նաւակերտ, որմնադիր ու քարահատ։ Հայոց արհեստներն են պղնձագործութիւն, ամեն տեսակ ոստայնանկութիւն բամպակի ու մետաքսի, հողագործութիւն, հիւսնութիւն, սափրչութիւն, ներկարարութիւն։ Յունաց և Հայոց խառն արհեստներն են ոսկերչութիւն, ասիական ու եւրոպական հագուստներու դերձակութիւն, սօլկարութիւն, դունտուրաճութիւն, դարբնութիւն, մալիֆաթուրաճութիւն և նաւաստութիւն։ Վաճառականութիւնը յունաց և տաճկաց ձեռքն է։ Քաղաքիս առևտուրը Սև ծովի ամէն կողմերուն հետ է, և իր յարաբերութեան գլխաւոր տեղերն են Կ․ Պօլիս․ ուրկէ կուգայ եւրոպական ամէն տեսակ ապրանքներ, հագնելիք, զէնք, երկաթեղէններ, առագաստի կտաւ, չուան, շաքար ևլն ևլն։

Ռումելի և Թունայ․ ուրկէ կ'առնէ ցորեն, հաճար, լաղուտ, մեղր, դառան և ոլի և արջառաց միրթ, Ռումելիի երկաթ, երկաթեղէն ապրանք, ապա, ևլն։ ՟

Կերճ և Ռաստով․ ուրկէ պատուական ցորեն, ալիւր, մաքարօն, ղալեթա, բուրդ, հաստ տախտակ, կաշի, աղ, ձող, երկաթ ևլն։

Չերքէզ և Վրաստան․ ուրկէ՝ լաղուտ, ցորեն, իւղ, մեղր, մոմ, ևլն։

Սօխում և Պաթում․ ուրկէ՝ թիրսի ձուկ։

Թրիպօլի և շրջակայները․ ուրկէ՝ առատ գինի, բրինձ, ամեն տեսակ պտուղ և ատաղձ։

Ճէնիկ, Օրտու և Սամսօն․ ուրկէ՝ ցորեն, ալիւր, բրինձ և շատ թիւթիւն։

Սինապ․ ուրկէ՝ տախտակ, տառաղձ և շագանակ։

Կղզիները․ ուրկէ՝ սապօն, ձէթ, ձիթուն, գինի, լիմօն ևլն։

Պոնտոսի ծովեզերքները․ ուրկէ՝ ամեն տեսակ ուտելիք և պտուղներ։

Ցամաքի կողմէն ալ գլխաւոր յարաբերութեանց երկիրներն են․

Բաբերդ, Երզնկա, Դերջան և Կարին․ ուրկէ կուգայ ցորեն, գարի, ալիւր, ամէն տեսակ պտղեղէն և կթեղէն։

Կիւմիւշխանէ․ ուրկէ՝ պատուական տանձ, խնձոր, չոր թութ և ուրիշ պտուղներ։

Հալէպ, Շամ, Տիարպէքիր․ ուրկէ՝ կապոյտ կըտաւ, ամէն տեսակ կէզի, ղութնի, և թարապուլուսի գօտի։

Մուսուլ․ ուրկէ՝ սաւան բամպակէ։

Պարսկաստան․ ուրկէ՝ ամէն տեսակ բրդեղէն, շալ, մետաքսեայ գործուածներ, թէմպէքի։

Տրապիզոն քաղաքին ու գաւառին բերքերն են գլխաւորապէս թիւթիւն, կաղին, լուբիա, քթան, աղնիւ իւղ, մոմ, կապոյտ կտաւ, քիչ մետաքս, մետաքսեայ գործուած, սաւան, հրձուկ, ձկան իւղ, գինի, խնձոր, փորթուքալ, լիմօն, սոխ, փաթաթէս, փալամուտ, լոր, ձու, մանած, կանեփ, ձէթ, ձիթուն։ Թիւթիւնը կը ղրկեն Թիֆլիզ, Կերճ, Երզնկա, Կարին, Պոլիս։ Կաղինն ու լուբիան՝ Պոլիս, Ռուսիա, Հայաստան․ իւղ, խնձոր, մոմ, լոր, ձու 'ի Պոլիս․ լիմօն, սոխ, փաթաթէս, փալամուտ 'ի Ռուսիա․ քթանը 'ի Հալէպ, 'ի Շամ, 'ի Պարսկաստան։

Տրապիզոնի բերդերուն ու մթերանոցներուն պահպանութիւնն և հսկողութիւնը մէկ քանի հարիւր Թօփճի ընտուած երկրացի զօրաց յանձնուած է․ ասոնք փո֊

փոխակլի գիւղերէն կուգան և շատ տարիներ կը վարեն այս պաշտօնը քաղաքացւոց ընկերութեամբն և վերջը ազատ կըլլան ։ Տրապիզոնի անմիջապէս արևելեան հարաւային կողմը կայ Պօղ — Բէթէ անուն ուղղաբերձ լեռը՝ Պոնտական լերանց (1) վերջին ծայրը , ծովին երեսէն 1000 ոտնաչափ բարձր . Այս լեռն ելնելու համար միայն մէկ ճանապարհ մը կայ արևմտեան կողմէն , ուրիշ կողմերէն անհնար է ելնել ։

Պօղ — Բէթէի հիւսիսային դիրքին արևմտեան կողմը զուարճալի տեսարան մը կը ներկայացունէ իր դալարագեղ վայելչութեամբը . իսկ արևելեան կողմը , այսինքն , Էլէուսայի հանդէպ՝ տխուր ու ահարկու պատկեր մը , Ղըռ — Պուրուն կոչուած իր երկարաձիգ ապառաժներուն պատճառաւ . այս ապառաժներուն վրայ կան վիմափոր բարձր մատուռներ և այազմա ։ Լերանը գագաթը լեռնադաշտակ մ՚ է կանաչազարդ , որուն կեդրոնը կիսաւեր վանք մը կայ յունաց , ընդարձակ

(1) Պոնտական լերինք՝ կըսուին այն լերանց գօտիները՝ որ Սև ծովի եզերքէն սկսեալ եւ հետզհետէ բարձրանալով կանջրպետուն հին Պոնտոսի եւ Խաղտեաց ահարկու սահմանները , եւ Պոնտոսի արեւելեան հարաւային մասը պարսպելով կը հասնին Աթինա ըսուած ծովեզերեայ աւանը , որ կը կարծուի՝ թէ հին Պոնտոսի արեւելեան սահմանագլուխն եղած ըլլայ . եւ արեւմտեան կողմէն ալ կը ձգին մինչեւ Ճանիկ նահանգը ։ Այս լեռներուն բարձր կատարներն են Զող — կէօլ եւ Գուրս — կաղան կոչուածները , Տրապիզոնէն 12 ժամ հեռի ։ Պոնտական լերանց հիւսիսային երեսն ընդհանրապէս անտառային է , իսկ հարաւային երեսի խիստ բարձր կողմերուն վրայ միայն ընդհանրապէս խիստ քիչ ծառ կը գըտնուի ։

շրջապարիսպներով, որոնց հիմայ հիմերը միայն կերե-ւին. Այս վանքին մօտ ջրհոր մը կայ և կիսով չափ լե-ցուած ու խանդարած. գետնափոր ճանապարհ մը՝ որ լերան արևելեան կողմի Ղըռ — Պալթալի վիմափոր եկեղեցին կը հանէր։ Վանքին մօտ ու արևելեան հիւ-սիսային կողմը՝ կայ Աճէմեան — Տէտէ գերեզմանն ու Տէր-վիշներու Մէվլէվիխանէ մը շինուած 1863 ին, որուն չորս կողմի վայրերը անտառանման զարդարած են պտղաւէտ ծա-ռերով.

Գաղըրըը և Զիղանայ լեռներէն երկու վտակ կիջնէ, որոնք Գալիեան ու Մաչկա ձորերէն անցնելով կուգան Միւհիւրճի ըսուած տեղը՝ Տրապիզոնէ 4 ժամ հեռու, և իրարու հետ միանալով կը շինեն Տէյիրմէն տէրէսի անուն գետը։ Այս գետը քաղաքիս արևելեան կողմէն կէս ժամ հեռուէն կանցնի ու կը թափի ծովը, ծովեզերքին մօտ երկու կարգ բազմաթիւ ջրաղացներ դարձունելով։ Ծովէն կէս մղոն հեռու, ջրաղացներուն արևելեան կող-մին մօտ գետին վրայ հաստատ ու գեղեցիկ կամուրջ մը շինուած է չորս բարձր կամարով։ Կամուրջին շրջա-կայ վայրերը դաշտաձև գեղեցիկ հովտի մը վայելուչ տեսարանն ունին. ասոնց դալարագեղ ճոխ անդաս-տանները, ջրաղացներուն առուներուն եզերքները բու-սած վարսաւոր ուռիներն ու երերուն հսկայ կաղա-մախները, առուներուն ու գետին խոխոջաւոր ձայները զուարճալի զբօսավայր մը կը ներկայացունեն, ուր ա-մէն կիրակի խուռն բազմութիւն մը կը դիմէ։ Տրապիզոնէ 1 ժամ հեռու արևելեան հարաւային կողմը՝ բլուրի մը վրայ վանք մը կայ Հայոց, Ամենափրկիչ անուն. տաճ-կերէն չէմպէրլի մանաստըր, որուն հողը Ստեփաննոս Շէմսէտ-լեան անուն հայ իշխան մը՝ 1424 թուականին (պհգ Հայոց) Կիր Ալէքսի օրով՝ երբ հայերը սկսեր էին շատնալ քաղաքին մէջ, յոյներէն ծախու առնելով, կա-

ռուցեր էր այս վանքը ։ Եւ հաստատած էր միաբանութիւն մը՝ որուն յանձնած էր վանքն ու անդաստանները ։ Այս վանքը ունի մեծակառոյց քարաշէն եկեղեցի մը երեք մատուռներով, բարձր ու քարաշէն զանգակատուն մը. հիմայ մէջը միայն մէկ պահապան և մէկ ալ քահանայ կայ ։ Այս վանքը հին ատեն շատ ճոխ, հարուստ և ընդարձակ էր և ըստ մեծի մասին քարաշէն, ամուր պարիսպներով շրջապատեալ ։

Վանքին արևմտեան հարաւային կողմը և քիչ հեռի երկու աղբիւր կայ. կաթնաղբիւր և լուսաղբիւր. Ջուրը կտրած և ճամբաները խանդարած ։ Վանքին անդաստանաց արևմտեան հիւսիսային սահմանին վրայ բլրի մը ծայր կերևին սուրբ Մամաս անուն եկեղեցիի մը չորս կողմի պատերուն մնացորդները, զոր հիմայ Ուռում քիլիսէ կանուանեն. Հայերը՝ Անիէն և Շամշիլնէն Տրապիզոն գաղթած ատեն՝ կերևի որ նախ հոս հաստատած են իրենց բնակութիւնն և երկար ժամանակ անցնելէ վերջը մտած են քաղաքը ։

Ցամաքի կողմէն Տրապիզոն երթևեկելու համար երեք ճանապարհ կայ. արևելեան, արևմտեան, հարաւային։ Արևելեան ճանապարհը Սիւրմէնէ կը հանէ. արևմտեանը՝ Բլաթանա. հարաւայինը՝ որ կըսուի Էրզրում եօլը, 'ի կարին։ Այս վերջին ճամբան՝ քաղաքին հարաւային կողմի Պօզ—Թէփէ թաղէն՝ համանուն լերան վրայ ելնելով դէպ առաջ կերթար. բայց հիմայ չը բանիր ։ վասն զի կառավարութիւնը անցորդաց դիւրութիւն ըլլալու համար մէկ քանի տարի առաջ նոր կառուղի ճանապարհ մը շինել տուաւ։ Այս նոր ճանապարհը՝ Այ— Ֆիլիպօ թաղէն սկսելով՝ կանցնի Էյլէնճէյէ կիրճը, անկէ կը դառնայ դէպ 'ի հարաւ և կիջնէ Տէյիրմէն տէրէսի ձորն ու գետին ձախ եզերքն 'ի վեր երթալով կը հասնի Խօշ—օղլան և մինչև Միւհիւրճի ըսուած տեղը 4 ժամ հեռի քաղաքէն, ուր կը նըս-

տին անցագրերու ու մաքսի քննիչները . այս տեղը կը միանան դէտի արեւելեան ու արեւմտեան ճիւղերը , ինչպէս նաեւ կարնոյ ամառնային ու ձմեռնային ճանապարհները . Կարնոյ ձմեռնային ճանապարհը՝ որ Կէմէչճանէ եօլը կըսուի , արեւմտեան կամ Մաչկայ ըսուած ձորէն կը բանի ։ Ամառնայինը՝ կամ Թաղէթլը-եօլը՝ արեւելեան կամ Գալլեան ձորէն ։ Այս երկու ճանապարհներն ալ դժուարուտ տեղեր ունին անցնելու ։

Ձմեռնային ճանապարհ կարնոյ.

Մէհէրճէէն Մաչկայէ ձորով 2 ժամ ճամբայ առնելով կերթաս Ճէվիզլիկ . անկէ 4 ժամ յառաջ երթալով՝ Եէր-Թէփէսի . անկէ ալ 2 ժամ դէպ 'ի հարաւ՝ Զիղանայ լերան ներքեւ՝ Պէքճիլէր ըսուած տեղը , ուր անտառները կը վերջանան. Պէքճիլէրէն ալ լերան միւս երեսն անցնելով 2 ժամու մէջ կը հասնիս Մադէն-խանլարը . անկէ 4 ժամ դէպ 'ի հարաւ Տօռալ գաւառի Արտասա աւանը. Արտասայէն դարձեալ դէպ 'ի հարաւ 6 ժամ Կիւմիւշխանէ քաղաքը . անկէ միշտ դէպ 'ի հարաւ ճամբայ շարունակելով 5 ժամէն Զէյնի կամ Մաշաթ օղլու գիւղը եւ մէկ ժամ հեռի Ճինէվիզ կամ կողանց դալէսի գիւղը . անկէ անդին Ֆալա թաղը լեռն անցնելով 4 ժամէն Պալախօռ եւ 2 ժամ անդին Լըճէ , ուրկէ 2 ժամ հեռի Բաբերդ . Տրապիզոնէ Բաբերդ այս ճամբան ճիշդ 38 ժամ է ։

Կարնոյ ամառնային ճանապարհ .

Մուհիւրճիէն 2 ժամ երթալով կը հասնիս Գուլլէան Զայինները . անկէ 4 ժամէն Կէմէչլէ լեռնագագաթը , 2 ժամէն Գաղըքլը լերան կեդրոնը . անկէ ալ 2 ժամու մէջ վար կիջնես Թաշ-Թէփէլէին գլուխը ։ Տաշ-Թէփէլէէն 2 ժամ դէպ 'ի հարաւ կը մտնես Զորաճի ձորն ու իջեւաններն , եւ 1 ժամ հեռի Բէշլի-եօլ ու իջեւանը . անկէ 5 ժամ շարունակ քալելով Քէֆ օղլու ըսուած ընդարձակ դաշտավայրը կը հասնիս Թորոսանց գիւղն ու իջեւան-

ներն . անկէ անդին կսկսի Բաբերդու արեւելեան դաշտը, որուն մէջ 2 ժամ յառաջ երթալով կը հանդիպիս Կո—ղէ . անկէ 2 ժամ ալ հեռի Վօրչահօն հայոց գիւղերը, և 2 ժամ ալ հեռի Բաբերդ . Տրապիզոնէ Բաբերդ այս ճամբան ճիշդ 28 ժամ կը տեւէ .

Երկու ուրիշ ամառնային ճամբայ ալ կայ . մէկը՝ Ուզ գաւառի գլուխէն անցնելով կը խառնուի Կիւմիւշ-ւէ միւս ճամբան . միւսը՝ Սիւրմէնէէն ու Գօրա—թէբէէն ուղղակի 'ի Բաբերդ .

Տրապիզոնէն 6 ժամ հեռի է Ճէվիզլիկ ըսուած տեղը : Այս անունով կը կոչուի նաև գաւառը, որ Գաւալթա գաւառի հարաւային կողմը կիյնայ ու կը բաժնուի Մաչկայ, Գալիեան, Կադըրֆ, Ջիկանոյ և Ուզ, իր մէջը գըտնուած երեւելի ձորերուն ու գիւղերուն անուններովը : Մաչկայի մէջ երեւելի է Լիվէրա գիւղը . այս գիւղը կը գտնուի 10 ժամ հեռի Տրապիզոնէն . ունի 3 վանք Մէյրէմ—Անա, Այ—Եանի, Այ—Եօրկի :

Ճէվիզլիկի սահմանը՝ հարաւային կողմէն Պոնտական լերանց բարձրաբերձ կատարն է, արեւելեան կողմէն՝ Գազըքըը Գարակապան, արեւմտեան կողմէն՝ Ջիղանա լեռը, ուրկէ կը բանի Կարնոյ ձմեռնային ճամբան :

Այս գաւառին բնակչաց մեծագոյն մասը յոյն է, մանաւանդ լեռներու կողմերը . Կէս կէս անուանեալ բազմաթիւ կեղծ տաճիկներ ալ կը գտնուէին երբեմն, որոնք ժամանակէ մը 'ի վեր քրիստոնէութիւննին յայտնելով յոյն եղած են : Գաւառիս հիւսիսակողմի Ջիկանոյ գիւղին բնակչաց խռովասիրութիւնն ու աւազակութիւնը հռչակեալ են . Բերքերն են՝ պատուական իւղ, պանիր, քթան, մոմ : Տրապիզոնէն 10 ժամ հեռի՝ Մաչկայի մէջ ու ճամբուն վրայ կը գտնուի Եէր—թէշէէ ըսուած տեղը . կամուրջին գտնուած տեղը խաներ ու խանութներ չի-

նուած են . հոս հանքային ջուրեր կը բղխին ։ Տրապիզոնէն 12 ժամ հեռի՝ Զիղանա լերան ստորոտն է Պէ-ձէլէր ըսուած տեղը, ուր միշտ պահապաններ կսպասեն աւազակաց ու ձեան հիւսի վտանգին համար ։ Լերան վրայ ալ պարիսպներ շինուած են ձեան հիւսի առաջքն առնելու համար. այս լերան միւս երեսն է Մօրէն խանլըրը, Պէքճիլէրէն 2 ժամ հեռի և Կրում անուն մեծ գիւղին մօտ . այս կողմերը կան առատ հանքեր պղնձի և այլն, ամէնն ալ երեսի վրայ մնացած ։ Մօրէն խանլըրէն 4 ժամ հեռի կը գտնուի Արտասա անուն Տօռուլ գաւառի աւանը . Արտասայի առջևէն կանցնի Կէ-մի-շխանէ գետը՝ որ կը կոչուի Խարշութ, և Թրիպօլիի մօտ կը թափի ծովը ։ Տօռուլ գաւառը կը գտնուի Մաչկայի ու Պօնտական լեռներուն հարաւային կողմը . արևելքէն ու հարաւէն սահմանակից է Կէ-մի-շ խանէ . ասոր հարաւային ու արևմտեան կողմերէն կանցնին Գօյլ—ջեօն ու Շէյրան։ Այս գաւառին երևելի գիւղը՝ Կրոմ է, որուն բնակիչներն որմնադիր են և 400 տարիէ 'ի վեր չարունակ գաղտնի քրիստոնեայ մնալով մէկ քանի տարի յառաջ կրօնից ազատութեան շնորհիւ յայտնի քրիստոնեայ եղած են ։ Արտասայի հարաւային կողմը 6 ժամ հեռի կը գտնուի Կիւմիւշ խանէ քաղաքը։

## ԿԻՒՄԻՒՇ ԽԱՆԷ

Այս քաղաքը լերան մը կողին վրայ շինուած է . բնակիչները տաճիկ, յոյն և 239 տուն ալ հայ . ունի ճամիներ, խաներ, բաղնիքներ, եկեղեցիներ յունաց և մէկ ալ հայոց յանուն սուրբ Աստուածածնի, կամարակապ հնաշէն ու հաստատ ։ Դպրոցներ իւրաքանչիւր ազգաց . հայոց դպրոցին մէջ 150 ի չափ աշակերտ կը կրթուի հասարակ ընթերցանութեամբ ու հայկաբա-

նութեամբ ։ Քաղաքին արտորայէն հիւսիսային կողմէն կ'անցնի Սաման—սու կամ Կէօմիշ խանէ գետը ։ Այս գետը Մէյլէնճէ կամ Ղալէօխ ըսուած տեղի լեռնէն կուգայ. գետին երկու կողմը՝ հարաւէն հիւսիս, Սօղուգ—պաղճէսիէն մինչև Խօրօզ լեռը 4 ժամ շարունակ կան գեղեցիկ պարտէզներ պտղաւէտ ծառերով զարդարուած, որոնց խնձորն ու տանձը, մանաւանդ հաճի—համզա ըսուած տանձը և ուրիշ պտուղներ պտուղները քաղաքին տաճիկ բնակչաց միակ ապրուստներն են ։ Քաղաքէն մէկ ժամ հեռի արևմտեան հիւսիսային կողմը հայոց վանք մը կայ գեղեցկաշէն, ամենափրկիչ անուն, որուն մէջ հիմայ միայն պահապան մը կայ ։ Քաղաքին շրջակայները կան առատ հանքեր արծաթի երեսի վրայ ձգած ։ Կէօմիշ խանէէն 5 ժամ հեռի հարաւային կողմը դէպ 'ի ձորագլուխը կը գտնուի Զիմօն կամ Մուրատ խան—օղլու գիւղը, որուն մօտէն կանցնի Երզնկու ճամբան ։ Մուրատ խան օղլուէն մէկ ժամ հեռի կը գտնուի Ճինիվիզ կամ Կօղանջ—Գօլէօ, գիւղը, որուն լերան վրայ ահագին բերդ մը կայ հին ժամանակէ մնացած ։ Այս կողմերուն բնակիչները Խալտ կը կոչուին հին Խաղտեաց անունովը, և ըստ մեծի մասին յոյն են, մնացածը տաճիկ ։ Յոյները՝ արհեստաւոր են անագօծող (ղալայճի) ևն. գըրեթէ ամէնն ալ օտարաշրջիկ. տաճիկները ջորեպան, վասն զի երկիրը ապառաժուտ է, ուրիշ կերպով չեն կրնար հոգալ ապրուստնին ։ Վերջին տարիներս բազմաթիւ յոյն գերդաստաններ Ռուսաստան գաղթեցին ։ Այս կողմերուն ջուրերը Կէօմիշ խանէէ գետը կը խառնուին. կողանցէն անդին է Գօփ—տաղը լեռը, ճիշդ 4 ժամ հեռի ալ Պալախօռ գիւղը. անկէ 2 ժամ հեռի Էրկի գիւղը կայ՝ որ Բաբերդէն ալ 2 ժամ հեռաւորութիւն ունի ։ Տըրապիզօնէն 10 ժամ հեռի է Կիմիչկի լեռը Գօճեան չայիրի ծայրը. անկէ 2 ժամ հեռի Գազըքլը լեռը, որուն միւս

երեսի ձորին մէջն է Տաշ—թէփէսի ըսուած չէն գիւղը · հոս Սանդացիք եկած բնակութիւն հաստատած են , և ունին եկեղեցի մը ։ Գալիեանի ձորերուն մէջ և Կիմիշ-կի ու Բաշ—թէփէսի շատ մը խաներ ու խանութներ կան։ Գապըքըլըի արևմտեան կողմն է Զաղր—կէօլ անուն երկ-նաքերձ լեռը · այս լերան գագաթին մօտ՝ մաքուր ու մնայուն ջուրով լիճ մը կայ բաւական ընդարձակ , և ուրիշ պատուական պաղ ջուրերու աղբիւրներ , գագա-թըն ալ յունաց ուխտատեղի մը ու աղբիւր մը ։ Տաշ—թէփէսիէն մէկ ժամ հեռու է արևելեան կողմն Սանդաի ձորը բարձր լեռներով շրջապատեալ · այս ձորին մէջ 8000 տունէ աւելի յունաց բնակութիւն կայ 7 թաղի բաժանեալ · գիւղին երկայնութիւնը մէկ ժամէն աւելի է · ամէն թաղի մէջ շատ եկեղեցի կայ ։ Տաշ—թէփէսիէն 2 ժամ հեռու հարաւային կողմը կը գտնուի Զորաքի ձորն ու խաներ · անկէ ալ մէկ ժամ հեռու Քէշիշ—քէօյն ու խանը · և անկէ 5 ժամ հեռու Թորոսանց գիւղն ու խաներ ճանապարհի վրայ · Քէշիշ—քէօյին ու Թորոսանցի մէջ տեղն է Գըլ—օվա ըսուած ընդարձակ լեռնադաշտը։ Այս դաշտին մէջ կայ երեք գերեզման Քըրք—այագ անուա-նով 40 ոտք երկայնութեամբ · վրանին ալ քար շարած · յայտնի չէ ատոնց ինչ գերեզմաններ ըլլալը · բայց ուխ-տատեղի է ամէն ազգաց և մանաւանդ տաճկաց ։ Այս կողմի ջուրերը Սիւրմէնէի կողմը կը վազեն ։ Թորոսան-ցէն կ՚սկսի Բաբերդու արևելեան դաշտը և 6 ժամ կը տևէ ։ Այս դաշտին մէջ Բաբերդ երթալու ճամբուն վրայ իրարմէ 2 ժամ հեռու կը գտնուին Նախ Կըրզի և Ետքը Վարզահան անուն հայոց գիւղերը ։

Տրապիզոնի արևելեան կողմը՝ Տէյիրմէն տէրէ էն ըս-կսեալ մինչև Եամ—պօլը գետի մէջ տեղը գտնուած երկիրը , որ 7 ժամ երկայնութիւն ունի , Գօվաթա կամ Խօմուրա անուն ծովեզերեայ գաւառն է · Այս գաւա-

ուր Հարաւային՝ կողմէն սահմանակից է Ճէվիզլիք գաւառին։ Ունի 6000 տուն բնակիչ. տաճիկ, յոյն. մեծագոյն մասը տաճիկ, գիւղերուն շատը տաճկաբնակ. Հայոց թիւը 2340, և 310 տուն։ Ամառնային նաւահանգիստ մը, բարձր լեռներ, գետեր, Շահ — տէրէսի, որուն գլուխը՝ Սամարաքսա և Ճօլարա գիւղերուն հարաւային կողմն է ծովէն 5 ժամ հեռի. Տռօնայի գետը Ուզ գաւառակի գլուխէն Այ — Եօք լեռնէն բղխելով՝ կիջնէ Ուզի ձորին մէջէն կալաֆկա և Տռօնա, ու կը թափի ծովը 10 ժամ ճամբայ ընելով։ Տռօնայի գետէն մինչև Եաս — պօլը գետին մէջ տեղը գտնուած երկիրը սոյն գաւառին բուն Եօմուրա կոչուած մասն է. Ծովեզերքի օդը շատ գէշ ու վատառողջ. Հողը տեղ տեղ բարեբեր. գլխաւոր բերքերն կաղին, ամէն տեսակ պտուղներ, մանաւանդ խնձոր. Եօմուրթա էլմասը, որ հեռի երկիրներ կը ղրկեն. Բնակիչներն ընդհանրապէս դառն աղքատութեան մատնուած. մշակութեան նոր ու դիւրին կերպերուն չը հետևելով իրենց հին անօգուտ ու դժուարին եղանակը կը գործածեն։ Մշակութիւննին ու սնունդնին միայն լազուտ է, մշակելու հողերնին ալ քիչ։ Ամառ ատեն իրենց ոչխարներն ու կովերը մէկտեղ Եայլա կերթան բարձր լեռներու գագաթը հիւղերու մէջ կը բնակին. գիւղերուն տուները իրարմէ շատ հեռի ու ցիրուցան չինուած ըլլալուն, և մանաւանդ բնակչաց աղքատութեան պատճառաւ տղայոց կրթութեան համար դպրոց ալ չունին գրեթէ։ Պէտք է գիտնալ որ ո՛չ միայն այս գաւառը, այլ Պոնտական գաւառներուն մեծագոյն մասը մշակութեան յարմարութիւն չունի, վասն զի երկիրն ըստ մեծի մասին քարոտ ու անգործելի հողով կամ անտառներով ծածկած է. Նոյնպէս և գիւղերուն տուներն ալ ցիրուցան չինուած են, անանկ որ

չատ գիւղի երկայնութիւն 3 ժամէն աւելի կը տևէ, և մի և նոյն գիւղը՝ լեռներով շրջապատեալ այլ և այլ ձորերու մէջ շինուած ըլլալով՝ դաւառակ մը դարձած է։ Գիւղերուն թաղերը՝ ձորերով ու լեռներով իրարմէ բաժնուած, տուներն անգամ իրարմէ հարիւրաւոր քայլ հեռի ու անտառներով շրջապատեալ են։ Հօն իւրաքանչիւր ընտանիք՝ իր բնակարանը իր ընդարձակ ժայռուտ ու անտառախիտ կալուածին կեդրօն տեղը և կամ յարմար եզերքին վրայ հաստատած, կը տիրէ անոր մէջ իբրև իշխան առանձին երկրի մը. ասկէ յառաջ եկած է Պօնտացւոց առանձնասիրութեան ոգին, աւազակաբարոյութիւնն ու խոր ու թանձր տգիտութիւնը։

Գօվաթայ գաւառին գլխաւոր տեղն է Գօվաթա, ուր կը նստի միւտիրը։ Եւ հայոց երևելի գիւղերն են Ստեփանոս, Շանա, Սամարուքսա, Կալաֆկա և Ուզ։

Ստեփանոս քաղաքէն 2 ժամ հեռի արևելեան հարաւային կողմը. ունի 42 տուն, 489 բնակիչ, որուն 255 ը այր. մէկ եկեղեցի կամարաշէն նոր ու գեղեցիկ սուրբ Թէոդորոս անուն։ Սամարուքսա. Ստեփանոսէն 2 ժամ հեռի արևելեան հարաւային կողմը. ունի 78 տուն և 416 բնակիչ, որուն 250 ը այր. մէկ եկեղեցի նորաշէն Սուրբ Լուսաւորիչ անուն, գիւղին հարաւային ծայրը Ըսկաֆիա թաղին մէջ։

Շանա, ունի 74 տուն, 635 բնակիչ, որուն 336 ը այր, երեք եկեղեցի, որոնց գլխաւորն է Սուրբ Սարգիս, մեծ, կամարաշէն 4 սիւներու վրայ հաստատած։ Կալաֆկա, Շանայի սահմանակից արևելեան հարաւէն, ունի մէկ նորաշէն եկեղեցի Սուրբ Գէորգ։ Ուզ, Կալաֆկայի հարաւային կողմը. ունի մէկ կիսաշէն եկեղեցի մը, Սուրբ Լուսաւորիչ անուն։ Կալաֆկայի և Ուզի մէջ 85 տուն կայ և բնակչաց թիւն է 538, ո-

րուն 289 ը այր է ։

Տրապիզոնի գիւղերը՝ ինչպէս որ նկարագրեցի, խիստ տարածուած են, և եկեղեցիներն ալ անոնց կեդրոնը չինուած են. ուստի ջերմեռանդ գիւղացիները եկեղեցի երթալու համար՝ կը պարտաւորին ժամերով ճամբայ քալել պաշարնին ալ հետ կրելով. Գօվալթայի արևելեան կողմը Գայլ գետէն սկսելով մինչև Մահոնա գետը, որ 5 ժամ կը տևէ, կը գտնուի Սիւրմէնէ ըսուած ծովեզերեայ գաւառը՝ Օֆի սահմանակից ։ Այս գաւառը Սև ծովէն, այսինքն, հիւսիսէն դէպ 'ի հարաւ Բաբերդի Թորոսանց լերան մինչև հիւսիսային երեսը կը հասնի, և 16 ժամ է տարածութիւնը ։ Սիւրմէնէ ունի դժուարամատոյց լեռներու գօտիներ՝ ուր կապատանին լեռնախոյներն ու յանդուգն հրոսակները. երեք ալ գետ, որք են. 1. Եամ պօլը՝ որ Զիգըր — կէօլ բարձր լեռնէն՝ Տաշ — քէօփրիւի ու Սանթայի մէջէն անցնելով կիջնէ Սէնձարա ձորը, անկէ կը թափի ծովը 17 ժամ ճամբայ ընելէ ետքը ։ 2. Գուրու — տէրէ՝ որ սկիզբ կառնէ Եաղմուր — տէրէսի ու Նարէթըլէ լեռներէն, և իր մէջը մէկ քանի վտակներ ընդունելով կանցնի Գուրու — տէրէ գաւառակէն ու Սէրմէնէ աւանին արևմտեան կողմէն կը թափի ծովը 16 ժամ ճամբայ ընելէն ետքը ։ 3. Քէօշէ — տէրէ՝ որ բարձրակատար Մաղանա — տաղէ էն սկսելով կիջնէ Զաղանա կամ Քէօշէ — տէրէ, և իր մէջը շատ վտակներ ընդունելով, կը թափի ծովը Խօսմուրկէն աւանի արևմտեան կողմէն 10 ժամ ճամբայ առնելէն ետքը ։ Սէրմէնէ երևելի տեղերն են Սինճար, Գարա — տէրէ, Սիւրմէնէ, Քիւչիւք — տէրէ, Խումուրկէն. և գլխաւոր տեղն է Սէրմէնէ Բազարը Գօվալթայի արևելեան կողմը 5 ժամ հեռի. ասոր արևմտեան կողմը կէս ժամ հեռի Որակլի ըսուած գիւղը կը նստի միւտիւրը ։ Սիւրմէնէ աւանը

ունի ապահով ու ընդարձակ նաւահանգիստ մը, բայց դժբաղդաբար տեսակ մը վնասակար փոքրիկ որդեր կը գտնուին մէջը՝ որ կապականեն նաւերը։ Սիւրմէնէի պազարը հինգշաբթի օրերը կը բացուի. և կը վաճառեն առատ ու պատուական իւղ, զոր կը ղրկեն հեռի երկիրներ մանաւանդ Կ. Պոլիս ընծայի համար, քըթան, մանած, դերձան, թել, առատ ձկան իւղ, զոր կը ղրկեն կարին և երբեմն ալ Կ. Պոլիս ճրագի գործածելու համար։

Այս գաւառը ունի 60 գիւղ, 8000 տուն բնակիչ, 6970 տուն տաճկաց, 1000 յունաց և 30 տուն հայոց։ Գաւառիս արդի տաճիկները՝ յառաջագոյն քրիստոնեայ էին, և մեծագոյն մասը ազգաւ հայ. 1715 թուականին ձգելով իրենց հաւատքն ընդունեցին տաճկական կրօնքը։ Ասոնց կէսէն աւելին մաքուր հայերէն կը խօսին մինչև հիմա. մանաւանդ կանայք, որ տաճկերէն ալ չեն հասկնար։ Նոքա քրիստոնէից հաւատքը կը յարգէին, քահանայները կը սիրէին ու ակնածութիւն կընէին. և 1859 թուականին ասոնց մէկ մասը՝ Տավլաշեան Տէր Կարապետ քահանայի ձեռօք Բ. Դըրան աղերսագիր տալով ձեռք բերաւ կրօնական ազատութիւնը։ Ան ատեն երկրին երևելի Տօլէօղլիները սպառնալով անոնց դէմ՝ սկսան տեսակ տեսակ հալածանքներ տալ ժողովրդեան. վանքերը քակեցին, հնաշէն եկեղեցիները հիմնայատակ կործանեցին, հայերէն խօսիլն ու հայոց սովորութիւնները խստիւ արգիլեցին։ Հաստատեցին տաճկական դպրոցներ տղայոց կրթութեան համար. բայց ժողովուրդը չը կրնալով հանդուրժել անոնց խստութեանցն ու հրամաններուն, խռովութիւն յարուց ու հալածեց Տօլէօղլիները. մէկ երկու տարի անցնելէն վերջն ալ խանգարեցան գոցուեցան տաճկական նորահաստատ դպրոցները։

Այս ժողովրդեան կրօնափոխութեանը սկզբնապատճառ եղած են Ղուռուֆ Մէհէմմէտ և Պէքեար անուն երկու մահմէտականներ․ ասոնք այս երկիրն ու մանաւանդ հայերը անտէր գտնելով, վասն զի հայերը ան ատեն Համշէն գաւառի հալածանքէն ճողոպրելով՝ խեղճ ու անզէն այս կողմերն ապաստանած էին, բռնացան երկրին վրայ ու սաստիկ հարկապահանջութիւններ ու չարաչար սպանութիւններ ընելով ժողովուրդը ահու սարսափի մէջ ձգեցին․ ասանկով ժողովուրդը; կեանքը ազատելու համար պարտաւորեցաւ կրօնափոխութեան դիմելու հետզհետէ։ Այս երկու անձինք՝ վերջը կրօնական ժողով մը հաստատեցին և զօրաց գունդեր կազմելով կարգաւ գիւղերը շուրջ եկան համարձակ․ քրիստոնեայները բռնաբար թլփատեցին, և հաւատք չընծայողները կողոպտեցին ու ըսպաննեցին․ այն հայերէն ոմանք գիշերանց մօրեմերկ փախուստ տալով Տրապիզոնի շրջակայ գիւղերը, Անկէճանիկ, Սինապ, և մինչև Ատաբազար ցրուեցան, որոնք հիմայ հայ մնացին։

Տեղւոյս ծերերը կը պատմեն՝ թէ Ղուռուֆ Մէհէմմէտ 40 գեղեցկահասակ ու զօրեղ քրիստոնեայ երիտասարդներ ընտրեր ու վերջին անգամ թլփատութեան շքեղ հանդէս մը կատարեր է Ծիմա ըսուած գիւղին մէջ։ Այն միջոցին գիւղին գետը երեք օր շարունակ կարմրաներկ հոսեր է։ Իսկ այս դէպքը Ղուռուֆի մահուան պատճառ եղեր է։ Վասն զի կըսեն որ ընդհանուր գաւառին մահմէտականները Ղուռուֆի այս ըրած բռնութիւնը՝ մահմէտական կրօնքին հակառակ և հետևաբար այս տարօրինակ երևոյթին պատճառ համարելով իսկոյն անոր սպանմանը վճռուած են․ մէկ քանի օր ետքը՝ երբ Ղուռուֆ կը պատրաստուէր երթալ տաճկացունել հայոց վերջին

միացորդ փէրվանա գիւղին բնակիչներն ալ, մահմէտականք անմիջապէս 30 ի չափ սպառազինեալ քաջ դարանամուտներ ղրկեցին Ծիմաէն քառորդ մը հեռի կրճի մը գլուխ անոր անցնելիք ճամբուն վրայ զայն սպաննելու համար· չարաչար վիրաւորեցին Ղուռուֆը, մարմինն ալ՝ հոն գետինը ձգեցին անթաղ·

Սիւրմէնէի արևելեան կողմն է Օֆ անուն ընդարձակ գաւառը· արևելեան կողմէն Իրիզէի և հարաւային կողմէն Սպիրի սահմանակից· այս վերջինէն Պոնտական լերանց գօտիովը զատուած։ Օֆի ծովեզերեայ երկայնութիւնը 3 ժամ է, ծովեզերքէն խորութիւնը 18 ժամ։ Ունի անտառախիտ դժուարին լեռներ· 3 գետ· Օֆ տէրէսի, Գալոս և Գարա — տէրէ· գլխաւոր տեղն է Օֆ — պազարին՝ ուր առևտուր կըլլայ կիրակի օրեր։ Գլխաւոր բերքերն են քթան, մանած և իւղ։ Կայ 11,000 տաճիկ բնակիչ, կարդացող ու կախարդմարդիկ· լեզունին յունարէն։ Ասոնք Ցամթիի ժամանակ բռնութեամբ մահմէտական եղած են։ Օֆի աղէկ նաւահանգիստ մը չունի։ Արևելեան կողմը կը գտնուի Իրիզէ կամ Րիզէ գաւառը· արևելեան կողմէն Աթինայի, հարաւէն Համշէն գաւառի արևմտեան լեռներուն սահմանակից։ Ունի 15 ժամու չափ ծովեզերեայ երկայնութիւն մինչև Քէմէր· նոյն չափ ալ խորութիւն մինչև Համշէնի լեռը։ Կան բարձրաբերձ անառիկ լեռներ· մէկ քանի գետ, ունի 12,000 տուն բնակիչ· 11,000 էն աւելի տաճիկ՝ միացածը յոյն· ամէնն ալ աւազակաբարոյ, ոխակալ ու խորամանկ։ Գըլխաւոր գիւղաքաղաքն է Րիզէ, Տրապիզոնէն 20 ժամ հեռի· բնակչաց մեծագոյն մասը տաճիկ, միացածը յոյն· ընդհանրապէս երկրագործ և աղքատ· մէկ փոքըր մասն ալ սանտալճի և վաճառական· առաջ հոս հայեր ալ կը գտնուէին, որոնք վերջը Տրապիզոն գաղ-

թած են ։ Րիզէ ունի կանոնաւոր չուկայ և տօնավաճառի օր ։ Բերքերն են առատ ու պտուական քըթան, մանած, կանեփ, առատ ձկան իւղ և փայտ, լիմոն ու փորթուգալ ։

Րիզէի ու Օթինայի մէջ տեղն է Գէմէր Տրապիզոնի սահմանագլուխը ։ Րիզէէն 10 ժամ հեռի է Աթինա աւանը․ ասոր ալ հարաւային կողմը 12 ժամ հեռի կը գտնուի Համշէն գաւառը ։ Աթինա ուրբաթ օրեր մեծ բազր կըլլայ, ուր բազմաթիւ մարդիկ Համշէնէն կը դիմեն առևտուրի համար ։ Աթինայի բերքն է ձկան իւղ․ մանած, ուռկան, մոմ, որ գլխաւորապէս Համշէնէն կը բերեն ։ Այս կողմի բնակիչները Լազ կը կոչուին․ ամէնն ալ տաճիկ, ու քաջ, առևտուրի յարմար ու յաջողակ․ Մնկուէլի լեզուաւ կը խօսին, տաճկերէն ալ գիտեն․ ասոնցմէ շատերը օտար երկիրներու մէջ վաճառականութիւն ընելու կերթան ։ Այս գաւառը ունի երկնաքերձ, դժուարամատչելի և անտառախիտ լեռներ․ մէկ ալ գետ Ֆուրնուտ — տէրէսի անուն ։

Համշէն՝ բարձրաբերձ ու անմատչելի լեռներով շըրջապատեալ գաւառ մ՚է․ ունի 70 էն աւելի գիւղ և 6000 տուն բնակիչ մահմէտական ։ Բնակիչները հայերէն կը խօսին, մանաւանդ կանայք, որոնց շատը տաճկերէն ալ չեն հասկնար։ Ասոնց տաճկանալը՝ Սիւրմէնէի ու Գօրօ տէրէսի բնակչաց տաճկութենէն շատ առաջ է ։ Գաւառիս մէջ հիմա միայն Էլէհովիտ գիւղին մէջ մէկ քանի տուն հայ և մէկ քանի տուն ալ կէսը հայ և կէսը տաճիկ գերդաստաններ մնացեր են ։ Գաւառիս բնակչաց շատը օտար երկիրներու մէջ հացագործութիւն կընեն ։

Տրապիզոնի շրջապատը Տէյիրմէն—տէրէ գետին ձախ եզերքը Աղճապատ գաւառ կը կոչուի ։ Ունի շատ գիւղեր, 5000 տան չափ բնակիչ տաճիկ, յոյն, դրեթէ հաւասար թուով, և 312 տուն հայ․ կան ամուր լեռներ,

և 2 գետ․ Սէրա և Կալանիմա։ Սէրա գետին ջուրը շատ աղէկ է․ այս գետին ընթացքը 10 ժամ է․ կը թափի Սև ծով Տրապիզոնէն 2 ժամ հեռի արևմտեան կողմէն․ Կալանիմա գետը Սէրայի ու Փլաթանայի մէջ տեղն է․ 9 ժամ է ընթացքը․ կը թափի Սև ծով։ Գլխաւոր բերքերն են առատ ծխախոտ, որ Թիֆլիզ կը ղրկեն։ Գաւառական ձէթ և ձիթապտուղ․ սպիտակ լուբիա, խուղ, հաւ, հաւկիթ, տախտակ։ Աղճապատի շահաւոր վաճառատեղին ու գլխաւոր աւանն է Փլաթանա, Տրապիզոնի արևմտեան կողմը 3 ժամ հեռի։ Փլաթանա ունի զուարճալի դիրք, լաւ օդ, 500 տուն բնակիչ, մեծ մասը յոյն, մեծ շուկայ, շաբաթ ու կիրակի օրերը մեծ տօնավաճառ․ ընդարձակ և ձմեռուան մէջ ապահով նաւահանգիստ։ Այս գաւառին մէջ գտնուած հայոց երևելի գիւղերն են․ Սաթարիա, Կալանիմա ձորին վրայ 48 տուն, և 600 բնակիչ։ Մալա․ Սէրայի ձորին վրայ 140 տուն, 1400 բնակիչ մէկ եկեղեցի Սուրբ Լուսաւորիչ անուն։ Անիֆա․ Տէյիրմէն—տէրէի ձորին վրայ, 51 տուն, 670 բնակիչ, 1 եկեղեցի Սուրբ Գէորգ անուն։ Վէրանա․ Տէյիրմէն տէրէի ձորին վրայ 93 տուն, 693 բնակիչ, 1 եկեղեցի Սուրբ Սարգիս անուն։

Փլաթանայի արևմտեան կողմը 15 ժամ հեռի, այսինքն, Տրապիզոնէն 18 ժամ հեռի կը գտնուի Էլէու գիւղը․ այս գիւղին մէջ բաւական առևտուր կըլլայ, ունի շուկայ մը․ հոս ալ մէկ քանի տուն հայ կայ․ Փլաթանայի և Էլէուի մէջ տեղ կը գտնուին Ագճէ—Գալէ, Պէօյիւք—Լիման և Ֆօլ ըսուած ծովեզերեայ երևելի տօնավաճառի տեղերը՝ որ ունին առևտուրի համար յատուկ օրեր։ Ֆօլի մէջ մէկ քանի տուն հայ բնակիչ կայ Թամզարայէն գաղթած։ Ֆօլ Տրապիզոնի արևմտեան կողմն է 11 ժամ հեռի և Էլէուին արևելեան կողմը 7 ժամ հեռի։ Օդը գէշ․ ամառ ատեն բնակիչները լեռը կել‿

նեն ։ Ելէուին արեւմտեան կողմը 6 ժամ հեռու կը գըտ-
նուի Թիրիպօլի բարձրադիր ու ընդարձակ քաղաքը. բը-
նակիչները տաճիկ, յոյն եւ 40 տուն ալ հայ՝ որ ունին
քարաշէն եկեղեցի մը, կրկնայարկ դպրոց մը, եւ կըղ-
բայլին առեւտրով ։ Օդը գէշ չէ. ունի չուկայ մը, 3 հին
բերդ. փոքրիկ նաւահանգիստ մը. պղնձի հանք. բեր-
քերն են առատ կաղին, գինի, բրինձ, ատաղձ ։

Թիրիպօլիի արեւմտեան կողմը 12 ժամ հեռու կը գըտ-
նուի Կիրասոն քաղաքը. ասի Թիրիպօլիէն աւելի մեծ է,
եւ իր դիրքն ալ շատ գեղեցիկ է. ունի հին բերդ մը
ապառաժի վրայ եւ մէկ ալ նաւահանգիստ ։ Բնակիչնե-
րը տաճիկ, յոյն եւ հայ ։ Հայոց թիւը 584 եւ 89 տուն.
հայերը Թամզարայէն գաղթած են հոս, կ՚զբաղին առ-
ւեւտրով եւ ունին 2 եկեղեցի եւ մէկ դպրոց ։

Տրապիզոն կեցանք 13 օր. այս միջոցին հիւպա-
տոսներն ու քաղաքին երեւելի անձինք այցելութեան ե-
կան, եւ փոխադարձ այցելութիւններ եղան ։

Հոկտեմբեր 22 ին մեծ ու շքեղ հանդէսով իջանք
նաւահանգիստն ու մտանք Նէմչէին Լոյդ ընկերութեան
շոգենաւն. եւ ժամը 6 ին պարզ ու գեղեցիկ օդով մը
քաղաքէն մեկնելով, 72 ժամ նաւարկելէն ետեւ հասանք
ու մտանք Կ.Պօլիս հոկտեմբեր 25, ժամը 6 ին ։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Տեղեկութիւնք Եփրատ եւ Տիգրիս գետերուն վրայ.



## Ա.

### ԵՓՐԱՏ ԿԱՄ ՄՈՒՐԱՏ

*Ասիական Տաճկաստանի ամենէն մեծ գետն է՝ որ կը շինուի Հայաստանի այլ և այլ կողմերէն բղխեալ մեծ վտակներէ։ Առաջին վտակը կը բղխի Պայազիտ գաւառին մէջ, Տիատին գիւղաքաղաքին մօտ Ալատաղի ոսկի լեռներէն (կորդուաց լեռ). այս վտակը Եփրատի արեւելեան թեւն է, որ յատկապէս Մուրատ կը կոչուի։ Այս թեւը սկիզբները Զաղմուր կըսուի, որ կը քալէ դէպ 'ի Ալաշկերտ և կ'ընդունի շատ մը վտակներ. առաջին Շէռեան. անկէ կիջնէ Խամուր, կը քալէ դէպ 'ի Մէլազկերտ, անկէ ալ ուղղակի Մուշի դաշտին հիւսիսային կողմը. մինչև հոս կընդունի աջ կողմէն Դուզլա, Գալէ սու, Զարպուհուր, և ձախ կողմէն Բատիշանք կամ Մէլազկերտի ջուրը. ետքը Զարպուհուրէն վար կը դառնայ կընդունի Մուշի մեղրագետը. կիջնէ Կուրկուրէն և քիչ մը վար կընդունի Կինճ սու. և ետքը լեռնադաշտերու մէջէ անցնելով կերթայ Կապան Մատէնի մօտ. մինչև հոս կընդունի աջ կողմէն Ճապրղջուր սու և Լէլիկ (միւս Գայլ գետ. ըստ Նախնեաց) և շատ մը՝ ուրիշ վտակներ, և ձախ կողմէն Խարբերդի գաւառին վտակները. այս առաջին թեւը հոս Կապան Մատէնի մօտ կը խառնուի Եփրատի միւս վտակին հետ։ Իսկ երկրորդ*

վտակը Էրզրումի արեւելեան հիւսիսային կողմի լեռներէն բղխեալ քանի մը գետակներէ կը շինուի , որոց մէկը՝ որ Սեւ Ջուր (քարա սու) կըսուի , Տումլու լեռնէն կիջնէ . միւսը Սարչամու ջուր՝ որ Սալիբոյ լեռներէն կը բղխէ . այս երկու գետակները կուգան Էրզրումի դաշտին մէջ իրարու հետ կը միանան . այս միաւորութենէ ետքը՝ գետը մէկ անունով Սեւ Ջուր կը կոչուի ու կիջնէ 'ի Դերջան , որուն ձախ կողմէն իր մէջը կընդունի Դերջանի գետը . անկէ ետքը Եփրատ տաճկերէն Ֆըրաթ— անունը կառնէ , կընթանայ մինչեւ Երզնկա , անկէ ալ մինչեւ Կապան Մատէն , անցնելով Կամախէն , Էկինէն եւ Արաբկերէն . աջ կողմէն կընդունի իր մէջը Գայլ գետը՝ որ Երզնկայի քովէն կանցնի , Քէօմիւր—սու , Քուրուչայ , Գարաբունար , Գուրմա , Ոսկիգետակ Արաբկերի քովէն , եւ ուրիշ փոքրիկ գետակներ . իսկ ձախ կողմէն Պինկէօլ—սու իր գլխաւոր օժանդակը եւ Կապան Մատէնէն քիչ մը վեր կը միանայ միւս թեւին հետ , այսինքն Մուրատի հետ ։

Եփրատ՝ այս երկու բազուկներուն միաւորութեամբը ստուարացեալ կառոգէ Էրզրումի նահանգը , կը զատէ Տիարպէքիրի փաշայութիւնը Սըվազի ու Մարաշիններէն . կընթանայ բովանդակ Միջագետի մէջ Ասորեստան եւ Բաբելոն . կը թրջէ Սէմիզաթ , Պիր , Պէլէս , Ռաքքա , Քերքիզիէն , Աննա , Հիթ , Հիլլա , Տավանիէհ , Սամավա քաղաքները ։ Երկու թեւերուն միաւորութենէն ետքը Եփրատ կընդունի արեւմտեան կողմէն Գարայ—սու եւ արեւելեան կողմէն Քապուր ։

Պաղտատէն ութ աւուր ճամբայ վար Քուրնայի առջեւ միանալով Տիգրիսի հետ կը շինէ Շաթ—իւլ—Արապ , (գետ արաբացւոց) որ Պասրաէն մէկ ու կէս օր վար՝ կը թափի Պարսկաց ծոցը հինգ գետաբերաններով ։ Շաթ—իւլ—Արապի մէջ կը բացուի Քերքահ գետը ։

Եփրատ ունի 1,850,000 մէթրօ երկայնութիւն։

Եփրատ և Տիգրիս գետերուն մէջ տեղը գտնուած ընդարձակ երկիրը կըսուի Ալ ճէզիրէհ, այսինքն, կղզի, որ ՚ի հնումն Միջագետք կամ Մեզոբոթամի կանուանէր։ Միջագետի մէջ կան շատ մը առաջներ կամ ջրանցքներ, որոնց մէկ քանին պարսից և այլոց ձեռագործներն են. կան՝ որ ինքնիրեննուն գոյացեր են։ Այս առաջները զԵփրատի ջուրը Տիգրիսի հետ կը հաղորդեն։ Եփրատ Պասրայի առջև մղոնի մը չափ լայնութիւն ունի, որ մակընթացութեան ժամանակ կ՚աւելնայ։ Ընթացքը վերի կողմերուն մէջ արագ է, իսկ վարի կողմերուն մէջ նուազ։ Գարնան մէջ գետին ջուրը կառատանայ և արաբացւոց դաշտավայրին մէջ եղեգնուտ ճահիճներ ու ընդարձակ լճակներ կը ձևացունէ, որ Պասրայի և նոյն կողմերուն օդը կապականեն։ Գետին Տիատինի բազուկին ջուրը խիստ յստակ է. իսկ Նէրգըլումի թևինը վերի կողմերուն մէջ պղտոր է Սև Ջուրին պատճառաւ. այս երկու թևերուն ջուրերը իրարու հետ խառնուելէն ետքը՝ վերի կողմերուն մէջ յստակ է, բայց անապատին մէջ պղտոր և դեղին։ Գետին մէջ քէլէկով և յստակը տափակ նաւակներով կը նաւարկեն. առագաստով փոքրիկ նաւեր և շոգենաւ անգամ կը բանին Հիլլէէն մինչև Պասրա։

Այս գետին մէջ կան համով ձուկեր, թեփուկ, գեղիկ, մոխ, կետ ևլն, ևլն։

## Բ.

### ՏԻԳՐԻՍ, ՇԱԴ, ՏԻՃԼԷ, ԴԻԿԼԱԹ.

Հայաստանի այլ և այլ կողմերէն բղխած ասիական Տաճկաստանի մէկ գետն է, որ կսկսի մէկ կողմէն Տիարպէքիրի հիւսիսային կողմի Գինկէօլ լեռներուն շարունակութիւնն եղող Էկիլ Սանճախի լեռներէն, հոն աւերակ բերդի մը ստորոտը այրի մը մէջէ բղխելով։ Եւ միւս կողմէն Արղընի լեռներէն, ուրկէ կը բղխի զանազան առուակներ, որ հաւաքուելով երկու մեծ վըտակներ կը շինեն, որոնց մէկը կանցնի Արղըն քաղաքին լերանն առջևէն և միւսն ալ նոյն լերան ետևի կողմէն, և Արղընի վարի կողմերուն մէջ իրարու հետ միանալնէն ետքը կերթան կը խառնուին առաջինին հետ։ Էկիլի և Արղընի այս երկու գետակները իրարու հետ խառնուելով կը շինեն Տիգրիս գետը, որ կ՚անցնի Տիարպէքիրի առջևէն և անոր ուրիշ երկիրներուն մէջէն ու ճէզիրէի առջևէն։

Այս վտակին վրայ Տիարպէքիրի մօտ քարաշէն կամուրջ մը շինուած է. ասոր մէջ կը թափին ձախ կողմէն Քարա — սու՝ Քարա — Ահմէտ գիւղէն վար. Ջարօղի — սու՝ Հէօճէթի գիւղէն վար. Անպար — սու՝ Իւվաճըխէն վար. Կէօք — սու՝ Քերխէն վար. Գարավան — սու՝ Քէօսաէլիէն վար. Գաթման — սու՝ Գիալիմէն վար. Բըթվան — սու՝ Գիսմիլէն վար. Թիլ — սու՝ Հասան Քէֆ գիւղէն վար. Բաղէշի ջուրը՝ որ Վանայ Նէմրութ լեռներէն կիջնէ։ Եւ Սերտ կամ Սղերտ գետը, որ կանուանի նաև Գօհդան — սու՝ որ կուգայ

վանայ Նահանգին Շատախ գաւառէն, ուր բնակիչք Շատախու գետ կանուանեն զանի. շատ հաւանական է՝ որ Տիգրիսի Շատ անունը անկէ առնուած ըլլայ, մանաւանդ որ այս գետը Տիգրիսի արեւելեան թեւը կը համարուի: Ճէզիրէի առջեւ Տիգրիսի վրայ փայտաշէն կամուրջ մը կայ:

Այս ամէն վտակներով Տիգրիս կ՚ստուարանայ ու կը զօրանայ և կանցնի Մուսուլի, Ալի — Համմամի, Թօփրաք — Քալէի, Թիկրեթի, Պաղտատի, Ճէվազէրի, Վասիգի, Համարայի առջեւէն. Պաղտատէն 8 օր վար Քուրնայի առջեւ կը միանայ Եփրատի հետ աջ կողմէն, և անկէ ետքը Շատ — էլ — Արապ կըսուի, ու կերթայ կը թափի Պարսկաց ծոցը:

Տիգրիս 1,240,000 մէթրօ երկայնութիւն ունի:

Ճէզիրէէն վար Շատի մէջ կը թափին եօթն երեւելի վտակներ բաց 'ի մանր վտակներէն, որոնց անուններն են.

Հէյզէլ կամ Հերմաս ջուր:

Զապ — սու, Թօփրաք — Քալէի առջեւ:

Ալթուն — սու, կամ Ալթուն — քէօփրիւ, Թօփրաք Քալէէն վար:

Տէյեալէ — սու, Պաղտատէն վար:

Եփրատի արեւմտական առաջներ Ճէվազիտի առջեւ.

Խիւրքէմապատ — սու, Ճեմասի առջեւ:

Սեր — սու, Ցեհվազի առջեւ:

Այս վտակներուն գրեթէ ամէնն ալ Շատի արեւելեան կողմէն կը թափին բաց 'ի առաջներէն.

Գետին ընթացքը վերի կողմերուն մէջ՝ մանաւանդ Մուսուլին ու Պաղտատին մէջ արագ է, բայց Պաղտատէն վար այնչափ արագ չէ: Մուսուլէն մէկ ու կէս օր վար Տէլ — Արապա — [illegible] բռուած մեծ կամուր-

ջրին աւերակը՝ կայ գետին մէջ։ Տիարպէքիրէն մինչև Պաղտատ քէլէքով նաւարկութիւն կըլլայ, և Պաղտատէն մինչև Պասրա փոքրիկ նաւեր (Թէքնէ) և շոգենաւ կը բանին։

Պարսկային ծոցին մակընթացութիւնը մինչև Քուրնա և մինչև Եզրասայ գերեզմանը կը հասնի։

Շաղի ջուրը յստակ է, մանաւանդ վերի կողմերուն մէջ։

Գետեզերքներուն վրայ շատ տեղ սպիտակ կիճ (albastrum) կը գտնուի, և տեղ տեղ աղ աղ ու բորակ։ Մուսուլի առջև և անկէ վար գետեզրին վրայ նաւթի ակեր կը գտնուին․ նաւթը ջուրին երեսը կը մնայ, զոր բնակիչները կը ժողովեն ու կը վառեն։ Գետին մէջ կը գտնուին տեսակ տեսակ ձուկեր։

Կարծիք մը կայ՝ թէ Տիգրիս Եփրատի հետ խառնուած չէր ՚ի հնումն, և յատուկ բերանով մը ծովը կը թափէր։

## ՎԵՐՋ

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Հեղինակը՝ գրքիս 173 երեսը խոստացած է Քօլէրայ հիւանդութեան նկարագրութիւնն ընել, հանդերձ ախտաբանութեամբն ու բուժաբանութեամբը։ Սակայն, դժբաղդաբար, ձեռագիրը ձեռքերնիս հասած չըլլալով՝ չը հրատարակեցինք։